## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12

ԴԵԿՏԵՄԲԵՐ 1969

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

### Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



### ՀՈԴՎԱԾՆԵՐ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 50-ԱՄՅԱԿԸ



### ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



### ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ

# Содержание

**К 100-летию со дня рождения В. И. Ленина**



**Статьи**



**Партийная жизнь**



**Вопросы экономики**



**К 50-летию Советской Армении**



**Знаменательные даты**



**Трибуна молодого научного работника**










Գ. Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ


## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅԱՄԲ

(հայերեն և վրացերեն լեզուներով մարքսիստական գրականության հրատարակության կազմակերպումը արտասահմանում, 1904 թ.)

1903 թ. հոկտեմբերի 20-ին Վ. Ի. Լենինը և Գ. Վ. Պլեխանովը Ժնևից Կովկասյան միութենական կոմիտեին գրում էին. «Մենք այժմ եռանդուն մտածում ենք այստեղ վրացական և հայկական գրականության հրատարակության կազմակերպման մասին։ Այդ գործին ձեռնամուխ են եղել ձեռնհաս ընկերներ, փող հույս ունենք ճարել։ Հարկավոր է օգնություն և՛ գրականությամբ, և՛ միջոցներով» (Երկեր, հ. 34, էջ 199)։

Ազգային լեզուներով մարքսիստական գրականության հրատարակության կազմակերպման մասին մեզ հայտնի լենինյան առաջին փաստաթուղթն է այս։ Այն ելնում էր ժամանակի պահանջներից։ Հիրավի, Անդրկովկասում մայրենի լեզվով մարքսիստական գրականության մեծ պահանջ կար։

II համագումարից հետո հեղափոխական մարքսիստական գրականության պահանջն ավելի մեծացավ, երբ մենշևիկները զավթելով «Искра»-ն կատաղի հարձակումներ սկսեցին բոլշևիկների, նրանց առաջնորդ Լենինի դեմ։

Կենսական համարելով բոլշևիկյան օրգանի և հրատարակչության ստեղծումը, Լենինը գտնում էր, որ դրանք պետք է ունենան ինտերնացիոնալ բնույթ, սպասարկեն Ռուսաստանի բոլոր ժողովուրդներին, նրանց համախմբեն միասնական սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության շուրջը։

* * *

Հայտնի է, որ Լենինը գործնական ու ընկերական կապերի մեջ էր հայ և վրացի առաջավոր գործիչների հետ, ջանում էր նրանց համախմբել ո՛չ միայն Անդրկովկասում, այլև արտասահմանում։

XX դարի սկզբին Եվրոպայի մի շարք քաղաքներում սովորում և աշխա-

տում էին շատ կովկասցիներ։ Նրանց մի մասը ուսանողներ էին, որոնք ուսանում էին Գերմանիայի, Շվեյցարիայի, Ֆրանսիայի և այլ երկրների բարձրագույն ուսումնական հաստատություններում, մյուսը՝ քաղաքական վտարանդիներ։ Արտասահմանում էին լինում նաև կուսակցական համագումարների, կոնֆերանսների, խորհրդակցությունների կովկասյան մասնակիցները։ Նրանցից շատերն այնտեղ լսել էին Լենինին, ծանոթացել նրա հետ, գործել նրա անմիջական ղեկավարությամբ։

1903—1904 թվականներին, արտասահմանում, Լենինի հետ բարեկամական կապեր են հաստատում Իսահակ Լալայանցը, Բոգդան Կնունյանցը, Արշակ Զուրաբյանը, Ստեփան Շահումյանը, Միքայել Դավիթաշվիլին, Մալաքիա Տորոշելիձեն, Դավիթ Սուլիաշվիլին և կովկասցի այլ մարքսիստներ։ Նրանք մտնում էին ՌՍԴԲԿ արտասահմանյան խմբերի մեջ՝ հետևողականորեն պաշտպանելով լենինյան գիծը։ 1903 թ. Ժնևում Լալայանցը ղեկավարում է «Искра»-ի տպարանը, կազմակերպում Ռուսաստանի հեղափոխական երիտասարդության խմբակներ։ Լենինի երաշխավորությամբ նա մտնում է ռուսական հեղափոխական սոցիալ-դեմոկրատական լիգայի մեջ, հայերեն աղբյուրներից նյութեր թարգմանում։ ՌՍԴԲԿ II համագումարից հետո Բ. Կնունյանցը Ժնևում կապեր է ստեղծում առաջավոր հայ երիտասարդների հետ, նրանց միավորում սոցիալ-դեմոկրատական խմբակում։ Հավաքած անդամավճարից նա բնակարան է վարձում և այնտեղ զեկուցումներ կարդում խմբակի անդամների համար։

Ժնևի հայ և վրացի ուսանողներն ստեղծել էին «Կովկաս» հայրենակցական խումբը, որը մեծ օգնություն էր ցույց տալիս կուսակցական գրականության հրատարակությանը։

Բեռլինի, Լայպցիգի և Ժնևի իսկրայական խմբերում մեծ աշխատանք էին ծավալել Ս. Շահումյանը և Մ. Դավիթաշվիլին։ Նրանց միջոցով Լենինը նամակագրություն ուներ կովկասյան բոլշևիկների հետ։

«Ստեփանին ես առաջին անգամ հանդիպեցի Բեռլինում,— հիշում է Մ. Լյադովը։— Ես փախել էի այն ժամանակ Սարատովից, ուր գտնվում էի հսկողության տակ։ Առաջին անգամ էի եկել արտասահման։ Շատ շուտ գտա ես այնտեղ իսկրայականների կենտրոնը։ Այն ժամանակ այնտեղ էին դոկտոր Վեչեսլավը, Սմիդովիչը և Պյատնիցկին։ Վճռեցին, որ ես պիտի պարապեմ ուսանողների խմբակի հետ։ Խմբակի հենց առաջին ժողովում ես ուշ դարձրի երիտասարդ ուսանողներից մեկի վրա։ Նա աչքի էր ընկնում թե՛ իր արտաքին տեսքով— գեղեցիկ, արտահայտիչ դեմքով, և թե՛ իր լուրջ, խորամիտ վերաբերմունքով դեպի արծարծվող հարցերը։ Խմբակի բոլոր անդամներն իրենց իսկրայականներ էին համարում, սակայն թերևս միմիայն Ստեփանն էր, որ ոչ միայն համարում էր իրեն; այլև իսկապես այդ ժամանակ իսկրայական էր, այսինքն՝ հեղափոխական մարքսիստ, կատարելապես կազմակերպված և ձևավորված աշխարհայացքով» (26 կոմունարների հիշատակին, Երևան, 1928, էջ 32)։

Բեռլինում Շահումյանը համախմբում է կովկասցի սոցիալ-դեմոկրատներին, նրանց գործունեությանը տալիս կազմակերպված բնույթ։ Շահումյանը հաճախակի լինում էր նաև Լայպցիգում, Ժնևում, Ցյուրիխում, Դրեզդենում, Մյունխենում, որտեղ ռեֆերատներ էր կարդում, հանդիպումներ ունենում տեղի սոցիալ-դեմոկրատների հետ։ Գալով Ժնև, նա անձամբ ծանոթանում է Լենինի հետ։ ՌՍԴԲԿ II համագումարից հետո Լենինի առաջադրանքով Շահումյանը գալիս է Կովկաս, տեղի բոլշևիկներին հաղորդում համագումարի որոշումները։ Թիֆլիսում նա մասնակցում է Կովկասյան միութենական կոմիտեի նիստին։ Մ. Ցխակայան իր հուշերում գրել է, որ Ս. Շահումյանը «...մեզ պատմեց Արևմտյան Եվրոպայի՝ Ռուսաստանից եկած հեղափոխական էմիգրանտների խմբավորումների մասին, նրանց տրամադրությունների ու տենդենցների մասին։ Հետո նա անցավ հատկապես Ժնևի այն «մարդկանց», որոնք շրջապատում են Իլյիչին, և նրա անսասան կամքին՝ հաղթահարելու պառակտումը մինչև հաջորդ կուսակցական համագումարը, կամ համենայն դեպս, այդ համագումարում...» (26 կոմունարների հիշատակին, Երևան, 1928, էջ 10)։ Այնուհետև Ցխակայան պատմում է, որ Շահումյանին արած իր առաջարկությունը՝ մնալ Կովկասում աշխատելու, նա պատասխանում է. «Շատ շուտով ես կմիանամ ձեզ։ Միայն թե առաջ պիտի վերադառնամ Իլյիչի մոտ՝ չէ՞ որ պարտավոր եմ նրան էլ իրազեկ դարձնել, թե որպիսի աշխատանք է այստեղ եռում ձեզ մոտ։ Նա ամբողջապես կթևավորվի որպես լեռնային արծիվ և կճախրի ձեզ վրա, Կովկասի վրա, ապրելով և ոգևորվելով ձեր անձնվեր աշխատանքով այսպիսի դժվար պայմաններում» (Նույն տեղը, էջ 11)։

Կովկասյան միութենական կոմիտեի այդ նիստում քննարկվում են նաև Անդրկովկասի պրոլետարիատի շրջանում պրոպագանդիստական ու ագիտացիոն աշխատանքների ուժեղացման, «Պրոլետարիատի կռիվը» թերթի հրատարակությունն արտասահման տեղափոխելու հարցերը։

Վերադառնալով Ժնև, Շահումյանը Լենինին պատմում է Կովկասի գործերի մասին և նրանից առաջադրանք ստանում՝ տեղափոխվել Ժնև հայերեն և վրացերեն մարքսիստական գրականության հրատարակության գործը կազմակերպելու համար։ Այդ գործը շատ էր դժվարանում առանձնապես այն պատճառով, որ Եվրոպայի մի շարք կենտրոններում գործում էին հայ և վրաց նացիոնալիստական կուսակցություններ, որոնք ունեին մամուլի իրենց օրգանները, հրատարակությունները և նրանց առատորեն ֆինանսավորում էր ազգային բուրժուազիան[1]։

Հայկական և վրացական նացիոնալիստներն արտասահմանի բազմաթիվ վայրերում ստեղծել էին հայրենասիրական, գրական-գեղարվեստական, ուսանողական և այլ խմբերի, միությունների ու ընկերությունների լայն ցանց, որոնցից շատերն ունեին իրենց տպագիր օրգանները։

Նկատի ունենալով, որ Եվրոպայի այն ժամանակվա առաջավոր երիտասարդությունը հրապուրվում էր սոցիալիստական գաղափարներով և հափշտակված ուսումնասիրում մարքսիզմը, բուրժուական նացիոնալիստները չէին զլանում, իհարկե, ելնելով իրենց շահերից, ինչպես ոչ վաղ անցյալում ռուսական «լեգալ» մարքսիստները, զբաղվել մարքսիստական գրականության «պրոպագանդայով»։ Այսպես կոչված՝ «Սոցիալ-դեմոկրատական բանվորական հայ կազմակերպության» պարագլուխներից մեկը՝ Երվանդ Պալյանը, 1903 թ. բրոշյուր է հրատարակում, որը լի էր նացիոնալիստական հարձակումներով միության և նրա տպագիր օրգանի— «Պրոլետարիատ»-ի դեմ։ Ե.

[1] 1887 թ. Մոնպելյեում, ապա Լոնդոնում և Փարիզում լույս էր տեսնում «Հնչակ» թերթը։ 1891 թ. Ժնևում հրատարակվում է դաշնակցականների «Դրոշակ»-ը. 1903 թ. վերջին Ժնևում ստեղծվում է «Սոցիալ-դեմոկրատական բանվորական հայ կազմակերպությունը», («Սպեցիֆիկները») իր «Սոցիալիստ» օրգանով. 1903—1905 թթ. Փարիզում վրացական նացիոնալիստների խումբը վրացերեն ու ֆրանսերեն հրատարակում էր «Սաքարթվելո» (Վրաստան) թերթը։ 1904 թ. ապրիլին Ժնևում ձևավորվեց վրացական ֆեդերալիստների կուսակցությունը, որի մեջ բացի «Սաքարթվելո»-ի խմբից, մտան անարխիստներ, էսեռներ, նացիոնալ-դեմոկրատներ։

Պալյանին Բեռլինում ձայնակցում էր Բ. Իշխանյանը։ Այդ մասին իր հուշերում գրել է Մ. Մանուչարյանը (տե՛ս «Бакинский рабочий», № 211, 1922 г.)։

Լենինը խնդիր էր դրել՝ միավորել մարքսիստական ինտերնացիոնալիստական բոլոր ուժերը նացիոնալիզմի ամեն տեսակ արտահայտությունների դեմ պայքարելու համար։ Այդ նպատակին պետք է ծառայեր նաև վրացերեն և հայերեն սոցիալ-դեմոկրատական գրականության հրատարակության արտասահմանյան հատուկ կենտրոնը, որի մեջ պետք է ընդգրկվեին ազգային լավագույն ուժերը։

Մի քանի ամսվա նախապատրաստական աշխատանքից հետո, որի ընթացքում հավաքվում են գրական-հրատարակչական կադրերը, ձեռք են բերվում հայերեն և վրացերեն գրականություն, տառեր, միջոցներ։ 1904 թ. փետրվարին ՌՍԴԲԿ Կենտկոմը հաստատում է վրացերեն և հայերեն սոցիալ-դեմոկրատական գրականության հրատարակման հանձնաժողովի կազմը։ Շուտով Ն. Կ. Կրուպսկայան Բաքվի կոմիտեին նամակով հաղորդում է ժնևյան հանձնաժողովի գործունեության մասին[1]։

Հանձնաժողովը Լենինի աշխատությունների վրացերեն և հայերեն թարգմանությունների կազմակերպման, հրատարակման ու տարածման արտասահմանյան առաջին միասնական կենտրոնն էր։ Պահպանվել են բազմաթիվ արխիվային նյութեր, որոնք վկայում են մարքսիստական գրականության թարգմանության և հրատարակման այդ կարևոր օրգանի բեղմնավոր գործունեության մասին։

Սակայն հանձնաժողովի կազմը միատարր չէր։ Այստեղ կային հայ ու վրացի և՛ բոլշևիկներ, և՛ մենշևիկներ։ Դա այն ժամանակն էր, երբ կուսակցությունը փաստորեն բաժանված էր երկու ինքնուրույն մասերի, իսկ ղեկավար օրգանները դեռևս ընդհանուր էին։ Հանձնաժողովի կազմում հենց սկզբից հաստատվում են՝ Ս. Շահումյանը, Ն. Ժորդանիան, Ժուրուլին, Եփրեմիձեն, Գաբիանին, Ա. Երզնկյանը, հետագայում՝ Մ. Մանուչարյանը և ուրիշներ։

Հանձնաժողովը, որը գործում էր Կենտկոմի արտասահմանյան ներկայացուցչի հսկողությամբ, գոյություն ունեցավ մոտ մեկ տարի, մշտական կենտրոն ունենալով Ժնևը, որտեղ 1903—1904 թթ. ապրում և աշխատում էր Լենինը։ Եվրոպայի տարբեր վայրերում իր աշխատանքները հաջող կազմակերպելու համար հանձնաժողովը, կուսակցական Կենտկոմի թույլտվությամբ, մի շարք քաղաքներում կազմակերպում է աջակցող խմբեր։ Խմբերի համար հանձնաժողովը մշակում և Կենտկոմի հաստատմանն է ներկայացնում հատուկ կանոնադրություն, որին հավանություն է տրվում և թերթիկի ձևով տպագրվում ու ուղարկվում է տեղերը։

Կանոնադրության մեջ ասված էր, որ խմբի գործունեության նպատակը հանձնաժողովին աջակցություն ցույց տալն է։ Դրա համար խումբը դրամական միջոցներ է հավաքում բոլոր հնարավոր ձևերով (անդամավճարների, կուսակցական գրականության տարածման, երեկույթների, հանգանակության և այլն)։ Խմբի անդամներ կարող էին լինել բոլոր նրանք, ովքեր ապրում էին Ժնևում և համաձայն էին կատարել իրենց վրա դրվող բոլոր պարտականությունները։

1904 թ. մարտի սկզբին «Искра»-ում տպագրվում է հանձնաժողովի հե-

[1] Տե՛ս ЦПА, ИМЛ, ф.17, оп. 1, д. 163.



տևյալ հայտարարությունը. «ՌՍԴԲԿ կուսակցության Կենտրոնական կոմիտեին կից արտասահմանում կազմակերպվել է «Վրացերեն և հայերեն լեզուներով սոցիալ-դեմոկրատական գրականության հրատարակության հանձնաժողով»։ «Հանձնաժողովը» դիմում է բոլոր ընկերներին և համակրողներին, խնդրելով նրանց հնարավոր աջակցություն ցույց տալ այդ գործում։ Փող, գրական նյութեր և նամակներ կարելի է ուղարկել Կենտրոնական կոմիտեի կամ կենտրոնական օրգանի հասցեով՝ ծրարի վրա նշելով՝ «հանձնաժողովի համար»։

Հանձնաժողովը խնդրում է նշել նաև, որ գրականության հրատարակության համար նախատեսված է դրամական օգնություն՝ վրացական, հայկական կամ երկուսը միասին» («Искра», № 61, 5 մարտի, 1904)։

Հրատարակությունների թույլտվությունը տալիս էր ՌՍԴԲԿ Կենտկոմի արտասահմանյան ներկայացուցիչը։ Հրատարակված գործերն ուղարկվում էին կուսակցության առաքման բաժինը, որը զատում էր ըստ խմբերի՝ արտասահման և Կովկաս ուղարկելու համար։ Հանձնաժողովը հաճախակի նիստեր էր ունենում և ամեն ամիս ֆինանսական հաշվետվություն տալիս իր գործունեության մասին։ Այնտեղ քննարկվում էին նրա աշխատանքի բոլոր հարցերը։ Այսպես, փետրվարի 27-ի նիստի օրակարգն էր. 1. խմբերի համար կանոնադրության մշակումը, 2. հաշվետվություն՝ հայկական գործերի մասին, 3. հայկական «Ծանուցումը» բրոշյուրի վերահրատարակումը, 4. վրացական տառերի հարցը, 5. խմբերի կազմակերպումը, 6. հանձնաժողովի համար գրադարան կազմակերպելու և խմբերին գրականություն ուղարկելու խնդիրները, 7. Ռուսաստանում օժանդակող խմբեր ստեղծելու հարցը, 8. հայտարարություն «Искра»-ում հանձնաժողով կազմելու մասին, 9. հայերեն և վրացերեն լեգալ թերթի պատվիրումը, 10. այլ կազմակերպությունների հետ հրատարակությունների փոխանակում կատարելու հարցը[1]։

Նիստի որոշումներում ասված է. «Ծանուցումը» բրոշյուրը վերահրատարակել և նրա սրբագրությունները ուղարկել ընկ. Սեմյոնովին (Շահումյանին), նշել այն քաղաքները, որտեղ հնարավորություն կա խմբեր կազմակերպելու, իսկ որոշ տեղերում՝ հայկական և վրացական խմբերը միացնելու. տպագրված կանոնադրությունը կոչի հետ միասին ուղարկել նշված անձանց, խոսել Կենտկոմի արտասահմանյան ներկայացուցչի հետ հանձնաժողովի համար գրադարան կազմակերպելու և խմբերին գրականություն ուղարկելու, ինչպես նաև հանձնաժողով կազմելու, «Искра»-ում հայտարարություն տալու վերաբերյալ և այլն[2]։

Փետրվարի 28-ի նիստում, որին մասնակցում էին Սեմյոնովը (Ստ. Շահումյանը), Գուգարիան (Ա. Երզնկյանը), Եփրեմիձեն, Գաբիանին և Ժուրուլին, որոշվում է կազմել հանձնաժողով՝ հայկական գործերի մասին քարտուղարից, Ժնևի խմբի գանձապահից, այդ խմբի անդամից և Գուգարիանից հաշվետվություն ստանալու համար[3]։ Մայիսի 9-ի նիստում քննարկվում է ամերիկահայերի դիմումը հանձնաժողովի տառերով պրոկլամացիա տպագրելու մասին։ Մայիսի 14-ի նիստում որոշվում է մշակել Կովկասյան միութենական կոմիտեին ուղղված նամակի տեքստը և «խնդրել ընկ. Լենինին ռեֆերատ կարդալու հանձնաժողովի օգտին»[4]։

Կովկասյան միութենական կոմիտեն և Անդրկովկասի մյուս կոմիտեները

[1] Տե՛ս ЦПА, ИМЛ, ф. 17, оп. 1, ед. хр. 120 ;л. 17.
[2] Տե՛ս նույն տեղը, թ. 17, 17 հ. և.։
[3] Տե՛ս նույն տեղը։
[4] Տե՛ս նույն տեղը, թ. 18։

ողջունեցին հանձնաժողովի գործունեությունը։ Սակայն մի շարք օբյեկտիվ պատճառներ և մենշևիկների կազմալուծիչ գործունեությունը խանգարում էին տեղի կազմակերպություններին՝ լիովին կատարելու հրատարակչական գործունեության ծավալման մասին II համագումարի որոշումները։ Այդ պատճառով կովկասյան միութենական կոմիտեն որոշել էր «Պրոլետարիատի կռիվ»-ի խմբագրությունը տեղափոխել արտասահման։ 1904 թ. ապրիլի 5-ին, արտասահմանյան բոլշևիկյան կենտրոնին ուղղած նամակում, միութենական կոմիտեն գրում էր. «Մինչև այժմ Մ. Կ.-ին չի հաջողվել կանոնավոր կերպով վարել իր օրգանը՝ «Բրձոլան» և «Պրոլետարիատը» վրացերեն և հայերեն։ Քաղաքական և այլ պայմանները հնարավորություն չեն տալիս հուսալու նաև ապագայում նրա կանոնավոր հրատարակումը։ Այդ պատճառով մենք նախատեսում ենք մեր օրգանը փոխադրել արտասահման հետևյալ պայմաններով. 1. խմբագրությունը նշանակում է Մ. Կ.-ին (Միութենական կոմիտեին) կուսակցական և միութենական կանոնադրության ընդհանուր հիմունքներով, 2. Մ. Կ.-ն պարտավորվում է հրատարակությունն ապահովել նյութապես և ամեն տեսակ անհրաժեշտ օգնություն ցույց տալ խմբագրությանը։ Ինչ վերաբերում է խմբագրության առաջիկա կազմին, ապա Մ. Կ.-ն որոշել է առաջարկել հետևյալ երկու անձանց՝ ընկերներ Միխաիլիդիսին և Նազարբեկին կազմելու այն— խմբագրական բոլոր գործերին մի մարդու անպայման և անմիջական մասնակցության պայմանով. ըստ որում Մ. Կ.-ն թախանձագին խնդրում է, որ այդ անձնավորությունը, թեկուզ և սկզբնական շրջանում լինի ընկեր Լենինը։ Խմբագրությունը պետք է բոլոր ուժերը ներդնի, որպեսզի օրգանները լույս տեսնեն միանման բովանդակությամբ»[1]։

Սակայն այս պլանները չիրականացան[2]։ Կովկասյան միության III համագումարը հատուկ որոշում ընդունեց, սխալ և անցանկալի համարելով «Պրոլետարիատի կռիվը» արտասահման տեղափոխելու առաջարկը[3]։ Համագումարն անհրաժեշտ գտավ զարկ տալ բրոշյուրային գրականության հրատարակմանը։

* * *

Ժնևյան հանձնաժողովը կարճ ժամանակում լայն կապեր հաստատեց արտասահմանի, Ռուսաստանի և մանավորապես Կովկասի բազմաթիվ վայրերի հետ։ Հանձնաժողովի տեղեկատուում նշված են գրականության առաքման տասնյակ հասցեներ՝ Բեռլինում, Լայպցիգում, Մյունխենում, Ցյուրիխում, Բրյուսելում, Փարիզում, Սոֆիայում, Հայդելբերգում, Դարմշտադտում, Իեննայում, Մարսելում, Կլարենսում, Վիեննայում և այլուր։ Հայկական տառեր ձեռք բերելու համար կապեր էին հաստատվել Վիեննայի Մխիթարյանների հետ։ Հանձնաժողովի արձանագրություններից մեկում նշված էր Ամերիկայի համար անվճար հայկական գրականություն ուղարկելու մասին։

Բեղմնավոր էր հանձնաժողովի հրատարակչական գործունեությունը։ Առաջին երկու ամսում այն հրատարակում է հետևյալ բրոշյուրներն ու կոչերը՝ Ծանուցում Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության երկրորդ համագումար հրավիրելու մասին, հայերեն, 2.300 օրինակ,

[1] Տե՛ս ЦПА, ИМЛ, ф. 18, оп. 34, ед. хр. 35420.

[2] Տե՛ս Н. И. Стуруа. Из истории борьбы за создание и упрочение большевистских организаций Закавказья (1893—1904), Тбилиси, 1956, стр. 144.

[3] Տե՛ս ՄԼԻ-ի վրացական ֆիլիալի արխիվ, ֆ. 12798, ց. 5, գ. 241, թ. 318։



Ծրագիր ռուս. սոց.-դեմ. բան. կուսակցության (ընդունված երկրորդ հերթական համագումարում), հայերեն, 7.000 օրինակ, Վրացական նացիոնալիստները, վրացերեն, 1.300 օրինակ, ՌՍԴԲԿ կանոնադրությունը, հայերեն, 700 օրինակ, պատերազմի մասին Կենտկոմի Ռուս պրոլետարիատին պրոկլամացիան, հայերեն, 7.000 օրինակ, Վ. Ի. Լենինի գրած ՌՍԴԲԿ Կենտկոմի Մայիսի մեկը թռուցիկը, վրացերեն, 7.000 օրինակ։

1904 թ. ամռանը Մ. Մանուչարյանի օգնությամբ Ս. Շահումյանն ավարտում է Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Կոմունիստական կուսակցության մանիֆեստի հայերեն թարգմանությունը. այն նույն թվականին տպագրվում է Ժնևի կուսակցական տպարանում։ Այդ առթիվ գրված առաջաբանում ասված էր.

«Թարգմանչից.

Տպագրության տալով Կոմունիստական մանիֆեստի հայերեն թարգմանությունը՝ մենք պարտք ենք համարում հայտնել հետևյալը։

Այս հրատարակության համար մենք ունեցել ենք ձեռքի տակ երեք տարբեր թարգմանություններ։ Առաջինն արված է գերմաներեն վեցերորդ տպագրությունից, Շտուտգարդ (Գերմանիա), 1894 թ., երկրորդը՝ Գ. Պլեխանովի ռուսերեն թարգմանությունից, Կովկաս, 1901 թ., և երրորդը՝ (տաճկա-հայկական բարբառով), Պ. Լաֆարգի ֆրանսերեն թարգմանությունից, Ժնև, հավանորեն 1902—3 թվականին։

Ներկա հրատարակությունը ներկայացնում է գլխավորապես առաջին և երկրորդ թարգմանությունների միացումը՝ ուղղված և խմբագրված համաձայն վերջին գերմանական հրատարակության։

Ժնև, 25 օգոստոսի, 1904» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Մանիֆեստ կոմունիստական կուսակցության, Ժնև, 1904)։

Այս Կոմունիստական կուսակցության մանիֆեստի առաջին լրիվ թարգմանությունն էր 1872, 1883, 1890 թթ. գերմանական հրատարակությունների, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի երեք առաջաբաններով։ Կոմունիստական կուսակցության մանիֆեստին կցված էր Կ. Կաուցկու Որքա՞ն է հնացել կոմ. Մանիֆեստը հոդվածը։

Այդ նույն ժամանակ տպագրության են պատրաստվում Լենինի Գյուղական չքավորությանը բրոշյուրի հայերեն և վրացերեն թարգմանությունները, որոնցից հայերենը հրատարակվում է, իսկ վրացերենը՝ մնում անտիպ։ Այն տպագրվում է 1905 թ., Թիֆլիսում, Հավլաբարի տպարանում՝ Ֆ. Մախարաձեի թարգմանությամբ։

Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Կոմունիստական կուսակցության մանիֆեստի և Լենինի Գյուղական չքավորությանը կլասիկ աշխատությունների հայերեն առաջին հրատարակությունները, որոնք իրականացրեց Ժնևյան հանձնաժողովը Ստ. Շահումյանի ղեկավարությամբ, նշանավոր իրադարձություն էր Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների կյանքում և ընդհանրապես հայ հասարակական-քաղաքական մտքի պատմության մեջ։ Գյուղական չքավորությանը բրոշյուրում Լենինը խորհուրդ էր տալիս ընթերցողին ձեռք բերել երկու գրքույկ՝ Կարլ Կաուցկու Էրֆուրտի ծրագիրը, որը թարգմանված է ռուսերեն և Լ. Մարտովի Բանվորական գործը Ռուսաստանում (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 6, էջ 548)։ Նկատի ունենալով այս, Ստ. Շահումյանը կազմակերպում է դրանց հայերեն թարգմանությունն ու հրատարակությունը։

Գրեթե այդ բոլոր բրոշյուրների շապիկի վերջին էջում թվարկվում էին հայերեն և վրացերեն լույս տեսած և տպագրվող գործերի ցուցակն ու հրատարակող մասնաժողովի հասցեն։

Կուսակցության Կենտկոմը հանձնաժողովի լայն կապերն օգտագործում էր նաև նրա միջոցով Կովկաս և այլ վայրեր ռուսերեն մարքսիստական գրականություն ուղարկելու համար։ 1904 թ. Անդրկովկասի տարբեր վայրեր են ուղարկվում Կ. Մարքսի Դասակարգային պայքարը Ֆրանսիայում, Մարքսի և Էնգելսի Հեղափոխությունը և հակահեղափոխությունը Գերմանիայում, Ֆ. Էնգելսի Սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտություն, Գյուղացիական հարցը Ֆրանսիայում և Գերմանիայում, Լենինի Գյուղական չքավորությանը, Նամակ խմբագրությանը, Նամակ ընկերոջը, Մի քայլ առաջ, երկու քայլ ետ աշխատությունները, ՌՍԴԲԿ II համագումարի արձանագրությունները, Ռուսական հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի արտասահմանյան լիգայի երկրորդ համագումարի արձանագրությունների մեկնաբանությունները և այլ գործեր[1]։

Կենտրոնական կոմիտեի համաձայնությամբ և Լենինի հանձնարարությամբ, հանձնաժողովն ու նրա առանձին անդամներ կազմակերպական մեծ աշխատանք էին ծավալում տեղական կուսակցական կազմակերպությունների հետ կապերն ամրապնդելու, գրական ուժերի համախմբման, կովկասյան նացիոնալիստների դեմ մղվող պայքարում։

Լենինի հանձնարարությամբ 1904 թ. ապրիլին Ստ. Շահումյանը գալիս է Անդրկովկաս՝ մոտիկից ղեկավար մասնակցություն ունենալու երկրամասի բոլշևիկյան կազմակերպությունների աշխատանքներին։ Նույն ամսին նա կոոպտացիայի կարգով մտնում է ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական կոմիտեի և նրա օրգան՝ «Պրոլետարիատի կռիվը» թերթի խմբագրության մեջ։ Հունիս—սեպտեմբեր ամիսներին նա շրջագայում է Հայաստանի գավառներն ու շրջանները, հանդիպում տեղական աշխատողների հետ Երևանում, Ալեքսանդրապոլում, Ղարաքիլիսայում, Ալավերդում, Հաղպատում, Սանահինում և այլուր։

Հոկտեմբերի 1-ին «Листок «Борьбы пролетариата» թերթը հրատարակում է Ստ. Շահումյանի Երևանից (հայ իրականությունից) հոդվածը, որտեղ հեղինակը մերկացնում է հայ ու վրացի նացիոնալիստներին և ուրախությամբ նշում Կովկասի արդյունաբերական, ինչպես նաև գյուղական շրջանում սոցիալ-դեմոկրատների ազդեցության աճը։

«Արդյունաբերական խոշոր կենտրոններին կից վայրերում,— Թիֆլիսի և Բաքվի նահանգներում,— գրում է Շահումյանը,— նացիոնալիստների ազդեցությունը սաստիկ խախտված է։ Հայկական շատ գյուղերում արդեն կան գյուղական երիտասարդության կազմակերպություններ, որոնք կապված են մեր կոմիտեների հետ, ստանում են մեր գրականությունը և լարված ուշադրությամբ հետևում են հայ և այլազգի բանվորների հերոսական պայքարին։ Այս պայքարը,— ավելացնենք վերջում,— արդեն բազմաթիվ փայլուն հաղթանակներ է տարել. նա հաղթանակ կտանի նաև այժմ մոլեգնող, սիրտ կըտրատող հայկական ռեակցիայի դեմ։ Սոցիալ-դեմոկրատիան, իր համարձակ պրոպագանդայով, «պայծառ ճառագայթի նման» կթափանցի հայկական պրովինցիայի այդ «մթին թագավորությունը», բնակչությանը կսովորեցնի մտածել քաղաքականորեն և գործել քաղաքականորեն, իր դրոշակի տակ կկազմակերպի նրա պրոլետարական և կիսապրոլետարական մասսաներին և վճռական րոպեին նրանց կտանի գրոհելու ինքնակալությունը, եղբայրորեն միացած... ռուս ժողովրդի հետ...» (Ստ. Շահումյան, Երկեր, հ. 1, էջ 52)։

Շահումյանի այս հոդվածը, որն անստորագիր էր, արտատպվեց

[1] Տե՛ս ЦПА, ИМЛ, ф. 17, ед. хр. 120, л. 35—35 об.



«Искра»-ի նոյեմբերի 20-ի № 78-ում և մեծ աղմուկ առաջացրեց հայ ու վրացի նացիոնալիստների ու նրանց դաշնակից էսեռների շրջանում։ Հոդվածի պաշտպանությամբ հանդես եկան բոլշևիկները։

Հոկտեմբերին վերադառնալով Բեռլին, Շահումյանը նամակ է գրում Շվեյցարիա Լենինին և խնդրում նրան նյութեր տրամադրել հայերեն պատրաստվող մարքսիստական ժողովածուի համար։ «Մեծարգո Վլադիմիր Իլյիչ,— գրում էր Ստ. Շահումյանը։— Շտապում եմ կատարել մի հանձնարարություն, որ մի խումբ հայ ուսանողներ ուղարկել են ինձ Պետերբուրգից մի ընկերոջ միջոցով։ Այդ խումբը որոշել է հրատարակել հայերեն մի լեգալ մարքսիստական ժողովածու։ Հայ մարքսիստներ չունենալու պատճառով այդ խումբը դիմում է ռուս ընկերներին և խնդրում հոդվածներ տալ... Ձեռնարկության գլուխ կանգնած է անձնապես ինձ լավ ծանոթ մի ընկեր, որ անցյալ տարի աշխատել է Թիֆլիսի կոմիտեում («Ժայռականներից է»)։

Խնդրում եմ Ձեզ, եթե ժամանակներդ կների կամ եթե որևէ պատրաստ բան ունեք, չմերժել։ Այդ հրատարակությունից գանձված միջոցներն անտարակույս կգնան կուսակցության օգտին և, որ ամենագլխավորն է, այն դեպքում, եթե հրատարակությունն իրականացվի այն ձևով, ինչպես մտադրված է, հսկայական նշանակություն կունենա հայ ընթերցողների համար...» (Ստ. Շահումյան, Երկեր, հ. 1, էջ 53)։

Այս նամակը գրվել է նոյեմբերի 28-ին. քիչ անց, 1905 թ. հունվարին, Շահումյանը Լենինին տեղեկացնում է հնչակյանների մեջ տեղի ունեցած պառակտման ու Նազարբեկի նոր օրգանի՝ «Ապագա»-ի մասին և խնդրում Լենինին պատասխանել «Դրոշակ»-ի դեկտեմբերյան համարում (№ 153) տպագրված Աղանդավորությունը հեղափոխական շարժման մեջ հոդվածին, որի՝ իր կողմից կատարվող թարգմանությունը խոստանում է շուտով ուղարկել (տե՛ս նույն տեղը, հ. 3, էջ 427)։ Նամակի հետ միասին Շահումյանը Լենինին է ուղարկում «Ապագա-ի մասին իր հոդվածը, որը տպագրվում է «Вперед» թերթի փետրվարի 8-ի № 7-ում, Հնչակյանների նոր օրգանը վերնագրով։ Խիստ քննադատելով հայ ազգայնական կուսակցություններին, Շահումյանն իր հոդվածում ողջունում է «Ապագա»-ի երևան գալը որպես բանվորական շարժման մի նոր հաղթանակ ու նվաճում Կովկասում (տե՛ս նույն տեղը, էջ 428—430)։

Այդ Ռուսաստանում ժողովրդական հեղափոխության սկսված ժամանակաշրջանն էր, և բոլշևիկներն ամեն ինչ անում էին բոլոր դեմոկրատական ուժերը ցարիզմի ու բուրժուազիայի դեմ համախմբելու համար։

Եվրոպայի հայ և վրացի ուսանողներին մարքսիստական-լենինյան գիտելիքներով զինելու գործում կարևոր դեր կատարեցին նրանց մայրենի լեզվով կուսակցական գրականության լույս ընծայումը և այն հանդիպումները, որ ունենում էին նրանք արտասահմանում գտնվող հայ և վրացի լենինյանների հետ։

Ժնևյան հանձնաժողովի կազմակերպումը և նրա գործունեությունը շատ բանով օժանդակեցին ՌՍԴԲԿ կովկասյան կազմակերպությունների և նրանց գործիչների կապերի ընդլայնմանը Վ. Ի. Լենինի հետ, օգնեցին հաջողությամբ պայքարելու նացիոնալիզմի դեմ, համախմբելու աշխատավորության ուժերը պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի տակ։



ԺԵՆՅԱ ԳԱՍՊԱՐՅԱՆ

# ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԿՌԻՎՆԵՐՈՒՄ ՏԱՐԱԾ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ ՈՒ ՂԵԿԱՎԱՐԸ

*Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակով ծընունդ առած սովետական պետությունն իր գոյության առաջին իսկ օրից տագնապ ու անդուսպ կատաղություն հարուցեց ներքին և արտաքին թշնամիների շրջաններում։ Սերտ դաշինք կնքելով, նրանք չորս կողմից զինված հարձակում գործեցին միջազգային իմպերիալիզմի շղթան կտրած նորաստեղծ սովետական պետության վրա։*

*1918 թ. կեսերին, Վ. Ի. Լենինի պատկերավոր արտահայտությամբ, սովետական պետությունը գտնվում էր կրակե օղակում, նրան սպառնում էր մահացու վտանգ։ «Մահ կամ հաղթանակ»— այդ ծանր օրերին գրում էր Վ. Ի. Լենինը։ Միջին ելք առաջնորդը չէր տեսնում։*

*Եվ ահա, երբ դրված էր աշխարհում առաջին սովետական պետության լինելու կամ չլինելու հարցը, կոմունիստական կուսակցությունը Լենինի ղեկավարությամբ սովետական ողջ ժողովրդին կազմակերպեց, մոբիլիզացրեց ու վճռական պայքարի հանեց ներքին ու արտաքին հակահեղափոխական ուժերի դեմ։ Լայնածավալ ամբողջ երկրով մեկ սկսվեցին քաղաքացիական կռիվները, որոնց ընթացքում դրսևորվեց Վ. Ի. Լենինի՝ ռազմական գործողությունները վարելու, ժողովրդին ոտքի հանելու և նրա հաղթանակն ապահովելու մեծ վարպետությունն ու ռազմավարական տաղանդը։*

*Երիտասարդ սովետական պետության դեմ սկսած կռվի գլխավոր ու վճռական թատերաբեմը 1918 թ. երկրորդ կեսին դարձավ Արևելյան ճակատը, որտեղ հիմնական հարվածող բռունցքը չեխոսլովակյան կորպուսն էր։ Այստեղ իրադրությունը ծանր էր. թշնամուն հակահարված տալու և հաղթելու համար պահանջվում էր ուժերի մեծ լարում։*

*Խոսելով Արևելյան ռազմաճակատում ամուր պաշտպանություն ստեղծելու և թշնամուն ջախջախելու անհրաժեշտության մասին, Լենինը ընդգծում էր. «Ոչ միայն ռուսական, այլև միջազգային հեղափոխության փրկությունը չեխոսլովակյան ճակատումն է» (Երկեր, հ. 28, էջ 88)։ Ահա թե ինչու Արևելյան ռազմաճակատում պաշտպանական լուրջ միջոցների ձեռնարկման և չեխական*



*կորպուսի ջախջախման հարցը քննարկվեց կոմունիստական կուսակցության կենտրոնական կոմիտեի և սովետական կառավարության կողմից։*

*Սովետական նորաստեղծ պետության համար ճակատագրական նշանակություն ունեցող Արևելյան ռազմաճակատում անհրաժեշտ էր գլխավոր հրամանատար նշանակել ամենափորձված, ռազմական գործը խորապես հասկացող, մասսաների ու զինվորների մեջ մեծ հեղինակություն վայելող անձնավորության։*

*Լենինի առաջարկությամբ Արևելյան ռազմաճակատի գլխավոր հրամանատար նշանակվեց Ալեքսանդր Ֆեոդորովիչ Մյասնիկյանը։*

*Մինչև Ալ. Մյասնիկյանի Արևելյան ռազմաճակատ մեկնելը, չեխական կորպուսը, օգտվելով Արևելյան ռազմաճակատի սովետական զորամասերի գլխավոր հրամանատարության թողտվությունից, զգալի հաջողություններ ձեռք բերեց, գրավեց մի շարք կարևորագույն շրջաններ ու ուղղություն վերցրեց դեպի Սիմբիրսկ ու Սամարա։*

*Արևելյան ռազմաճակատի գլխավոր հրամանատարի պարտականությունները ժամանակավորապես կատարող Պենզայի նահանգգործկոմի նախագահ Վ. Կուրաևը, հանդես բերելով վախկոտություն, դեռ մայիսի 31-ին ցանկանում էր թողնել Ռուզաևկան և քաշվել խոր թիկունք։ Սակայն անմիջապես կռահելով Կուրաևի վերոհիշյալ մտադրության վտանգավոր հետևանքները, Վ. Ի. Լենինը հենց նույն օրը նրան կատեգորիկ կերպով հրամայեց, որ «մինչև Մյասնիկյանի ժամանումը և բոլոր գործերի հանձնումը, մեկնելն անհնար է և անթույլատրելի»* (В. И. Ленин, ПСС. т. *50*, стр. *84*)։

*Լենինի ցուցումով Արևելյան ռազմաճակատ գործուղվեցին նաև կուսակցության ականավոր գործիչներ Վ. Վ. Կույբիշևը, Ս. Ի. Գուսևը և մի շարք փորձառու այլ բոլշևիկներ, որոնք Արևելյան ռազմաճակատի գլխավոր հրամանատար Ալ. Մյասնիկյանի հետ համատեղ, մեծ ջանքեր թափեցին զորամասերում ամուր կարգապահություն ստեղծելու, էսեռների ու մենշևիկների հակասովետական քաղաքականությունը մերկացնելու, պետական հիմնարկ-ձեռնարկությունների աշխատանքները ռազմաճակատի պահանջներին ծառայեցնելու, ճակատամերձ բնակչությանը մոբիլիզացնելու, թշնամուն հակահարված տալու և նրա առաջխաղացումը կասեցնելու ուղղությամբ։ Որոշ ժամանակ անց ՌԿԿ(բ)Կ Արևմտյան մարզային կոմիտեի խնդրանքով Ալ. Մյասնիկյանը Արևելյան ռազմաճակատից ետ կանչվեց Մոսկվա և ժողկոմսովետի հանձնարարությամբ ուղարկվեց Բելոռուսիա՝ գերմանական զորքերի կողմից օկուպացված տերիտորիայում ընդհատակյա հեղափոխական աշխատանքը և պարտիզանական շարժումը գլխավորելու համար։*

*Լենինը, որ ուշի-ուշով հետևում էր պատերազմական գործողությունների ընթացքին, 1918 թ. օգոստոսի 10-ին բարձրագույն ռազմական խորհրդին արված կարգադրության մեջ գրում էր. «Անհրաժեշտ եմ համարում ըստ ամենայնի ուժեղացնել Արևելյան ռազմաճակատը։ Առաջարկում եմ Բարձրագույն ռազմական խորհրդին՝ մշակել Արևմտյան ռազմաճակատից առավել թվով զորամասեր փոխադրելու պլանը։ Այդ պլանը պետք է կիրառել ամենակարճ ժամանակամիջոցում»* (ПСС. т. *50*, стр. *146*)։

*Լենինի ցուցումով Արևելյան ռազմաճակատ փոխադրվեցին նոր ուժեր։ Այդ օգնությունը մեծ նշանակություն ունեցավ սովետական զորամասերի սկսած հակահարձակման համար։*

Ոգևորվելով չեխոսլովակյան ջոկատների ժամանակավոր հաջողություններով, երկրում աշխուժացան ներքին հակահեղափոխական ուժերը։ «Ձախ» էսեռները խռովություն էին բարձրացրել Մոսկվայում, Պետրոգրադում և այլ քաղաքներում։ Դրությունն այնքան էլ լավ չէր մյուս ռազմաճակատներում։ Ուստի հրամայական պահանջ էր դարձել շուտափույթ հաղթանակը թշնամու դեմ Արևելյան ռազմաճակատում։

1918 թ. օգոստոսի 30-ին ծանր վիրավորվեց Լենինը։ Դա ավելի ուժեղացրեց սովետական զինվորների, ողջ աշխատավորության ցասումն ու ատելությունը դեպի թշնամին։ «Այդ լուրը մեզ կատաղեցրեց և արագացրեց մեր հարձակումը Սիմբիրսկի վրա։ Մենք երդվեցինք Իլյիչի հայրենիքը՝ Սիմբիրսկը, ազատագրել չեխերից»,— ասել է 24-րդ սիմբիրսկյան Երկաթյա դիվիզիայի հրամանատար Գայը։

Մեծ առաջնորդի նկատմամբ ունեցած անսահման սերն ու նվիրվածությունը իրենց անմիջական արտացոլումը գտան նաև առաջին բանակի հրամանատար Մ. Տուխաչևսկու կողմից այդ օրերին տրված հրամանում, որտեղ ասվում էր. «Սիմբիրսկյան դիվիզիայի հրամանատար Գային, պատճենը՝ Ինզայան դիվիզիայի հրամանատար Լացիսին։ Հրամայում եմ սույն կարգադրությունը ստանալուն պես ելակետային դիրքեր գրավել և գրոհել Սիմբիրսկի վրա...» (Симбирская губерния в годы гражданской войны, сборник документов, т. 1, Ульяновск, 1958, стр. 146);

1918 թ. սեպտեմբերի 12-ին սիմբիրսկյան դիվիզիայի մարտիկները ազատագրեցին Լենինի հայրենի քաղաքը և պատվով կատարեցին մեծ առաջնորդին տված իրենց խոստումը։ Սիմբիրսկի ազատագրումը 1918 թ. ամենախոշոր ռազմական գործողություններից մեկն էր Արևելյան ռազմաճակատում։ Կազանի և Սիմբիրսկի գրավումով դրվեց չեխոսլովակյան կորպուսի ջախջախման սկիզբը։

Մեծ վտանգ էր ներկայացնում հյուսիսից իմպերիալիստական բանակների և հարավ-արևելքից սպիտակգվարդիականների առաջխաղացումը Կոտլասի ուղղությամբ։ Սակայն սովետական զորամասերի շեշտակի հարձակումը 1918 թ. աշնանը կանգնեցրեց ինտերվենտների և սպիտակգվարդիականների առաջխաղացումը դեպի Կոտլաս և դեպի Վոլոգդա։

1918 թ. ամռանը ծանր մարտեր էին մղում նաև Ցարիցինը պաշտպանող սովետական զորամասերը։ Լենինը նշում էր, որ Ցարիցինի պաշտպանությունը ունի ռազմական, տնտեսական մեծ նշանակություն և անհրաժեշտ է ինչ գնով էլ լինի թշնամուն ջախջախել։

1918 թ. ամռանը և աշնանը Ցարիցինի մոտ տեղի ունեցան արյունալի մարտեր։ Սպիտակգվարդիականներն ընդհուպ մոտեցան քաղաքին, և մարտերը մղվում էին քաղաքի արվարձաններում։ Սակայն Ցարիցինի հերոս պաշտպանները ցուցաբերեցին արտակարգ տոկունություն ու անձնվիրություն և երկու անգամ էլ ջախջախեցին, ետ շպրտեցին Կրասնովի գերակշռող ուժերը։

Չնայած 1919 թ. հունիսի 30-ին Դենիկինին հաջողվեց գրավել Ցարիցինը, այնուամենայնիվ այդ քաղաքի պաշտպանությունը քաղաքացիական կռիվների առաջին շրջանում մեծ նշանակություն ունեցավ Սովետական Ռուսաստանի համար։ 1918 թ. կեսերին սպիտակգվարդիականները ուժեր էին կենտրոնացրել Աստրախանի ուղղությամբ։ Սակայն հակառակորդի գործադրած ջանքերն ապարդյուն անցան։

Քաղաքացիական կռիվների տարիներին առանձնահատուկ ու կարևոր



նշանակություն ուներ Թուրքեստանյան ռազմաճակատը, որը կոչված էր ամրապնդելու Սովետական Ռուսաստանի հարավային սահմանները, լիովին ազատագրելու Միջին Ասիայի ժողովուրդներին։ Սակայն 1918 թ. թշնամին գրավել էր Օրենբուրգը և Թուրքեստանը կտրել Սովետական Ռուսաստանից։ Թշնամուն հակահարված տալու նպատակով Արևելյան ռազմաճակատի առաջին բանակի հրամանատար Գայը կազմակերպում է Օրենբուրգի և Ուրալսկի ազատագրումը, գլխովին ջախջախում Դուտովի հրոսակախմբերը։ Թշնամին, կորցնելով արագ հաղթանակի հասնելու իր երբեմնի հույսը, ստիպված էր բոլոր ռազմաճակատներում երկարատև պայքարի նախապատրաստություններ տեսնել։

1919 թ. մարտի 4-ին Կոլչակը, Անտանտի օգնությամբ ստեղծած մեծաթիվ ու լավ զինված բանակով, սկսեց նոր հարձակում 1.800 կմ ձգվող Արևելյան ամբողջ ռազմաճակատով։ Հարավից հարձակում սկսեց Դենիկինը, հյուսիսից ու հյուսիս-արևմուտքից՝ Յուդենիչը։ Արևմուտքում մեծ վտանգ էին ներկայացնում լեհական ու պետլյուրական զորքերը, Հեռավոր Արևելքում՝ ճապոնական օկուպանտները։

Այս անգամ կրկին ռազմական գործողությունների գլխավոր ու վճռական թատերաբեմ դարձավ Արևելյան ռազմաճակատը։ Ունենալով կենդանի ուժի, տեխնիկայի գերազանցություն, Կոլչակը կարճ ժամանակամիջոցում կարողացավ գրավել մի շարք քաղաքներ և սպառնալ Սամարային ու Սիմբիրսկին։ Լենինը նշում էր, որ «Կոլչակի հաղթանակներն Արևելյան ռազմաճակատում սովետական հանրապետության համար չափազանց ահեղ վտանգ են ստեղծում։ Անհրաժեշտ է ուժերի ամենածայրահեղ լարում, որպեսզի Կոլչակին ջախջախենք» (Երկեր, հ. 29, էջ 331)։

Ապրիլի սկզբներին առաջին և հինգերորդ բանակների զորամասերն անհավասար մարտեր էին մղում Կոլչակի դեմ, աշխատելով կանգնեցնել նրա առաջխաղացումը։ Հակառակորդը համառ փորձեր էր անում Բուգուլմայի շրջանում դուրս գալ 5-րդ բանակի ձախ թևի թիկունքը և 1-ին բանակը կտրել 5-րդ բանակից։ Դրությունը նորից բարդանում էր։ Պետրոգրադի բանվորներին հասցեագրված նամակում Լենինը գրում էր. «Ընկերնե՛ր, Արևելյան ռազմաճակատում դրությունը չափազանց վատացել է։ Այսօր Կոլչակը վերցրել է Վոտկինի գործարանը, ընկնում է Բուգուլման, ըստ երևույթին Կոլչակը էլի առաջ կշարժվի։

Վտանգն ահեղ է։

Այսօր մենք ժողովրդական կոմիսարների սովետում մի շարք արտակարգ միջոցներ ենք կիրառում Արևելյան ռազմաճակատին օգնելու համար, ուժեղացրած ագիտացիա ենք ծավալում։

Մենք խնդրում ենք Պիտերի բանվորներին՝ ամենքին ոտքի հանել, բոլոր ուժերը մոբիլիզացնել Արևելյան ռազմաճակատին օգնելու համար» (ПСС, т. 38, стр. 268):

Լենինի ցուցումով հազարավոր կամավորներ մեկնեցին Արևելյան ռազմաճակատ։ Մոսկվայից 10 հազար հրացան ուղարկվեց Սիզրան։ Թշնամու դեմ մղվող կռվին ավելի կազմակերպված բնույթ տալու նպատակով ապրիլի 11-ից Արևելյան ռազմաճակատում կռվող բանակներն ընդգրկվեցին հյուսիսային և հարավային խմբավորումների մեջ։ Թշնամու դեմ պայքարի հիմնական ծանրությունն ընկնում էր վերջին խմբավորման վրա, որի հրամանատար նշանակվեց Մ. Վ. Ֆրունզեն, իսկ քաղաքական կոմիսար՝ Վ. Վ. Կույբիշևը (տե՛ս

Гражданская война в Оренбурге (1917—1922), документы и материалы, М. 1961, стр. 158):

*1919 թ. ապրիլ—մայիս ամիսներին հակառակորդը մեծ ուժեր կենտրոնացնելով Օրենբուրգի ուղղությամբ, աշխատում էր գրավել այն, կրկին Սովետական Ռուսաստանը կտրել Թուրքեստանից և դուրս գալ 1-ին բանակի զորամասերի թիկունքը։ Օրենբուրգի հերոս պաշտպանները Սովետական Ռուսաստանի հետ կապված էին Օրենբուրգ—Սամարա երկաթուղային մի նեղ ճանապարհով միայն։ Փաստերը ցույց են տալիս, որ թշնամին Օրենբուրգի տակ ուներ ավելի քան 20 հազար զինվոր, 56 թնդանոթ, 223 գնդացիր։ Մինչդեռ սովետական զորքերը կազմում էին ընդամենը 6 հազար զինվոր, 11 թնդանոթ, 84 գնդացիր (տե՛ս* Е. А. Болтик, Контрнаступления Южной группы Восточного фронта и разгром Колчака (1919 г.), М., 1949, стр. 58):

*Հարավային խմբավորման հրամանատար Մ. Վ. Ֆրունզեին ուղարկած հեռագրում Լենինը նշել է. «Գիտե՞ք արդյոք դուք Օրենբուրգի ծանր դրության մասին։ Այսօր հեռագրական ուղղակի կապով երկաթուղայիններն ինձ հաղորդեցին օրենբուրգցիների հուսահատ խնդրանքը՝ ուղարկել հետևակի 2 գունդ և հեծելազորի 2 գունդ կամ գոնե առայժմ 1000 հետևակ և մի քանի էսկադրոն։ Անհապաղ հաղորդեցեք, թե ինչ եք ձեռնարկել և որոնք են Ձեր պլանները։ Իհարկե, իմ հեռագիրը մի դիտեք որպես ռազմական հրամանները խախտող հեռագիր»* (ПСС. т. *50*, стр. *310*)։

*Մայիսի երկրորդ կեսին Օրենբուրգի հերոս պաշտպաններին օգնական ուժեր ուղարկվեցին. 250 մարդուց բաղկացած կոմունիստական ջոկատը, ինտերնացիոնալ գումարտակը (300 հոգի) և Օրսկի հրաձգային գունդը։ Ուղարկվեց նաև 3 զրահամեքենա։ Հակառակորդը Օրենբուրգից ետ շպրտվեց։*

*Այն ժամանակ, երբ Կոլչակի զորքերը սովետական բանակների հարվածների տակ ետ էին շպրտվում դեպի Արևելք, 1919 թվականի ամռանը Դենիկինը վճռական հարձակման անցավ հարավից։ 1919 թվականի երկրորդ կեսին գլխավորը դարձավ Հարավային ռազմաճակատը։*

*Գերագույն գլխավոր հրամանատար Ի. Ի. Վացետիսը և Հանրապետության ռազմա-հեղափոխական խորհրդի նախագահ Լ. Տրոցկին այն կարծիքին էին, որ անհրաժեշտ է վերջ տալ Կոլչակին հետապնդելուն և Արևելյան ռազմաճակատից զորքերի մեծ մասը փոխադրել Հարավային ռազմաճակատ։ Սակայն Վ. Ի. Լենինը կտրականապես մերժեց Լ. Տրոցկու և Ի. Վացետիսի տեսակետը, ցույց տալով, որ նման միջոցառումը ոչնչով չի արդարացվում, որովհետև Կոլչակը լիովին ջախջախված չէր և դեռ կարող էր կարճ ժամանակում Անտանտի օգնությամբ վերակազմել իր բանակները և նորից հարձակման անցնել։*

*1919 թ. մայիսի 29-ին Վ. Ի. Լենինը Արևելյան ռազմաճակատի ռազմահեղափոխական խորհրդին ուղղված հեռագրում, շեշտելով ռազմաճակատում հարձակումը շարունակելու անհրաժեշտությունը, գրում էր. «Եթե մենք մինչև ձմեռ չնվաճենք Ուրալը, ապա ես հեղափոխության կործանումն անխուսափելի եմ համարում»* (ПСС. т. 50, стр. *328*)։ *Ուստի, նրա ցուցումով սովետական բանակների հարձակումն Արևելյան ռազմաճակատում շարունակվեց, որի շնորհիվ Կոլչակը ոչ միայն զրկվեց ուժերը վերախմբավորելու և Դենիկինին օգնելու հնարավորությունից, այլև գլխովին ջախջախվեց։*

*Շարունակելով հարձակումը, սովետական զորամասերը հուլիսի 13-ին գրավեցին Զլատոուստը, իսկ 26-ին՝ Չելյաբինսկը։ Կատարելով Վ. Ի. Լենինի ցուցումը՝ կարմիր բանակն Ուրալը լիովին մաքրեց սպիտակներից։*

*1919 թվականի ամռանը Դենիկինը զգալի հաջողություններ էր ձեռք բերել Հարավային ռազմաճակատում։ Նույն թվի հուլիսի 3-ին նա Մոսկվայի վրա երեք ուղղությամբ վճռական հարձակում սկսելու հրաման տվեց։ «Ընկերնե՛ր,— գրում էր Վ. Ի. Լենինը,— վրա է հասել սոցիալիստական հեղափոխության ամենակրիտիկական մոմենտներից մեկը, ամենայն հավանականությամբ՝ նույնիսկ ամենակրիտիկականը» (Երկեր, հ. 29, էջ 535)։*



*ՌԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեն՝ «Բոլորս պայքարի՝ Դենիկինի դեմ» իր նամակում սովետական ժողովրդին կոչ էր անում մոբիլիզացնելու երկրի բոլոր ռեսուրսները ընդդեմ Դենիկինի։ Ռազմաճակատ մեկնեցին տարբեր ազգերի 20 հազար կոմունիստներ, 21,5 հազար կոմերիտականներ ու 36 հազար արհմիութենական աշխատողներ։*

*Ինչպես հայտնի է, սկզբնական շրջանում Դենիկինի ժամանակավոր առավելություններից մեկը նրա ունեցած հեծյալ զորամասերի թվական գերազանցությունն էր։ 1919 թվականի օգոստոսի 10-ին Մամոնտովի հեծյալ կորպուսի կողմից Հարավային ռազմաճակատի գծի ճեղքումը, Տամբովի, Ելեցի, Կոզլովի և այլ բնակավայրերի գրավումը ժամանակավորապես խախտեցին կարմիր բանակի կողմից նախապատրաստվող հակահարձակման պլանը։*

*1919 թ. օգոստոսի 28-ին Հարավային ռազմաճակատի ռազմհեղխորհրդին ուղղված հեռագրում Լենինը գրում էր. «Չափազանց անհանգստացած եմ Մամոնտովի հաջողություններից։ Նա կարող է ճանապարհների ու պահեստների ավերումներով սարսափելի վնասել մեզ։ Արդյոք ձեռնարկվո՞ւմ են բոլոր միջոցները։ Բավականաչա՞փ եռանդուն և արագ։ Ավելի հաճախ հաղորդեցեք»* (ПСС. т. *51*, стр. *39*)։

*Կարմիր բանակի գերագույն գլխավոր հրամանատարությունը նոր հեծյալ զորամասեր ստեղծելու որոշում կայացրեց։ Շնորհիվ ձեռնարկված միջոցների, 1919 թ. աշնանը կարմիր հեծելազորն զգալի հզորության հասավ և կարողացավ ջախջախիչ հարված հասցնել հակառակորդի հեծյալ զորամասերին։*

*Դենիկինը մեծ հույսեր էր կապել Ուրալ գետի շրջանում գործող Կոլչակի հարավային մեծ բանակի հետ, որը գլխավորում էր գեներալ Բելովը։ Վերջինս մեծ վտանգ էր սպառնում Հարավային ռազմաճակատում գործող սովետական զորամասերին։*

*Քաղաքացիական կռիվների մեծ ստրատեգը՝ Լենինը, Հարավային ռազմաճակատի հրամանատարության ուշադրությունը բևեռեց Բելովի բանակի՝ Կոլչակի այդ վերջին մնացորդի ջախջախման և նրա կողմից Դենիկինին օգնություն ցույց տալու հնարավորությունից զրկելու մարտական հանձնարարության կատարման վրա։*

*Այդ կարևոր և պատասխանատու խնդրի լուծումը հանձնարարվեց 49-րդ դիվիզիային, որը գլխավորում էր քաղաքացիական կռիվների տաղանդավոր զորահրամանատար Գասպար Ոսկանյանը։ Մասնավորապես նա աչքի ընկավ Կոլչակի հարավային բանակի ջախջախման գործում, որի շնորհիվ ճանապարհ բացվեց դեպի Թուրքեստան։*

*Չափազանց կարևոր նշանակություն տալով Ուրալսկի պաշտպանությանը, 1919 թ. հունիսի 16-ին Հարավային խմբավորման շտաբ ուղարկած հեռագրում Լենինը գրում էր. «Խնդրում եմ հաղորդել ուրալյան ընկերներին իմ ջերմ ողջույնը պաշարված Ուրալսկի հիսունօրյա պաշտպանության հերոսներին, խնդրվում է հոգով չընկճվել, դիմանալ ևս մի քանի շաբաթ։ Ուրալսկի պաշտպանության հերոսական գործը պսակվում է հաջողությամբ» (Երկեր, հ. 35, էջ 437)։*







Ուրալսկի համար մղված մարտերում 1919 թ. սեպտեմբերի 5-ին հերոսի
մահով զոհվեց Վասիլի Չապաևը։ Սակայն Ուրալի սպիտակ բանդաները դեռ
լիովին չէին ջախջախվել և, վերակազմելով ուժերը, 1919 թվականի աշնանը
անցել էին վճռական հարձակման Ուրալսկում գործող սովետական զորամասե-
րի դեմ։ Գեներալ Տոլստովի գլխավորած սպիտակգվարդիական բանակը մո-
տեցել էր Դենիկինի զորամասերի աջ թևին և ռեալ հնարավորություն ուներ
միանալու նրան։ Վտանգն ահավոր էր։ Ահա թե ինչու 1919 թ. հոկտեմբերի
18-ին Ֆրունզեին ուղարկած հեռագրում Լենինը գրում էր. «Ամբողջ ուշադրու-
թյունը դարձրեք ոչ թե Թուրքեստանին, այլ ուրալյան կազակների լիակատար
լիկվիդացիային՝ ամեն տեսակ, թեկուզ և դիպլոմատիկական միջոցներով։ Բո-
լոր ուժերով արագացրեք օգնությունը Հարավային ռազմաճակատին»
(ПСС. т. 51, стр. 62)։
Ուրալի կազակության ջախջախման այդ կարևոր մարտական խնդիրը
Մ. Ֆրունզեն հանձնարարում է 4-րդ բանակին։ «Ես գտնում եմ,— գրում էր
Ֆրունզեն 4-րդ բանակի հրամանատար Գասպար Ոսկանյանին ուղղված հե-
ռագրում,— որ Ձեր կողմից սկսած առաջխաղացումը պետք է որոշի ուրալյան
ռազմաճակատում մղվող պայքարի բախտը» (ՍԲԿՊԱ., ֆ. 110, ց. 3, գ. 110, թ.
58)։
Մ. Ֆրունզեի հրամանով 4-րդ բանակի զորամասերը, անցնելով վճռական
հարձակման և մի շարք ջախջախիչ հարվածներ հասցնելով թշնամուն, 1919 թ.
վերջերին գրավեցին Նովայա Կազանկան, Գորսկայա ամրոցը, իսկ 1920 թ.
հունվարի 5-ին ազատագրեցին Գուրև քաղաքը, որով փաստորեն վերացվեց
ուրալյան ռազմաճակատը։ Նույն օրը Լենինին ուղղված հեռագրով Ֆրունզեն
հայտնում էր, որ Ուրալյան ռազմաճակատը վերացվել է, որ 4-րդ բանակի զո-
րամասերը 3 օրում անցնելով 150 վերստ տարածություն, գրավել են հակա-
ռակորդի վերջին հենակետը, Գուրևը (տե՛ս «М. В. Фрунзе на фронтах
гражданской войны». Сборник документов, М., 1941 стр. 247)։
Ուրալյան կազակների ջախջախման լենինյան ցուցումը կատարված էր։
Դենիկինը զրկվեց աջ թևից սպասվող օգնությունից։
Սովետական զորամասերի հակահարձակման պլանի իրագործման համար
մեծ նշանակություն ունեցավ նաև Լենինի ժամանակին արված ցուցումը՝ գլխա-
վոր հարվածի ուղղությունը փոխելու վերաբերյալ։ 1919 թ. հոկտեմբերի 3-ին
Լենինը «Պետրոգրադի բանվորների օրինակը» հոդվածում, նշելով Դոնի և Կու-
բանի վրա հարձակումը շարունակելու անհրաժեշտության մասին, միաժամանակ
ավելի հրատապ խնդիր էր համարում այն, որ լրացուցիչ ուժեր մոբիլիզացվեն
Օրյոլի վրա թշնամու սկսած հարձակումը ետ մղելու համար։ Լենինը պատե-
րազմական գործողությունների փոփոխված իրադրության մեջ նկատեց, որ
Հարավային ռազմաճակատում գլխավոր վտանգը սպառնում է Օրյոլ—Տուլա
ուղղությամբ թշնամու սկսած հարձակումից։ Նրա ցուցումով կուսակցության
Կենտկոմը որոշեց Հարավ-Արևելյան ռազմաճակատում ժամանակավորապես
անցնել պաշտպանության, իսկ պայքարի հիմնական կենտրոնը դարձնել Հա-
րավային ռազմաճակատը և հարձակում սկսել Խարկով—Դոնբաս ուղղությամբ։
1919 թ. հոկտեմբերի կեսերին Ա. Եգորովի ընդհանուր հրամանատարու-
թյամբ սկսվեց սովետական զորամասերի հարձակումը, և մեկը մյուսի ետևից
ազատագրվեցին Օրյոլը, Վորոնեժը ու շատ ուրիշ քաղաքներ։ Նոր պլանի հա-
մաձայն սովետական զորամասերն այնուհետև Խարկով—Դոնբասի վրայից
անցան դեպի Ռոստով, որը հանդիսանում էր Դենիկինի «կամավորական» և



Դոնի բանակների միացման կետը։ Հարավային ռազմաճակատի զորամասերը փայլուն կերպով կատարեցին իրենց առաջադրված մարտական խնդիրները, ազատագրեցին Ցարիցինը, Ռոստովը։ Այնուհետև կարմիր բանակը գրավեց սպիտակների վերջին հենակետը՝ Նովոռոսիյսկը։

Դենիկինի բանակների վերջնական ջախջախումը կանխորոշեց սովետական զորամասերի հաղթանակը մյուս ռազմաճակատներում։ Ջախջախվեցին Կոլչակի ու Յուդենիչի հարձակումները։

Լենինն առաջարկում էր մեծ ուժեր կենտրոնացնել Պետրոգրադի տակ և մինչև վերջ ջախջախել Յուդենիչին (В. И. Ленин, Военная переписка 1917—1922 гг., М., 1966, стр. 242—243)։

Նրա կոչով հազարավոր կոմունիստներ ու կոմերիտականներ մեկնեցին ռազմաճակատ։ 1919 թ. հոկտեմբերի 21-ին 7-րդ և 15-րդ բանակների զորամասերը Բալթիական նավատորմի նավերի աջակցությամբ անցան վճռական հարձակման։ Մի քանի օր տևող համառ մարտերում Յուդենիչը վերջնականապես ջախջախվեց։

Հսկայական է Լենինի դերը Դենիկինի և Յուդենիչի դեմ կարմիր բանակի տարած հաղթանակների գործում։ Այդ հաղթանակները ամրապնդեցին սովետական հանրապետության միջազգային դրությունը։ Սակայն Անտանտի իմպերիալիստները շարունակում էին նոր դավեր նյութել սովետական պետությունը տապալելու համար։ Այդ նպատակով նրանք օգտագործեցին Լեհաստանին և դենիկինյան ջախջախված բանակների մնացորդների գլուխ անցած բարոն Վրանգելին։ 1920 թ. ապրիլի 25-ին, առանց պատերազմ հայտարարելու, լեհական զորքերը ներխուժեցին Սովետական Ուկրաինայի տերիտորիան և մայիսի 6-ին զավթեցին Կիևը։ 1920 թ. հունիսի սկզբին հարավից հարձակում սկսեց Վրանգելը, գրավելով Հյուսիսային Տավրիկան և Հարավային Ուկրաինայի շրջանները։

1920 թ. մայիսի 23-ին ՌԿ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեն հրապարակեց «Լեհական ռազմաճակատը և մեր խնդիրները» թեզիսները, ուր նշվում էր, որ անհրաժեշտ է մոբիլիզացնել սովետական ժողովրդի բոլոր ուժերը իմպերիալիստների այդ փորձը ևս ձախողելու համար։ ՌԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեի կոչով միայն մայիս-հունիս ամիսներին ռազմաճակատ մեկնեցին 12 հազար կոմունիստ և 3 հազար կոմերիտական։

1920 թ. օգոստոսի կեսերին Արևմտյան ռազմաճակատի սովետական զորամասերը Մ. Տուխաչևսկու ընդհանուր հրամանատարությամբ մոտեցան Վարշավային, իսկ հարավ-արևմտյան ռազմաճակատի զորքերը Ա. Եգորովի հրամանատարությամբ՝ Լվովին։ Սակայն սովետական զորամասերը մի քանի հարյուր կիլոմետրով հեռացել էին իրենց թիկունքից և գրեթե լիովին զրկվել համալրումներ ու զինամթերք ստանալու հնարավորությունից։ Եվ ահա այսպիսի պայմաններում սովետական զորամասերը պետք է վերջին վճռական ճակատամարտը տային հակառակորդի լավ սպառազինված մեծաթիվ զորքերին՝ Վարշավայի տակ։

Օգտագործելով վերոհիշյալ առավելությունները, օգոստոսի կեսերին հակառակորդն անցնում է հակահարձակման՝ Արևմտյան ամբողջ ռազմաճակատով մեկ։ Սովետական զորամասերն ստիպված էին մարտերով նահանջել։

Լենինի ցուցումով (սովետական զորամասերի համար ստեղծված այդ ծանր օրերին) օգոստոսի 14-ից 12-րդ հրաձգային բանակը (հրամանատար Գ. Ոսկանյան) և 1-ին հեծյալ բանակը (հրամանատար՝ Մ. Բուդյոննի) Հարավ-

արևմտյան ռազմաճակատից ուղարկվեցին արևմտյան ռազմաճակատ, հակառակորդի հիմնական՝ վարշավյան խմբավորման դեմ կռվելու: Սակայն արդեն ուշ էր:

Ջնայած ուշացած, այնուամենայնիվ 12-րդ հրաձգային և 1-ին հեծյալ բանակների փոխադրումը Արևմտյան ռազմաճակատ զգալիորեն թեթևացրեց Արևմտյան ռազմաճակատի զորամասերի դրությունը: Լեհերի առաջխաղացումը կասեցվեց: Սեպտեմբեր-հոկտեմբեր ամիսներին սովետական զորամասերը մի շարք հարվածներ են հասցնում հակառակորդին և լեհական կառավարությանն ստիպում հաշտություն խնդրել:

Լենինի ցուցումով Վրանգելի դեմ պայքարի շրջանը առանձնացվեց որպես ինքնուրույն՝ Հարավային ռազմաճակատ: Արևմտյան ռազմաճակատից նոր ուժեր (այդ թվում նաև Մ. Բուդյոննու 1-ին հեծյալ բանակը) փոխադրվեցին Հարավային ռազմաճակատ՝ ընդդեմ Վրանգելի: 1-ին հեծյալ բանակի ռազմհեղխորհրդին ուղարկած հեռագրում Լենինը գրում էր. «Խիստ կարևոր է ամբողջ ուժով արագացնել ձեր բանակի շարժումը դեպի Հարավային ռազմաճակատ: Խնդրում եմ դրա համար ձեռք առնել բոլոր միջոցները, կանգ չառնելով հերոսական միջոցառումների առջև: Հեռագրեցեք, թե հատկապես ինչ եք անում» (Երկեր, հ. 35, էջ 495):

Հարավային ռազմաճակատի զորամասերը Մ. Ֆրունզեի ընդհանուր հրամանատարությամբ պատվով կատարեցին այդ առաջադրանքը և 1920 թ. նոյեմբերի 15-ին գրավեցին Վրանգելի վերջին հենարանը՝ Սևաստոպոլը: Այդ նույն օրը Մ. Ֆրունզեն Լենինին հեռագրեց Հարավային ռազմաճակատում կարմիր բանակի ձեռք բերած փայլուն հաղթանակի մասին: 1920 թ. նոյեմբերի 16-ին Կերչի գրավումով Հարավային ռազմաճակատը լիկվիդացվեց:

Սոցիալիստական պետությունը իր կազմավորման ու ամրապնդման շրջանում միջազգային իմպերիալիզմի և ներքին դասակարգային թշնամիների հարկադրած քաղաքացիական պատերազմում փայլուն հաղթանակ տարավ: Հեղափոխական այդ մեծ քաջագործությունների ու սխրանքների կազմակերպիչն ու առաջնորդը Վ. Ի. Լենինն էր:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

Բ. Հ. ԼԱԼԱԲԵԿՅԱՆ

*Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր*

Վրաստանը մենշևիկների տիրապետությունից ազատագրվելուց հետո, Վ. Ի. Լենինը պահանջեց Անդրկովկասի համար ստեղծել մի տնտեսական վարչական կենտրոն, որը կարողանար միավորել երեք հանրապետությունների տնտեսական ու քաղաքական գործունեությունը: Նա գտնում էր, որ առանց դրա անհնար են երկրամասի ժողովրդական տնտեսության արագ վերականգնումն ու հետագա կարգացումը:

1921 թ. ապրիլին Օրջոնիկիձեին ուղղված նամակում Վլադիմիր Իլյիչը հիշեցնում է անդրկովկասյան հանրապետությունների միավորման անհրաժեշտությունը, որը հնարավորություն կընձեռեր արագացնելու ոռոգման և էլեկտրիֆիկացման աշխատանքները, ծավալելու առևտուրը միջազգային շուկայում, արագ վերականգնելու գյուղատնտեսությունն ու արդյունաբերությունը: «Համառորեն պահանջում եմ ամբողջ Անդրկովկասի համար ստեղծել մարզային տնտեսական օրգան...» (Երկեր, հ. 35, էջ 521):

Վ. Ի. Լենինը Անդրկովկասի ժողովուրդների տնտեսական ու քաղաքական միավորումը համարում էր այն գլխավոր միջոցը, որով կարելի էր լուծել Կովկասի համար բավական կնճռոտ ազգային հարցը՝ հաղթահարել ազգային թշնամությունը, փոխադարձ անվստահությունը և ստեղծել եղբայրական բարեկամության մի համերաշխ ընտանիք: Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստ ընկերներին գրած նամակում Վ. Ի. Լենինը հույս հայտնեց, որ Կովկասի ժողովուրդների «..սերտ դաշինքը կստեղծի ազգային խաղաղության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (Երկեր, հ. 32, էջ 402):

ՌԿ(բ)Կ X համագումարն ազգային հարցի մասին ընդունած իր որոշումներում ընդգծեց, որ Ադրբեջանական, Հայկական ու Վրացական սովետական հանրապետությունները չեն կարող ոտքի կանգնել, առանց իրենց միջև ապ-

գային թշնամությունն ու ազգային ճնշումը վերացնելու, առանց արևմուտքի և արևելքի ազգությունների աշխատավոր մասսաների համակրանքն ու վստահությունը վայելելու: Համագումարը պաշտպանելով սովետական հանրապետությունների ֆեդերատիվ միության լենինյան դիրքորոշումը, ընդգծեց, որ կապիտալիստական շրջապատի սպառնալիքի պայմաններում սովետական հանրապետությունների մեկուսացած գոյությունը չի կարող կայուն լինել, որ սովետական հանրապետությունների պաշտպանության ընդհանուր շահերը և պատերազմից քայքայված արտադրաուժերի վերականգնման խնդիրը հրամայաբար թելադրում են սովետական հանրապետություններին՝ կազմել պետական միություն, որպես իմպերիալիստական ստրկացումից, ազգային ճնշումից փրկվելու միակ ուղի:

Կենսագործելով Վ. Ի. Լենինի ցուցումները և ՌԿ (բ) Կ համագումարի որոշումները, Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունները մի շարք գործնական քայլերի դիմեցին անդրկովկասյան հանրապետությունների տնտեսական ու քաղաքական միավորման ճանապարհին:

1921 թ. մայիսի 2-ին ՌԿ (բ) Կ Կովկասյան բյուրոն որոշեց՝ վերացնել մաքսատները, վերահսկիչ պոստերը, թույլ տալ ազատ վերաբնակեցում, տրանզիտային ապրանքների անարգել փոխադրում՝ երեք հանրապետությունների տերիտորիայի բոլոր ճանապարհներով: Այդ որոշմամբ 1921 թ. հունիսին երեք հանրապետությունների միջև համաձայնագիր ստորագրվեց արտաքին առևտրի օրգանները միավորելու մասին: Դրան համապատասխան ստեղծվեց արտաքին առևտրի միացյալ օրգան, որին վերապահվեց դաշինքի մեջ մտած հանրապետություններից արտահանվող և ներմուծվող բոլոր ապրանքների ֆոնդերի տնօրինումը: Սովետական երեք հանրապետությունների ձեռնարկությունները, հիմնարկություններն արտասահմանում իրենց համար անհրաժեշտ գնումներ պետք է կատարեին գլխավորապես արտաքին առևտրի միացյալ օրգանի միջոցով: Այդ օրգանների միացումը զգալի չափով հեշտացրեց արտասահմանում կատարվող գնումների գործը: Նույն թվականին պայմանագիր ստորագրվեց երեք հանրապետությունների երկաթուղային ճանապարհների վարչությունները միացնելու վերաբերյալ:

1921 թ. օգոստոսին երկաթուղայինների անդրկովկասյան համագումարը որոշեց միավորել նաև երեք հանրապետությունների երկաթուղային ցանցը: Համագումարում բանվորները պահանջում էին անհապաղ կենսագործել Վ. Ի. Լենինի ցուցումներն անդրկովկասյան հանրապետությունների տնտեսական բոլոր օրգանները միացնելու և մի ընդհանուր տնտեսական կենտրոն ստեղծելու մասին:

Վ. Ի. Լենինի ցուցումները մեծ ոգևորությամբ ընդունվեցին ոչ միայն կուսակցական ղեկավարության, այլև բանվորական լայն շրջանների կողմից: Բանվորական մասսաները, պաշտպանելով Լենինի և կուսակցության ցուցումները, դատապարտում էին նացիոնալիստական այն տարրերին, որոնք կանխակալ պատրվակներով աշխատում էին ծուռ հայելու մեջ ներկայացնել Անդրկովկասի սովետական հանրապետությունների տնտեսական ու քաղաքական միավորման նշանակությունը:

Անդրկովկասյան հանրապետությունների միավորումն արագացնելու համար Վ. Ի. Լենինի պահանջով 1921 թ. հունիսի վերջերին Թիֆլիս եկան Կենտկոմի պատասխանատու աշխատողներ, որոնք հանդիպումներ ունեցան ՌԿ (բ) Կ Կովկասյան բյուրոյի և Վրաստանի Կենտկոմի ղեկավարների հետ:



1921 թ. հուլիսի 6-ին Վրաստանի կոմունիստական կուսակցության Թիֆլիսի ակտիվը հավանություն տվեց Լենինի և կուսակցության դիրքորոշմանը՝ անդրկովկասյան հանրապետությունների տնտեսական ու քաղաքական համագործակցության մասին: Այդ միավորումն անհրաժեշտ էր ինչպես տնտեսական, այնպես էլ ռազմա-քաղաքական տեսակետից: Վրաստանը չէր կարող ապրել առանց Ռուսաստանից ստացվող հացի, Ադրբեջանի վառելիքի, Հայաստանը չէր կարող մեկուսացված ապրել, առանց Վրաստանի ու Ադրբեջանի օգնության, Վրաստանի միջով Ռուսաստանից ստացվող պարենամթերքի: Հենց այսպիսի պայմաններն էին, որ Անդրկովկասյան Սովետական Հանրապետություններին թելադրում էին միավորելու իրենց տնտեսական ջանքերը:

Անդրկովկասյան հանրապետությունների միավորման հարցին հավանություն տվեց ՌԿ (բ) Կ Կովկասյան բյուրոյի հուլիսյան պլենումը: Պլենումն ընդգծելով այդ հանրապետությունների անկախությունն ամրապնդելու, դրանց միջև եղած կապն ուժեղացնելու կարևորությունը, անհրաժեշտ համարեց տնտեսական, ռազմական ու ֆինանսական դաշինք կնքել ինչպես Կովկասյան հանրապետությունների, այնպես էլ նրանց և Ռուսաստանյան ֆեդերացիայի միջև: Պլենումի հատուկ հանձնաժողովը պետք է ուսումնասիրեր հանրապետությունների տնտեսական գործունեությունը միավորելու հնարավորությունների հարցը և իր տեսակետը ներկայացներ Կովկասյան բյուրոյին:

1921 թ. հուլիսին Ադրբեջանի պրոֆմիությունների II համագումարը պաշտպանելով Կովկասյան բյուրոյի պլենումի որոշումը, Անդրկովկասի պրոլետարիատին կոչ արեց՝ միավորվել մեկ միասնական կազմակերպության մեջ և բոլոր ջանքերը նվիրաբերել երկրամասի ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման գործին: Այդ կոչը ջերմ պաշտպանություն գտավ Հայաստանի և Վրաստանի պրոֆմիությունների ու նրանց ղեկավար օրգանների շրջանում:

Անդրկովկասի սովետական հանրապետությունների տնտեսական ու քաղաքական միավորման մասին Վ. Ի. Լենինի ցուցումների կենսագործման ճանապարհին նոր էտապ հանդիսացավ ՌԿ (բ) Կ Կովկասյան բյուրոյի, Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի կուսկազմակերպությունների քարտուղարների, արհեստակցական միությունների և Կովկասյան բանակի քաղաշխատողների ներկայացուցիչների 1921 թ. օգոստոսի 12—14-ը տեղի ունեցած համակովկասյան խորհրդակցությունը: Ելույթ ունեցող ընկերները երկրամասի կուսակցական ու հասարակական բոլոր կազմակերպությունների հիմնական խնդիրը համարեցին աշխատավոր մասսաների եղբայրական համերաշխության հետագա ամրապնդումը՝ տնտեսական սերտ դաշինքի հիման վրա:

Խորհրդակցությունն անհրաժեշտ համարեց անհապաղ համաձայնություն ստորագրել Անդրկովկասյան հանրապետությունների տնտեսական միություն ստեղծելու մասին: Երկրամասի տնտեսական ծանր վիճակը թեթևացնելու գործում խորհրդակցությունը բացառիկ կարևոր նշանակություն տվեց արտաքին առևտրի միացյալ օրգանի աշխատանքի բարելավմանը, արտասահմանի հետ առևտրական կապերի ընդարձակմանը, ինչպես նաև առանձին հանրապետությունների վալյուտային ֆոնդերի միացմանը: Անդրկովկասի ժողովուրդների միջև ճիշտ փոխհարաբերություններ ստեղծելու գործում մեծ նշանակություն ունեցան 1921 թ. ապրիլին Մյասնիկյանին տված Լենինի ցուցումները:

Մյասնիկյանն իր հիշողություններում պատմում է, թե ինչպես Իլյիչը մանրամասն հետաքրքրվում էր ամբողջ Կովկասի և առանձին հանրապետու-

թյունների տնտեսական, քաղաքական, կուլտուրական կյանքով, ազգային առանձնահատկություններին վերաբերող բոլոր հիմնական հարցերով: «Հատ հարցեր էր տալիս, ըստ սովորության՝ աշխույժ կերպով հետաքրքրվում էր ամեն բանով, խոսում էր անդրկովկասյան գործերի մասին... Ես հեռացա նրանից այն տպավորության տակ, թե Անդրկովկասյան ֆեդերացիան և այն ժամանակ ընկեր Լենինի գաղափարով ծրագրված Սովետական Հանրապետությունների Միությունն ավելի ևս կամրապնդեն ազգամիջյան բարեկամությունը և կուժեղացնեն սովետական իշխանությունը» (Ընտիր երկեր, էջ 470—471):

Վ. Ի. Լենինը բացառիկ նշանակություն տալով այդ հանրապետությունների միավորմանը, չէր պահանջում այն անհապաղ դեկրետավորել, այլ գտնում էր, որ պետք է նախապատրաստել, քայլ առ քայլ հաղթահարել նրա ճանապարհին կանգնած դժվարությունները, երկրամասի ժողովուրդների միջից արմատախիլ անել մենշևիկների, մուսավաթականների և դաշնակների կողմից պատվաստած ազգային թշնամությունն ու փոխադարձ անվստահությունը:

Կուսակցության ակտիվ գործիչ Մամիա Օրախելաշվիլին հիշում է, որ Վ. Ի. Լենինն ակտիվ մասնակցել է Անդրկովկասի ժողովուրդների տնտեսական ու քաղաքական կյանքին վերաբերող բոլոր արմատական հարցերի լուծմանը, «այդ մասնակցությունը, որպես կանոն, միշտ եղել է բարերար և վճռող»: Նա կարողանում էր հանճարեղ կռահումներ անել ստեղծված իրադրությունից, ճիշտ ուղի ցույց տալ Անդրկովկասի կոմունիստներին՝ տնտեսական, քաղաքական և ներկուսակցական բոլոր հարցերը ճիշտ լուծելու համար: Իլյիչը հարցերն այնպես էր դնում, որ կարծես «...ուժեղ լուսարձակով լուսավորում էր կոմկուսակցության և սովետական իշխանության առաջ կանգնած հատկապես քաղաքական նշանակություն ունեցող հարցերը»:

Վ. Ի. Լենինը Կովկասի կոմունիստ ընկերներին շատ կարևոր ցուցումներ տվեց նաև արտաքին քաղաքականության հարցերի վերաբերյալ: Նա պահանջում էր, որ անդրկովկասյան հանրապետություններն արտաքին քաղաքականության ասպարեզում նույնպես հանդես գան միասնաբար, օգտագործեն 1921 թ. ստեղծված բարենպաստ պայմանները: «Մենք առաջին ճեղքն էինք բաց անում համաշխարհային կապիտալիզմի մեջ...

Դուք, Կովկասի կոմունիստ ընկերներ, կարիք չունեք ճեղք բաց անելու, հարկավոր է, որ կարողանաք ավելի մեծ զգուշությամբ ու սիստեմատիկությամբ ստեղծել նորը, օգտագործելով 1921 թվականի միջազգային՝ ձեզ համար ձեռնտու կացությունը: Թե՛ Եվրոպան և թե՛ ամբողջ աշխարհը 1921 թվականին այլևս այն չեն, ինչպես 1917 և 1918 թվականներին» (Երկեր, հ. 32, էջ 404):

Մեծ առաջնորդի ցուցումները կենսագործելու նպատակով 1921 թ. նոյեմբերի 3-ին ՌԿ(բ)Կ Կովկասյան բյուրոյի պլենումը որոշեց անդրկովկասյան հանրապետությունների ֆեդերատիվ պետություն ստեղծել: Վ. Ի. Լենինը հավանություն տալով այդ քայլին, կազմեց քաղբյուրոյի որոշման նախագիծ, որում Անդրկովկասյան Հանրապետությունների ֆեդերացիան համարեց սկզբունքորեն ճիշտ և անպայման իրագործելի, «...սակայն գործնականապես անհապաղ իրագործելու իմաստով վաղաժամ, այսինքն՝ պահանջում է որոշ ժամանակ քննարկման, պրոպագանդայի և սովետական եղանակով ներքևից անցկացնելու համար» (Երկեր, հ. 33, էջ 136): Լենինը գտնում է, որ ֆեդերացիան չի կարելի կենսագործել առանց այդ գաղափարը հանրապետությունների ներքնախավերի սեփականությունը դարձնելու, որ այդ հարցը հարկավոր



է մանրամասն քննարկել դաշնադրվող հանրապետությունների ժողովրդական լայն մասսաների շրջանում և ապա այն անցկացնել սովետների համագումարի միջոցով: Նա պահանջեց «...առաջարկել (Կովկասյան բյուրոյի միջոցով) Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի Կենտրոնական կոմիտեներին՝ ֆեդերացիայի հարցն ավելի լայնորեն դնել կուսակցության և *բանվորական ու գյուղացիական մասսաների* քննարկմանը, եռանդուն պրոպագանդա մղել ֆեդերացիայի *օգտին* և այն *անցկացնել* յուրաքանչյուր հանրապետության սովետների համագումարների միջոցով. մեծ օպոզիցիա լինելու դեպքում ճշտորեն ու ժամանակին տեղեկացնել ՌԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյին» (Երկեր, հ. 33, էջ 136):

1921 թ. նոյեմբերի 29-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն միաձայն ընդունեց Լենինի առաջարկած նախագիծը: ՌԿ(բ)Կ Կովկասյան բյուրոյի պլենումի և ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի որոշումները Անդրկովկասյան ֆեդերացիա ստեղծելու մասին ջերմությամբ ընդունվեցին կուսակցական և անկուսակցական մասսաների կողմից: Այդ որոշումները, ինչպես մատնանշում է Ալ. Մյասնիկյանը, ապահովում էին Կովկասի ճնշված ժողովուրդների ազատությունն ու անկախությունը, պայմաններ ստեղծում նրանց նյութական ու հոգևոր կուլտուրայի զարգացման համար: Վ. Ի. Լենինը գտնում էր, որ միայն ֆեդերատիվ միության միջոցով հնարավոր կլինի ամրապնդել Մերձավոր Արևելքի ճանապարհին ընկած Անդրկովկասյան Հանրապետությունների միասնությունը, որն ուներ ո՛չ միայն տնտեսական, այլև ռազմա-պաշտպանական նշանակություն: Հիմնավորելով Վ. Ի. Լենինի ցուցումները, Մյասնիկյանն ընդգծում է, որ ամբողջ Կովկասը տնտեսական մի ամբողջություն է: Կյանքը թելադրում է, որ կովկասյան հանրապետությունները միասին հանդես գան ֆինանսական քաղաքականության, երկաթուղային տնտեսության, փոստ-հեռագրական գործունեության և արտաքին առևտրի ասպարեզներում:

1921 թ. նոյեմբերին Թիֆլիսի կուսկազմակերպության ակտիվի ժողովում Անդրկովկասյան Սովետական Հանրապետությունների ֆեդերացիայի մասին տրված իր զեկուցման մեջ, Ս. Օրջոնիկիձեն բազմակողմանի հիմնավորեց Վ. Ի. Լենինի ցուցումների և Կովկասյան բյուրոյի պլենումի որոշման կարևորությունը: «Սովետական հանրապետությունները— դա թշնամիներով շրջապատված աշխատավոր մասսաների անխզելի հեղափոխական դաշինքն է: Առանց փոխադարձ տնտեսական և ռազմական օգնության սովետական հանրապետությունները գոյություն ունենալ չեն կարող: Բավական է, որ որևէ սովետական հանրապետություն մեկուսանա 24 ժամով և նրան անմիջապես կոչնչացնեն նրան շրջապատող թշնամիները» (Ընտիր հոդվածներ և ճառեր, էջ 72):

Անդրկովկասյան հանրապետությունների ֆեդերացիայի մասին Վ. Ի. Լենինի առաջարկած՝ ՌԿ(բ)Կ Քաղբյուրոյի ընդունած բանաձևին և Կովկասյան բյուրոյի պլենումի որոշմանը հավանություն տվեցին երկրամասի կուսակցական, պրոֆմիութենական և հասարակական բոլոր կազմակերպությունները: Լենինին ուղղված իրենց հեռագրերում կուսկազմակերպությունները, աշխատավորական մասսաները Անդրֆեդերացիան համարեցին այն մարտական դաշինքը, որի միջոցով երկրամասի ժողովուրդները կարող են վերջ տալ անցյալի փոխադարձ անվստահությանը և ստեղծել սոցիալիստական ինտերնացիոնալ համերաշխ ընտանիք:

Հակառակ աշխատավորների ցանկության, վրացի մի խումբ ընկերներ

առարկում էին ֆեդերացիայի ստեղծմանը, պատճառաբանելով, որ դա Օրջոնիկիձեի ինքնուրույն գործն է, առանց Լենինի և Կենտկոմի համաձայնության: Մինչդեռ Օրջոնիկիձեն և Կովկասյան բյուրոյի մյուս ղեկավար աշխատողները ֆեդերացիայի ստեղծման համար իրենց ձեռնարկած ամեն մի միջոցառում նախօրոք համաձայնեցնում էին Լենինի և կուսակցության Կենտկոմի հետ: 1922 թ. ապրիլին ՌԿ(բ)Կ Կենտկոմի պլենումը դատապարտեց ֆեդերատիվ միության հակառակորդներին, հավանություն տվեց Անդրկովկասյան երկրային կոմիտեի քաղաքական գծին:

1922 թ. մարտի 12-ին Թիֆլիսում բացվեց երեք հանրապետությունների կենտրոնական գործադիր կոմիտեների լիազոր կոնֆերանսը, որտեղ ստորագրվեց Անդրկովկասյան Սովետական Հանրապետությունների Ֆեդերատիվ Միություն ստեղծելու պայմանագիրը: Պայմանագրի համաձայն դաշնակից հանրապետությունների բարձրագույն օրգան դարձավ Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի կառավարությունների առաջադրած հավասար թվով ներկայացուցիչների լիազոր կոնֆերանսը, իսկ գործադիր մարմինը՝ դաշնակցային խորհուրդը: Այդ խորհրդի իրավասության տակ անցան ռազմական գործերը, ֆինանսները, արտաքին առևտուրն ու արտաքին քաղաքականությունը, հաղորդակցության ճանապարհները, կապի միջոցները, հակահեղափոխության դեմ մղվող պայքարի օրգանը:

Դաշնակցային խորհուրդը փաստորեն Անդրկովկասյան ֆեդերացիայի կենտրոնական կառավարությունն էր, որին իրավունք էր վերապահվում հրապարակել դեկրետներ, կարգադրություններ, հրահանգներ և գործադրել այլ միջոցառումներ իր պարտականությունները կատարելու համար:

Անդրկովկասյան հանրապետությունների տնտեսական օրգանների գործունեությունը ղեկավարելու, նրանց աշխատանքը կոորդինացնելու նպատակով, լիազոր-ներկայացուցիչների ստորագրած պայմանագրի համաձայն, դաշնակցային խորհուրդը 1922 թ. մայիսին որոշեց ստեղծել բարձրագույն տնտեսական խորհուրդ, որի վրա դրվեցին ամբողջ երկրամասի նյութական միջոցների հաշվառումն ու ծախսումը, տնտեսական պլանների մշակման ու կատարման պատասխանատվությունը: Վ. Լենինը դաշնակցային խորհրդի ուշադրությունը հրավիրեց հատկապես արտաքին քաղաքականությանը վերաբերող կարևոր հարցերի վրա: Մի շարք ցուցումներ տվեց արտաքին առևտրի և կոնցեսիաների վերաբերյալ, պահանջեց այդ բոլոր հարցերում կոնտակտ հաստատել Ռուսաստանյան ֆեդերացիայի կառավարության և նրա արտաքին գործերի կոմիսարիատի հետ: Վ. Ի. Լենինի այդ ցուցումների հիման վրա Սովետական Ռուսաստանի ժողկոմսովետի և Անդրկովկասի դաշնակցային խորհրդի միջև ստորագրվեց հատուկ համաձայնագիր՝ Ռուսաստանյան ֆեդերացիայի արտաքին առևտրի ժողկոմատի ներկայացուցիչը Անդրկովկասի արտաքին առևտրի միացյալ օրգանի կազմի մեջ մտցնելու մասին: Ռուսաստանյան ֆեդերացիայի կառավարության կողմից արտաքին առևտրի մենաշնորհի մասին ընդունած որոշումը տարածվեց ամբողջ Անդրկովկասի վրա:

Վերացվեցին Անդրկովկասի առանձին հանրապետությունների առևտրական ներկայացուցչություններն արտասահմանյան երկրներում: Դաշնակցային խորհուրդը 1922 թ. մայիսին վերացրեց առանձին հանրապետություններում ստեղծված արտաքին գործերի ժողկոմատները և իր ձեռքում կենտրոնացրեց ողջ արտաքին քաղաքականությունը:

Հետևողականորեն կենսագործելով Վ. Ի. Լենինի ցուցումները, դաշնակցային խորհուրդը որոշակի աշխատանք կատարեց հանրապետությունների միջև նորմալ տնտեսական փոխհարաբերություններ ստեղծելու, Սովետական Ռուսաստանից ստացվող օգնությունը և հանրապետություններում եղած նյութական միջոցները ճիշտ բաշխելու գործում: Կարգավորեց սահմանային վեճերը, պլանավորեց Թիֆլիսի մոտ կառուցել էլեկտրակայան, պայքար կազմակերպեց մորեխի և գյուղատնտեսության մյուս վնասատուների դեմ, բավական աշխատանք կատարեց ժողովուրդների փոխհարաբերությունները բարելավելու, ազգային խաղաղությունը կայուն հիմքերի վրա դնելու համար:

Չնայած այս հաջողություններին, Անդրկովկասի կուսկազմակերպությունների շարքերում եղած նացիոնալիստական տարրերը շարունակում էին համառ դիմադրություն ցույց տալ ՌԿ(բ)Կ Կենտկոմի, Անդրկովկասի կուսակցական վերադաս օրգանների որոշումներին, պնդելով, որ ֆեդերացիայի ստեղծումը վաղաժամ է, որ այն կարող է վնաս հասցնել հանրապետությունների սուվերեն իրավունքներին: Նրանք սկսեցին գրավոր բողոքներ ներկայացնել ՌԿ(բ)Կ Կենտկոմին և Լենինին, մեղադրելով Ս. Օրջոնիկիձեին և Կովկասյան բյուրոյի մյուս ղեկավար ընկերներին: Այս հարցում նույնպես Լենինի վճռական կամքն օգնեց ուղղելու նացիոնալիստական տարրերի սխալները: 1922 թ. հոկտեմբերին ՌԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեի պլենումը իր ընդունած որոշմամբ դատապարտեց նացիոնալ-ուկլոնիստներին և միաձայն որոշեց պահպանել ու ամրապնդել Անդրկովկասյան ֆեդերացիան: Այդ որոշումն Անդրկովկաս բերեց Օրջոնիկիձեն:

Ազգությունների կամ «ավտոնոմիզացիայի» հարցի շուրջ համագումարին ուղղած Վ. Ի. Լենինի նամակը բացառիկ կարևոր նշանակություն ունեցավ ինչպես Անդրկովկասի, այնպես և Ռուսաստանի մյուս ժողովուրդների միջև ճիշտ փոխհարաբերություններ ստեղծելու, նրանց տնտեսական ու քաղաքական ջանքերը միավորելու և ազգային հարցը ճիշտ լուծելու համար: Նա պահանջում էր Կովկասի ազգերի ու ժողովուրդների հետ ստեղծել այնպիսի փոխհարաբերություններ, որ հնարավոր լինի փոխհատուցել այն անվստահությունը, կասկածամտությունը և վիրավորանքները, որ պատմական անցյալում նրանց հասցրել է ցարական-վելիկոռուսական միապետությունը: Այդ տեսակետից Վ. Ի. Լենինն անհրաժեշտ էր համարում անցյալում ճնշված ժողովուրդների նկատմամբ հատկապես լինել զգույշ, անհրաժեշտության դեպքում՝ զիջող: Նա պահանջում էր խիստ պահպանել ազգային լեզուն, ապահովել նրա անխափան կիրառումը: Թույլ չտալ, որ երկաթուղային ծառայության միասնության կամ այլ պատրվակներով չարաշահումներ կատարվեն ի վնաս մայրենի լեզվի: Այլազգիների նկատմամբ ամենափոքր բռնության փորձը Վ. Ի. Լենինը համարում էր դավաճանություն կուսակցության ազգային քաղաքականության նկատմամբ:

ՌԿ(բ)Կ XII համագումարը նույնպես պաշտպանեց ֆեդերատիվ կապերի ընդարձակման և ամրապնդման պահանջը: Համագումարի որոշման մեջ հատուկ սրությամբ ընդգծվեց, որ Անդրկովկասի նման երկրում, որտեղ ցարիզմի մեծապետական քաղաքականության հետևանքով խոր արմատներ են գցել ազգային թշնամանքն ու անվստահությունը, չի կարելի ազգային խաղաղություն ստեղծել առանց ֆեդերատիվ դաշինքի:

Անդրկովկասյան դաշնակցային խորհուրդը գոյություն ունեցավ 10 ամիս: Թեև այդ ժամանակաշրջանում այն բավական աշխատանք կատարեց, բայց կյանքը ցույց տվեց, որ Անդրկովկասի համար անհրաժեշտ է միավորման

ավելի բարձր պետական կազմակերպության ձև, որը կարողանար լիակատար արտահայտել Անդրկովկասի ժողովրդական մասսաների կամքն ու ցանկությունները, դրսևորել սովետական դեմոկրատիան իր բոլոր առանձնահատկություններով: Այդպիսի պետական միավորում ստեղծեց Սովետների Անդրկովկասի I համագումարը, որը բացվեց 1922 թ. դեկտեմբերին (Բաքվում):

Սահմանադրության համաձայն, ֆեդերալ միավորման բարձրագույն օրգանը դարձավ Անդրկովկասի սովետների համագումարը, իսկ համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում ղեկավարությունն իրականացնում էր Անդրկենտգործկոմը, որի կազմում հաշվվում էին 150 անդամ և 50 թեկնածու:

1923 թ. հունվարին ԱՍՖՍՀ Կենտրոնական գործադիր կոմիտեի առաջին սեսիան հաստատեց ԱՍՖՍՀ-ի գերբը, պետական դրոշը, ընտրեց Ժողկոմսովետ՝ կազմված նախագահից, 2 տեղակալից, 10 ժողովրդական կոմիսարներից:

Համագումարը միաձայն որոշեց մտնել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ, որի ստեղծման գործում նույնպես վճռական դերը պատկանում էր Վ. Ի. Լենինին:

1922 թ. դեկտեմբերի 30-ին սովետների համամիութենական համագումարն ստեղծեց Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, որի իրավահավասար անդամը դարձավ ԱՍՖՍՀ-ն:

Անդրկովկասի կոմունիստներն ընթանալով Լենինի ուղիով, Անդրֆեդերացիայի և նրան հաջորդող ժամանակաշրջանում ինտերնացիոնալ սկզբունքներով ամրապնդեցին ժողովուրդների բարեկամությունը, որի շնորհիվ մեծապես բարգավաճեց երկրամասը: Անցած հնգամյակների տարիներին Անդրկովկասը դարձավ Սովետական Միության ծաղկած երկրամասերից մեկը:

Անդրկովկասի ժողովուրդների տնտեսական համագործակցությունը, նրանց եղբայրական բարեկամությունն ավելի ամրապնդվեցին Հայրենական մեծ պատերազմի տարիներին: Նրանց ջանքերը գումարվեցին սովետական բազմազգ ժողովուրդների ջանքերին և ապահովեցին հաղթանակը թշնամու դեմ:

Հետպատերազմյան տարիներին շարունակելով պայքարը լենինյան ցուցումները մինչև վերջ կենսագործելու համար, Անդրկովկասի ժողովուրդները փայլուն հաջողություններ ձեռք բերեցին ժողովրդական տնտեսության և կուլտուրական շինարարության ասպարեզներում: Անդրկովկասյան սոցիալիստական հանրապետությունների արդյունաբերության համախառն արտադրանքը 1968 թ., 1940 թ. համեմատությամբ, աճեց մոտ 7,4 տոկոսով: Մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Անդրկովկասն առաջ է անցել այնպիսի երկրներից, ինչպիսիք են՝ Անգլիան, Ֆրանսիան, Իտալիան, Հոլանդիան և այլն: Վերջին տասնամյակում զգալի չափով ավելացել են փոխադարձ մատակարարումներն անդրկովկասյան հանրապետությունների միջև: Երեք հանրապետությունների բազմաթիվ գործարաններ, ֆաբրիկաներ, կոլտնտեսություններ ու սովխոզներ մտնելով սոցիալիստական մրցության մեջ, պատվով են կատարում կուսակցության XXIII համագումարի որոշումները:

Մեծ առաջնորդի ծննդյան հարյուրամյակի համաժողովրդական տոնի այս օրերին ինչպես Անդրկովկասի, այնպես էլ Սովետական Միության բոլոր ժողովուրդները հպարտությամբ են նայում այն մեծ վերափոխություններին, որ կատարվել են լենինյան ցուցումների կենսագործման ճանապարհին:

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ

Օ. Ս. ՉՈԲԱՆՅԱՆ

*Պատմական մեծ անցքերը, հասարակական հեղաշրջումները, բեկումնային շրջադարձերը կատարվում են աշխատավոր մասսաների ակտիվ մասնակցությամբ: Սակայն հասարակական ոչ մի շարժում մասսաների ընդգրկմամբ չի կարող հավասարվել սոցիալիստական հեղափոխությանը, որն իր բնույթով, առաջ քաշած խնդիրներով ժողովրդական հեղաշրջում է:*

*Պատմության կերտողը ժողովուրդն է, նա է նյութական ու հոգևոր արժեքներ ստեղծողը: Յուրաքանչյուր սերունդ գործում է որոշակի ժամանակահատվածում, լուծում իր առջև ծառացած խնդիրները: Լուծման կարոտ հասարակական կենսաթրթիռ հարցերը, անշուշտ, պատմական բնույթ ունեն և իրենց էությամբ օբյեկտիվ են: Դրանք բխում են արտադրաուժերի և արտադրահարաբերությունների բնույթից, դրանց զարգացման մակարդակից: Այստեղ խմորվող հակասությունները դրսևորվում են դասակարգային պայքարում, հեղափոխական զոտեմարտերում: Հեղափոխության փուլում առավել ակնառու ու որոշակի է դառնում դասակարգերի ու մյուս սոցիալական խմբերի դիրքորոշումը: Հեղափոխությունը որպես օբյեկտիվ օրինաչափություն, մասսայական շարժման բարձր արտահայտություն, առանց աշխատավոր դասակարգերի ակտիվ մասնակցության չի կարող իրականանալ:*

*Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հնարավորության լենինյան ուսմունքն իրական կյանքից բխող հետևություն էր, իրադարձությունների զգաստ վերլուծության եզրահանգում: Սոցիալիստական հեղափոխության հնարավորություններն իրականացնող ուժը Լենինը համարում էր աշխատավորական դասակարգերը, ամենից առաջ՝ պրոլետարիատը: Սոցիալիստական հեղափոխությունը հասարակական շարժման այն աստիճանն է, երբ աշխատավորական դասակարգերը ցուցաբերում են գործողությունների բարձր կազմակերպվածություն, նպատակների միասնություն: Աշխատավոր ժողովուրդը սոցիալիստական հեղաշրջումների ընթացքում դրսևորում է իր պոտենցիալ կարողությունները, ի հայտ բերում հասարակական-քաղաքական կառավարման ունակություններ, ստեղծագործաբար աշխատելու հնարանքներ: Մարմնավորելով սոցիալիստական հեղաշրջումների ողջ էներգիան, ժողովուրդը հանդես է գալիս որպես հեղափոխություն կատարող, սուբյեկտ:*

*Հեղափոխական պրոցեսի զարգացման սոցիալիստական փուլում աշխատավոր ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարման շնորհիվ, բարձրացնում է իր դասակարգային ինքնագիտակցությունը, դրսևորում հեռավողական գործողությունների պատրաստակամություն, հին ապրելակերպը բացասելու վճռականություն։*

*Կոմունիստական կուսակցությունը, որպես ամենաառաջավոր դասակարգի շահերի արտահայտող ու պայքարի առաջնորդ, ստանձնում է հեղափոխության հնարավորությունը իրականության վերածելու գործի ղեկավարությունը։ Նրա գլխավորած մասսայական շարժումը բացասում է այն թյուրըմբռնումը, թե ժողովուրդը պասիվ, իներտ ուժ է։*

*Մարդիկ գիտակցորեն կամ անգիտակցորեն են կերտում պատմությունը, որը նրանց պրակտիկ գործողությունների արդյունք է։ Գործողությունն իր բնույթով լինելով սուբյեկտիվ, վեր է ածվում օբյեկտիվ իրականության։ Այն ելակետ ու միջավայր է մարդկանց համար, ուր նրանց անհատական նպատակադրումներն իրականանում են նյութական անհրաժեշտ հարաբերությունների միջոցով ու ձևով։* Քաղաքատնտեսության քննադատության *շուրջ աշխատության առաջաբանում Մարքսը նշում է, որ հասարակական հարաբերություններում ու կապերում է արտահայտվում անհատների վերաբերմունքը միմյանց նկատմամբ։ Նրանց գործողություններից, համագործակցությունից ու փոխհարաբերություններից է ստեղծվում ու զարգանում պատմությունը, կոնկրետ ժամանակի մեջ դրսևորվում անհատի էությունը։*

*«Կոմունիստ տեսաբանները, այն քչերը, որոնք ժամանակ ունեն զբաղվելու պատմությամբ, ի դեպ, տարբերվում են հենց նրանով, որ միայն նրանք հայտնաբերեցին այն փաստը, թե ամենուր «ընդհանուր շահերը» ստեղծվում են անհատների կողմից, որոնք իրենց դրությամբ բնորոշ են որպես «մասնավոր անձեր»։ Նրանք դիտեին, որ այդ «հակադրությունը» միմիայն թվացող է, որովհետև նրա կողմերից մեկը, այսպես կոչված՝ «համընդհանուրը», մշտապես ծնվում է մյուսի կողմից, մասնավոր շահագրգռվածությունից և, որպես ինքնուրույն ուժ, բնավ չի հակադրվում վերջինին, որն ինքնուրույն պատմություն ունի,— այնպես որ այդ հակադրությունը* պրակտիկորեն *անընդհատ մեկ ոչնչանում է, մեկ նորից ծնվում»* (К. Маркс, Ф. Энгельс, Немецкая идеология, соч., т. 3, стр. 236).

*«Ընդհանուր շահը» գոյանում և գիտակցվում է անհատների կողմից։ Նրանք են մասնակցում այդ «համընդհանուրի» ինքնաճանաչման պրոցեսի արագացմանը։ Այստեղ էական է քաղաքական կուսակցությունների, մասնավորապես կոմունիստական կուսակցության դերը։ Լենինիզմը սովորեցնում է, որ պատմության առաջընթացի արագացումը հեղափոխական ժամանակամիջոցում պայմանավորվում է նրա սուբյեկտի ակտիվության բարձրացմամբ։ «Մասսան, որը միշտ գտնվում է ստվերում և այս պատճառով հաճախ անտեսվում կամ նույնիսկ արհամարհվում է մակերեսային դիտողների կողմից, քաղաքական բեմ է ելնում որպես ակտիվ մարտնչող» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատոր 8, էջ 115)։*

*Մասսաների գիտակցության, կազմակերպվածության ու վճռականության հասունացումը կատարվում է հեղափոխական կուսակցության ղեկավարությամբ, որը և՛ սովորեցնում է, և՛ սովորում։ Ինչպես պատմությունից հայտնի է, բոլշևիկները գիտակցում էին, որ մասսաներին զորավիգ դառնալու համար բարյացակամությունը բավական չէ, որ հեղափոխական կամքը տարերայնո-*



*րեն չի ձևավորվում։ Հեղափոխությանը ծառայել նշանակում է՝ հասկանալ աշխատավորների շահերը և պայքարել դրանց համար. միայն «սովորեցնելով» դժվար կլինի դառնալ առաջամարտիկի ավանգարդն ու կազմակերպիչը։*

*Մասսայական շարժումը դրսևորվում է հեղափոխության ժամանակ, այնտեղ ի հայտ են գալիս դասակարգերի շահերը, հարաբերությունը, պայքարի դիալեկտիկան։ «Մի՞թե դժվար է կռահել,— գրել է Լենինը,— որ ոչ մի բոլշևիկ աշխարհում ուժ չէր ունենա ոչ թե երեք, այլ մինչև իսկ մեկ «ժողովրդական շարժում» «առաջացնելու», եթե ամենախոր տնտեսական և քաղաքական պատճառները պրոլետարիատին շարժման մեջ չդնեին, որ ոչ մի տեսակ կադետներ ու միապետականներ միասին ուժ չէին ունենա ոչ մի շարժում առաջացնելու «աջից», եթե նույնքան խոր պատճառներ չստեղծեին բուրժուազիայի, որպես դասակարգի, հակահեղափոխությունը» (Երկեր, հատ. 25, էջ 208)։*

*Մարդկությունն իր առջև իրական խնդիրներ է դնում, որոնց լուծման նախադրյալներն արդեն առկա են։ Սակայն մասնավոր սեփականատիրական հասարակարգում, որը միասեռ չէ, շահերի «ընդհանրությունը» պարունակում է հակասություններ, տարամերժ տենդենցներ։*

*Բրարամերժ կողմերի անհաշտելի կռիվն է պայմանավորում հասարակության առաջընթացը, որտեղ գլխավոր դեր է խաղում առաջավոր դասակարգը։ Պրոգրեսն իրականացնող դասակարգն իր կնիքն է դնում դարաշրջանի վրա, ձգտում վերջնականապես հաստատել հասարակական նոր հարաբերությունները։ Պատմության թատերաբեմ ելած ուժերից միայն բանվոր դասակարգն է, որը ո՛չ միայն հռչակում, այլև ապահովում է աշխատավորական բոլոր խավերի ձգտումների իրականացումը։ Կոմունիստներն են այդ ամենի արտահայտիչներն ու կազմակերպիչները։*

*Պրոլետարական հեղափոխությունն իր ծավալով համապարփակ է և ընդգրկում է սոցիալական արմատական հարցեր, լուծում համազգային խնդիրներ։ Այն նպաստում է մասսաների քաղաքական ակտիվության զարգացմանը, ներգրավում նրանց քաղաքականության ոլորտը. աշխատավորական դասակարգերը և միջին խավերը դառնում են պրոլետարիատի դաշնակիցն ու օգնականը։*

*Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի միջազգային խորհրդակցության 1969 թ. հունիսի 17-ի ընդունված փաստաթղթում ընդգծված է, որ՝ «Խոշոր կապիտալը ոտնահարում է քաղաքի միջին խավերի մեծամասնության կենսական շահերը։ Ուստի, բնակչության միջին խավերի հոծ զանգվածները, չնայած իրենց շարքերում միասնության բացակայությանը և այն հանգամանքին, որ նրանք հեշտությամբ են ընկնում բուրժուական գաղափարախոսության ազդեցության տակ, հանդես են գալիս ի պաշտպանություն իրենց շահերի, ներգրավվում են համադեմոկրատական պահանջների համար մղվող պայքարում։ Նրանց շարքերում աճում է բանվոր դասակարգի հետ համատեղ գործողությունների կենսական անհրաժեշտության ըմբռնումը»* («Правда», *18* июня, *1969, № 169)։*

*Նման համատեղ գործողությունները հեղափոխական շարժման որոշակի ձև են, հասարակական պրոգրեսի յուրօրինակ արտահայտություն։ Այստեղ ավելորդ է դառնում ասել, որ պատմության սուբյեկտը ոչ թե հեգելյան ոգին է, այլ ժողովուրդը, որը շրջադարձային անցքերի ժամանակ համախմբվում է ու դառնում միասնական ուժ։ Պատմությունը բովանդակում է այն բոլորը, ինչ տեղի է ունենում հասարակական կյանքում. այստեղ հասարակական յու-*

Յուրաքանչյուր ուժ հնարավորությունների չափով իր լուման է ներդնում ընդհանուր գործում: Չնայած եղած պատահականություններին ու անակնկալներին, այն օրինաչափ պրոցես է:

Պատմության սուբյեկտը ո՛չ միայն կառուցում է ողջ հասարակության տնտեսական հիմքերը, այլև նախանշում նրա զարգացման ընթացքը: Եվ քանի որ զերծ չէ հնից, այն իր գործողությունները բխեցնում է նախորդ փորձից, դառնալով վերջինիս ժառանգորդը: Պատմության սուբյեկտը առաջ է շարժվում, ելնելով իրավիճակի ընձեռած հնարավորություններից: Ժողովրդի կենսագործունեությունը միանման չի ընթանում, այն փոխվում է նրա գոյավիճակի համապատասխան, մակընթացությունների և տեղատվությունների պայմաններում: Լենինը գրում է. «...միայն սեփական վիճակն անմիջապես և անհապաղ բարելավելու համար մղվող պայքարն է, որ ունակ է թափահարելու շահագործվող մասսայի հետամնաց խավերին, իրական դաստիարակություն է տալիս նրանց և— հեղափոխության դարաշրջանում— մի քանի ամսվա ընթացքում դարձնում է նրանց քաղաքական մարտիկների մի բանակ» (Երկեր, հատ. 23, էջ 319):

Տնտեսական ծայրագույն դժվարությունները և պատերազմը, փետրվարից հետո նյութված դավերը բավական էին, որպեսզի ժողովրդի «պասսիվ» մասը կողմնորոշվեր և հարեր հեղափոխությանը: Ժողովրդի քաղաքական հասունացումն ստիպում էր իշխող դասակարգերին հաշվի նստել ստեղծված իրավիճակի հետ, որն այդպես էլ չէին ուզում հասկանալ ժողովրդի «բարեկամները»: «Այդ «ստորին խավերը»,— նկատել է Լենինը,— իրենց հեգեմոնիայի կարճատև ժամանակաշրջաններում դաստիարակել են իրենց բուրժուազիային, վերափոխել են նրան այնպես, որ նա հետո աշխատել է ետ-ետ գնալ, բայց չի կարողացել այդ ընդգրկող շարժման մեջ ավելի հեռու գնալ, ասենք, երկրորդ պալատից Ֆրանսիայում, կամ ընտրությունների դեմոկրատիզմից արված նահանջներից և այլն, և այլն» (Երկեր, հատ. 17, էջ 252):

Որքան պարզ են նպատակները, այնքան դրանք ակնառու են պայքարի պրոցեսում: Դիմակայելով բուրժուազիային՝ որպես անմիջական ու գլխավոր հակառակորդ, պրոլետարիատն այդ հակամարտությունից հետևություններ է անում, դառնում ամենաառաջավոր և ամենամարտական դասակարգը ընդդեմ հնի: Անշուշտ, այս հանգամանքը չի ժխտում միջին դասակարգերի և առաջին հերթին չքավոր գյուղացիության հակվածությունը պրոգրեսին: Պրակտիկ պայքարից բխող դասերի մասին Լենինը գրում է՝ «Բայց բազմապատիկ գործադուլներում դաստիարակված պրոլետարները (եթե վերցնենք դասակարգային պայքարի միայն և միայն այս արտահայտությունը), սովորաբար հրաշալի կերպով յուրացնում են այն խորագույն (փիլիսոփայական, պատմական, քաղաքական, հոգեբանական) ճշմարտությունը, որը շարադրել է Էնգելսը» (Երկեր, հատ. 31, էջ 65—66):

Սեփական կաշվի վրա կրած դառնություններն անհետևանք չեն մնում աշխատավորների համար, ծանր հուսախաբությունը հերոսության նախապայման է դառնում: Ականատես լինելով կարմիրգվարդիականների հերոսությանը, հասկանալով կատարված հեղաշրջման էությունը, գեներալ Կրասնովը խոստովանել է. «Ա՜խ, եթե մենք այդպիսի բանակ ունենայինք ֆրոնտում, հաղթանակի կհասնեինք Գերմանիայի նկատմամբ...» («Правда», 7 ноября, 1923, № 253):

Սա միամիտ երեխայի թոթովանք չէր: Միապետության երդվյալ պաշտ-



պանի նման խոստովանությունը նշանակում էր, որ պատմության աղբակույտը նետված պարոնները չէին կարող չսարսափել հզորացող կարգերից՝ ժողովրդի իշխանությունից:

Այն, ինչ խոստովանում էին հեղափոխության թշնամիները, չէին հասկանում «բարեկամները»: Քննադատելով էսեռներին ու մենշևիկներին, Լենինը գրել է. «Մասսաներին չհավատալը, երկյուղ նրանց նախաձեռնությունից, երկյուղ նրանց ինքնուրույնությունից, սարսուռ նրանց հեղափոխական եռանդի հանդեպ, փոխանակ այն անձնվիրաբար ամեն կերպ պաշտպանելու,— ահա թե ինչի մեջ են ամենից ավելի մեղավոր էսեռական ու մենշևիկյան առաջնորդները» (Երկեր, հատ. 25, էջ 475): Չնայած մասսաները երբեմն նրանց լսում էին, հավատում, սակայն ամենից առաջ ապավինում էին սեփական փորձին ու դառը փորձով հասնում ստեղծված իրավիճակի բոլշևիկյան գնահատման: Կյանքը սովորեցնում էր, որ իրավունք կարելի է նվաճել ոչ թե խնդրանքով, այլ բռնությամբ: Մասսաների կողմից այս գաղափարի գիտակցումն աշխատավորության շրջանում հեղափոխական կուսակցության ամենօրյա աշխատանքի բովանդակությունն էր: Մասսաները, իհարկե, յուրովի սկսում էին գիտակցել, որ հեղափոխությունը օբյեկտիվ օրինաչափությունների ու նպատակասլաց գործողությունների արդյունք է, հասունացած կոնֆլիկտի լուծման միակ ելքը, որտեղ օբյեկտիվ նախադրյալները պայմանավորում են սուբյեկտիվ գործոնի դրսևորումը: Բոլշևիկները գիտակցում էին, որ աշխատավոր զանգվածների գործողությունների նպատակասլացության, վճռականության, կազմակերպվածության համար անհրաժեշտ է ոչ թե վախենալ ժողովրդի տարերքից, այլ գլխավորել այն, ուղղություն տալ, որպեսզի ուժերի մինիմում լարմամբ, մինիմում կորուստներով ապահովվի հաղթանակը:

Բռնի հեղափոխության և խաղաղ միջոցներով հեղաշրջում կատարելու գաղափարները բոլշևիկյան ստրատեգիայում ու տակտիկայում իրարամերժ սկզբունքներ չեն, դրանց կիրառումը կախված է գոյավորվող կոնկրետ սիտուացիայից: Պրոլետարական հեղափոխությունն ուղղված է ո՛չ միայն կալվածատերերի և կապիտալիստների դեմ, այլև անհարիր է միջին դասակարգերի հետ: Սակայն հեղափոխությունը պետք է լուծեր նաև բուրժուա-դեմոկրատական խնդիրներ: Միջին դասակարգերին ոչ թե ապազան (թեև չէր կարելի ասել, թե նրա նկատմամբ անտարբեր էին), այլ ներկան էր հուզում: Լենինը չէր անտեսում այդ երկվությունը, նա նկատում է. «Դուք շատ միամիտ եք, եթե կարծում եք, որ պրոլետարիատի հաղթանակի օրը ինտելիգենցիան, միջին դասակարգը, մանր բուրժուազիան կդառնան կոմունիստական» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 31, էջ 310): Հասարակության այդ դասակարգերն ու խավերը հեռու էին սոցիալիստական խնդիրներից, սակայն, դեմ էին միապետությանը, հետփետրվարյան ռեժիմին: Բոլշևիկյան ծրագիրն ավելի լայն էր, քան զուտ պրոլետարականը. հասունացող Հոկտեմբերյան հեղափոխությունը իրականացնելու էր ո՛չ միայն սոցիալիստական, այլև բուրժուա-դեմոկրատական բնույթի պրոբլեմներ: Կյանքի անկանխակալ ուսումնասիրությունը Լենինին հանգեցրեց այն եզրակացության, որ «...պրոլետարիատը, մեկուսացած ոչ միայն երկրի մյուս դասակարգերից, այլև դեմոկրատիայի իսկական կենդանի ուժերից, չի կարող ո՛չ տեխնիկապես տիրապետել պետական ապարատին և բացառիկ բարդ պայմաններում շարժման մեջ դնել այն, ո՛չ էլ քաղաքականապես ընդունակ կլինի դիմադրելու թշնամական ուժերի այն ամբողջ ճնշմանը, որը երկրի երեսից կսրբի ոչ միայն պրոլետարիատի դիկտատուրան, այլև դրան

ավելացրած՝ ամբողջ հեղափոխությունը (Երկեր, հատ. 26, էջ 95)։

Այստեղից հետևում է, որ ոչ միայն պրոլետարիատի համար իրական չէին առանց գյուղացիության հեղափոխության հաստնացումն ու նվաճումները պաշտպանությունը, այլև ինքը հեղափոխությունը, որ Ռուսաստանում առանց այդ դասակարգերի միասնական կամքի խմորման, որպես օբյեկտիվ իրավիճակի արտահայտություն, չէր կարող հաղթանակել։

Այսպիսով, փետրվարյան հեղափոխությունը ոչ թե շղթայից դուրս մեկուսացված օղակ էր, այլ պերմանենտ հեղափոխության սկիզբը, որը զարգացման որոշակի փուլում թևակոխեց նոր, սոցիալիստական փուլը։ Չնայած փետրվարը կատարվեց բուրժուազիայի մասնակցությամբ, նրա հիմնական շարժիչ ուժը ժողովուրդն էր, որի գործողություններն ու նպատակները դուրս էին գալիս տվյալ հեղափոխության շրջանակներից։ Անկախ այն բանից, թե քանի ամիս իշխեց բուրժուազիան, փետրվարյան հեղափոխությունը Ռուսաստանի պրոլետարիատի մեծագույն հաղթանակն էր, ինչպես ցարիզմի, այնպես էլ կալվածատերերի դեմ։

Լենինյան կուսակցությունը երբեք պառակտողական-սեպարատիստական վարքագիծ չի ցուցաբերել միջին դասակարգերի, նրանց կուսակցությունների նկատմամբ։ Հակառակ դրան, սոցիալ-դեմոկրատիայի մենշևիկյան հոսանքը, կառչած մնալով իր հնացած դոկտրիններից, իրականում լքեց նաև հեղափոխությանը։ Բոլշևիկների ստրատեգիան չէր հակադրվում ժողովրդի մեծամասնության շահերին, համընկնում էր վերջինիս տակտիկական գծին։ Նման կուրսը հիմնված էր հեղափոխության սուբյեկտի, նրա առաջավոր դասակարգի դերի ճիշտ գնահատման վրա։ Լենինն ապացուցեց, որ անհաշտվողականությունը բոլշևիկներին չդրդեց զինված ապստամբության, նույնիսկ դեմոկրատիայի մեծամասնության ստրատեգիան չէր կարող բլանկիզմի դրսևորման պատճառ դառնալ։ Բոլշևիկներն իշխանության ձգտել չէին կարող, մինչև չհամոզվեին, որ ժողովրդի մեծամասնությունն առնվազն բարյացակամ է իրենց հանդեպ ու վստահում է պրոլետարիատին։ Այս հետևությունը հեղափոխության սուբյեկտիվ դերի և հնարավորությունների օբյեկտիվ գնահատումն է։ «Գյուղացիական հետամնաց երկրի պայմաններում,— գրում է Մ. Կամարին,— Ռուսաստանի բանվոր դասակարգը ցույց տվեց, որ պրոլետարիատի ուժը և դերը հասարակական կյանքում բնորոշվում է ոչ թե նրանով, թե նա արդյոք հանդիսանում է երկրի ժողովրդական մեծամասնությունը, այլ նրա հեղափոխական եռանդով, քաղաքական գիտակցությամբ, ժողովրդի հեղափոխական պայքարը ղեկավարելու կարողությամբ և որպես դաշնակից՝ գյուղացիական մասսաներին հեղափոխության կողմը գրավելու կարողությամբ» (М. Каммари. Пятьдесять лет первой русской революции, тезисы. 1955, стр. 14)։

Հեղափոխությունը, ամեն ինչից բացի, նաև մեծ արվեստ է, հասարակական ուժերի պոտենցիալ կարողությունների դրսևորման ասպարեզ։ «...մարդկային հասարակությունը,— գրել է Լենինը,— այնպես խելացի ու այնպես «հարմար» չի կառուցված առաջավոր տարրերի համար։ Հեղաշրջումը կարող է հասունանալ, իսկ այդ հեղաշրջման հեղափոխական ստեղծիչների ուժը կարող է անբավարար լինել այդ հեղաշրջումը կատարելու համար...» (Երկեր, հատ. 9, էջ 469)։ Ռուսական իրականությունն ուներ իր առանձնահատկությունները, և բոլշևիկները չէին կարող այն հաշվի չառնել։

Այն հանգամանքը, որ հաճախ «ճարպիկ քաղաքագետներին» հաջողվել է իրենց կամքը «թելադրել» ամբոխին, երբեք դեռ ապացույց չէ, որ ժողովրդական մասսաներն անհաղորդ են սոցիալական անցքերին, բեկումնային իրադարձություններին։ Ճիշտ է, դավադրությունների ժամանակ նման հնարավորություններ ստեղծվում են. այդ են վկայում պատմական փաստերը, բայց այլ բան է հեղափոխությունը։

Ժողովրդի պասսիվության, ինտենսիվության մասին բնութագրումները զրպարտություն են, բացահայտ կեղծիք։ Սակայն առանձին արկածախնդիր ուժերի հաջողվում է որոշ ժամանակ շեղել ժողովրդական զանգվածների ուշադրությունը սոցիալական արմատական խնդիրներից, պառակտել նրանց։ Որպեսզի ժողովուրդն իր կամքը թելադրի, նախ պետք է միասնական դառնա, հաղթահարի անկազմակերպվածությունը, տարբերայնությունը, համախմբվի քաղաքական ավանգարդի շուրջը։

Զուրկ լինելով իրականության ողջախոհ վերլուծությունից, էսեռա-մենշևիկյան անհեռատես տեսաբանները չհասկացան դեպքերի եղելությունը, արհամարհական, աղայական վերաբերմունք ցուցաբերեցին մասսաների նկատմամբ, զլորվեցին քաղաքական ասպարեզից, իջան սնանկների ճահիճը։ Չունենալով կայուն սկզբունքներ, նրանք մասսաների ուշադրությունը գամում էին աննշան երևույթների վրա, տուրք տալով վոլյունտարիզմին։ Իրենց, այսպես կոչված՝ սոցիալական էքսպերիմենտի ժամանակ թույլ տրված սխալները փորձում էին վերագրել «խուժան ամբոխի ոգիտությանը»։ Այս էր մենշևիկյան-էսեռական լիդերների՝ մասսաների հանդեպ ունեցած հավատամքը, որն անփառունակ վախճան ապրեց։ Փետրվարից հետո նրանք դեռ այն կարծիքին էին, թե ամբոխին, իր իսկ երջանկության համար, հարկավոր է խելքի բերել։ Նրա նկատմամբ կիրառում էին ամենառեակցիոն միջոցները, բռնանում նույնիսկ այն ազատությունների վրա, որպիսիք մասսաները ձեռք էին բերել փետրվարին։

Մասսաներին վերևից նայելու արհամարհական կեցվածքը, որն ընդունել էին էսեռա-մենշևիկյան քարոզիչները, անհետևանք չմնաց. աշխատավորները վերջնականապես երես թեքեցին նրանցից։ Կտրվելով ժողովրդից, նրանք փաստորեն հեռացան քաղաքական ասպարեզից։ Իսկ նրանց «գործնական» քայլերը վաղուց արդեն չէին առնչվում ժողովրդի շահերի և կենսական խնդիրների հետ։ Ահա այն հանգամանքը, որը մենշևիկների ու էսեռների իշխանության արդյունքն էր հետփետրվարյան շրջանում։

Քաղաքական իրադարձությունների վճռական պահին «...ժողովուրդն իրավունք ունի և պարտավոր է նման հարցերը լուծել ոչ թե քվեարկություններով, այլ ուժով. ժողովուրդն իրավունք ունի և պարտավոր է հեղափոխության կրիտիկական մոմենտներին ուղղություն տալ իր ներկայացուցիչներին, անգամ իր լավագույն ներկայացուցիչներին և ոչ թե սպասել նրանց» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 26, էջ 279)։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նախապատրաստման և անցկացման շրջանում բոլշևիկները գլխավորեցին աշխատավորական զանգվածների շարժումը, ապահովեցին նրանց գրոհը հին աշխարհի խորտակման և բանվորա-գյուղացիական իշխանության հաստատման համար։

Սոցիալիստական հեղափոխությունների ժողովրդայնության նոր արտահայտություն են ժամանակակից աշխարհում տեղի ունեցող հեղափոխական պրոցեսները, որոնց մայրուղին սոցիալիզմն է։

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՄԵԾ ԽԻԶԱԽՈՒՄՆԵՐԻ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ


Գ. Ա. ՀԱՅՐՅԱՆ

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր կինեմատոգրաֆիայի պետական կոմիտեի նախագահ


*Սովետական իշխանությունը դեռ չէր բոլորել իր գոյության երկրորդ տարին, դեռ չէր դադարել քաղաքացիական կռիվների աղմուկը, երբ Վ. Ի. Լենինի գլխավորած ժողովրդական կոմիսարների խորհուրդն ընդունեց իր հերթական կարևոր որոշումներից մեկը— Լուսանկարչական կինեմատոգրաֆիական առևտուրն ու արդյունաբերությունն ազգայնացնելու մասին դեկրետը։ Դրանով ո՛չ միայն գոյության իրավունք, այլև զարգացման լայն հնարավորություն ստացավ սովետական կինոարվեստը, որին բախտ էր վիճակված հսկայական դեր խաղալու ժողովրդական մասսաների հոգևոր կյանքում, դառնալու նրանց կոմունիստական դաստիարակության հզոր գործոններից մեկը։*

*Համարձակ կարելի է ասել, որ արվեստի մի այլ տեսակ (գեղարվեստական գրականություն, կերպարվեստ, երաժշտություն) իր աշխարհ գալուց կես դար անց այնքան բեղմնավոր ճանապարհ չի անցել, որքան կինոարվեստը։ Դա պետք է բացատրել նրանով, որ արվեստի այդ նոր տեսակը ծնվեց պատմական այլ իրադրության մեջ, հենվելով, մի կողմից՝ զարգացման բարձր աստիճանի վրա կանգնած արվեստների, հատկապես գեղարվեստական գրականության մեծ նվաճումների, մյուս կողմից՝ գիտության ու տեխնիկայի նոր հայտնագործությունների վրա։ Այդ հանգամանքը հիմք է տալիս ասելու, որ կինոարվեստն իր էությամբ սինթետիկ է, որի գոյության կարևոր պայմաններից են՝ խոսքն ու պատկերը, հնչյունն ու տեխնիկան։*

* Չհասկանալով կինոարվեստի այս կարևոր առանձնահատկությունը, նրա զարգացման վաղ շրջանում որոշ տեսաբաններ հանգել են սխալ եզրակացության, հայտարարելով, թե կինոն չի կարելի ինքնուրույն արվեստ համարել, թե այն մյուս արվեստների կցորդն է, կամ, լավագույն դեպքում՝ դրանց պատճենը։ Մինչդեռ կյանքը ցույց տվեց, որ կինոարվեստը, ձուլվելով մյուս արվեստներին, ո՛չ միայն չկորցրեց իր ինքնուրույնությունը, այլ հակառակը, ձեռք բերեց նոր որակ, Դ. Դեմիրճյանի խոսքերով ասած՝ «...կարծես երկաթը փոխվեց պողպատի՝ կորցնելով հին հատկությունը»։*



*Կինոարվեստի նշանակության ու դերի սխալ ըմբռնումը, անշուշտ, դանդաղեցրեց կինոյի զարգացման ընթացքը ցարական Ռուսաստանում։ Պատահական չէ, որ ցարական կառավարությունը, կինոյի հնարավորությունները ժողովրդի լուսավորության ու դաստիարակության գործին ի սպաս դնելու փոխարեն, բացահայտ պայքար էր մղում նրա դեմ, հայտարարելով, թե կինոթատրոնները հրդեհի առաջացման օջախ են, թե ցուցադրումները վնասում են տեսողությանը, նույնիսկ կուրացնում դիտողներին։ Պարզ է, որ այս մտածելակերպն ամենից առաջ տգիտության, այդ արվեստի զարգացման հեռանկարը չտեսնելու արդյունք էր, մտքով կույրերի հորինվածք։ Բանն այն է, որ այսպես էին մտածում ո՛չ միայն տնաբույս կինոտեսաբանները, այլև՝ ռուսաց թագավորը։ Կինոարվեստի մասին ստացված մի զեկուցագրի վրա Նիկոլայ II-ը մակագրել է.* «Ես գտնում եմ, որ բոլոր այդ իլյուզիոնները դատարկ, անպետք զվարճություններ են։ Միայն աննորմալ մարդը կարող է այդ խեղկատակային զբաղմունքը դնել արվեստի կողքին։ Այդ ամենը հիմարություն է, և պետք չէ նման դատարկաբանություններին որևէ նշանակություն տալ»։

*Ի դեպ, այժմ էլ, մի փոքր այլ ձևով, գրեթե նույնն են ասում չինական դոգմատիկները։ Չինական թերթերից մեկը վերջերս գրել է. «Պետք է կտրել բոլոր այն գլուխները, որոնք խոսում են կինոնկարների գեղարվեստականության մասին։ Մեր գլխավոր խնդիրն է՝ էկրանները դարձնել մեծ առաջնորդի՝ Մաո Ցզե-դունի խոսափողը, քանի որ նա բոլոր արևներից ամենապայծառն է և երբեք չպետք է իջնի էկրաններից»։*

*Բարեբախտաբար ռուսական հասարակության առաջավոր մասը չէր բաժանում ո՛չ թագավորի և ո՛չ նրա անհեռատես խորհրդատուների կարծիքը։ Առաջադեմ մտավորականությունը, շրջապատի համընդհանուր խավարի մեջ, կանխագուշակում էր արվեստի նոր ճյուղի փայլուն ապագան։ Վ. Ի. Լենինը, Ա. Վ. Լունաչարսկու վկայությամբ, դեռ 1917 թ., բացահայտելով կինոյի հասարակական դերը, նշում էր, որ սոցիալիստական կուլտուրայի գործիչների ձեռքում այն կդառնա մասսաների լուսավորման հզոր միջոցներից մեկը։*

*Այդպես էլ եղավ։ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո, կոմունիստական կուսակցության, սովետական կառավարության և մեծ Լենինի եռանդուն ջանքերով կինոարվեստը ևս դարձավ բանվորական գործի անբաժան մասը և ամբողջովին ի սպաս դրվեց նոր կյանքի կառուցման, նոր մարդու հոգևոր կերպարի ձևավորման գործին։*

*Չափազանց կարճ տևեց սովետական կինոարվեստի մանկությունը։ Շատ չանցած երևան եկան նրա առաջին դասական գործերը՝ Ս. Էյզենշտեյնի* Զրահակիր Պոտյոմկինը *և Վ. Պուդովկինի* Մայրը։ *Այդ ստեղծագործություններում գեղարվեստական մեծ ուժով բացահայտվեցին հեղափոխության անմոռաց օրերի հերոսականությունը, աշխատավոր մասսաների պայքարի խոր իմաստն ու նրանց դերը պատմության մեջ։ Պատահական չէ, որ քառասուն տարի անց սովետական կինոարվեստի (և ո՛չ միայն կինոարվեստի) գոյությունը ժխտող միջազգային քննադատությունն ստիպված էր* Զրահակիր Պոտյոմկինը *հռչակել որպես «բոլոր ժամանակների ու ժողովուրդների լավագույն ֆիլմ»։*

*Առաջին հաջողությունները չհանգստացրին մեր կինոգործիչներին, ընդհակառակը, դրանք հիմք դարձան ստեղծագործական նոր խիզախումների համար։ Հատկապես այն բանից հետո, երբ հայտնագործվեց հնչունային կինոն, ինչպես ասում են՝ խոսեց «մեծ համրը», էկրան բարձրացան նոր կինոնկարներ, որտեղ, նորոգ կյանքի վերարտադրության հետ մեկտեղ, նորից կարևոր*

տեղ էր հատկացվում հեղափոխության թեմային։ Հենց այդ շրջանում ստեղծվեց սովետական կինոարվեստի պսակը— Վասիլև եղբայրների Չապաևը։ Այդ ֆիլմի ծնունդը մեծ իրադարձություն էր ո՛չ միայն կինոյի, այլև սոցիալիստական ռեալիզմի սկզբունքներով զարգացող արվեստի բոլոր տեսակների, մեր ողջ կուլտուրայի համար։ Չապաև ֆիլմում խոր ու համոզիչ բացահայտված էին կուսակցության և ժողովրդի անխզելի կապը, նրանց հոգեհարազատությունը, լենինյան անմահ գաղափարների կենսական ուժը։ Չապաևին հաջորդող տարիներին սովետական կինոարվեստն զգալիորեն ընդարձակեց իր թեմատիկ ընդգրկման սահմանները, դարձավ առավել բազմաժանր, տալով հասունության նորանոր ապացույցներ։

Սովետական կինոյի փայլուն նվաճումներից են պատմական թեմաներով ստեղծված ֆիլմերը, որոնց մեջ բոլորովին նոր ձևով են ներկայացվում անցյալի իրադարձությունները, մարդկանց արարքները, ձգտելով անցյալը ծառայեցնել ներկային, «հներին» մասնակից դարձնել մեր պայքարին և «նորացնել» նրանց։ Այդ ստեղծագործությունները մեծ չափով նպաստեցին ժողովրդին հայրենասիրական զգացմունքներով դաստիարակելու գործին, որը կարևոր նշանակություն ունեցավ թե՛ խաղաղ շինարարության, թե՛, մանավանդ, Հայրենիքի վրա կախված ահեղ վտանգի՝ Հայրենական մեծ պատերազմի տարիներին։

Մեզ համար առանձնապես թանկ է ու արժեքավոր կինոլենինիանայի ստեղծումը, որը հնարավորություն է տալիս ավելի խոր ըմբռնելու Լենինգործչի, Լենին-մարդու գործի վեհությունը, նրա մարդկային չխամրող հմայքն ու բարձր հատկությունները։

Հայրենական պատերազմի տարիներին մեծ վնաս կրեց նաև կինոարտադրությունը։ Եվ, չնայած դրան, մեր կինոգործիչներն իրենց ուժն ու տաղանդը, իսկ որոշ դեպքերում ամենաթանկը՝ կյանքը, նվիրաբերեցին հաղթանակի գործին։ Այդ տարիներին հատկապես անգնահատելի աշխատանք կատարեցին մեր կինոդոկումենտալիստները։ Նրանք դառնալով սովետական զորամասերի անբաժան ուղեկիցները, նրանց հետ քայլեցին մինչև Բեռլին, ժապավենի վրա դրոշմելով կռվող մարտիկների քաջագործությունները։

Սովետական կինոարվեստը նոր հաջողությունների հասավ հետպատերազմյան տարիներին։ Պայքարելով իր գլխավոր խնդրի՝ սովետական իրականության, մեր ժամանակակցի լիարժեք կերպարի ստեղծման համար, այն հարստացավ նոր թեմաներով։ Այդ շրջանի շատ կինոնկարներ աչքի են ընկնում կյանքի բարդ երևույթների նկատմամբ ցուցաբերած լրջախոհությամբ, մարդու ներաշխարհի գաղտնարանները թափանցելու համարձակ փորձերով, կոմունիստական իդեալների հաստատման գործում անհատի և հասարակության առջև ծառացած բարոյա-էթիկական պրոբլեմների լուսաբանմամբ։ Սակայն չի կարելի թաքցնել, որ ժամանակակից կյանքը պատկերող ֆիլմերի մեջ եղան նաև այնպիսիները, որոնցում պակասում էր գաղափարական հրատակությունը, ակնհայտորեն տուրք էր տրվում Արևմուտքից փոխառած մոդայիկ ճամարտակություններին, ապահերոսացման անփառունակ տեսությանը։ Պարզ է, որ այդ երևույթների կողքից չէր կարող լռելյայն անցնել կուսակցությունը և նրա հետ մեկտեղ՝ ամբողջ հասարակայնությունը։

Գաղափարական սուր պայքարի բարդ իրադրության մեջ սովետական արվեստագետը չի կարող կանգնել խախուտ դիրքերում։ Նրա առաջնահերթ պարտքն է՝ բարձր պատասխանատվությամբ վերաբերվել սեփական ստեղ-



ծագործությանը, համարձակ ծառանալ բուրժուական գաղափարախոսության դեմ, ամենուր հաստատելով սոցիալիստական նոր աշխարհի առավելությունները։

Սովետական կինոարվեստի գլխավոր առանձնահատկություններից մեկը նրա բազմազգ լինելն է։ Յուրաքանչյուր ազգային հանրապետություն ունի իր կինոարվեստը, որը զարգացել ու զարգանում է ուրույն ճանապարհով, դրսևորելով սեփական ժողովրդի կյանքի առանձնահատկությունը, նրա անցյալը, ներկան, ապագայի երազանքները։ Այդ արվեստն ազգային ինքնատիպության պահպանման ու զարգացման հետ մեկտեղ և դրանց միջոցով իր արժանի ավանդն է մուծում սոցիալիստական ընդհանուր կուլտուրայի գանձարանը։ Սովետահայ կինոարվեստը նույնպես սոցիալիստական հեղափոխության ծնունդ է և զարգացել է նույն օրինաչափություններով, ինչ օրինաչափություններով զարգացել ու զարգանում է եղբայրական մյուս ժողովուրդների կինոարվեստը։

Սովետահայ կինոարվեստը ծնվեց ու հասակ առավ մեր նոր կյանքի հետ միասին։ Մեր առաջին կինոգործիչներն իրենց առաջին քայլերն սկսեցին երկրում կատարվող առաջին վերափոխումների՝ առաջին ջրանցքների, առաջին գործարանների, առաջին դպրոցների կառուցման աշխատանքը վերարտադրելուց։ Այն ժամանակ հենց նոր ծնված կինոարվեստը դեռ մանկան պես լուռ էր, բայց դա այնպիսի լռություն էր, որի մեջ դժվար չէր լսել նրա ստեղծողների սրտի տրոփյունը, հոգու ջերմությունը։

Այդ դեռ չխոսող, համր կինոյի առաջին հաջողությունը, ինչպես գիտեք, Նամուսն էր։ Ուրիշից փոխառած այդ բառը, որ վաղուց դարձել է մեր ժողովրդական լեզվի սեփականությունը, մեծ խորհուրդ ուներ իր մեջ։ Հայաստանի կինոարվեստը, հիրավի, նամուսով սկսեց իր առաջին քայլերը, նամուսով անցավ իր տասնամյակների ուղին և նամուսով շարունակում է առաջ ընթանալ։

Ավելի քան չորս և կես տասնամյակներում Հայկինոն ստեղծել է մոտ 100 գեղարվեստական լիամետրաժ կինոնկար, ավելի քան 1.500 կինոակնարկ և ժուռնալ։ Այդ ստեղծագործություններից մի քանիսը դարձել են դասական ստեղծագործություններ, հարստացնելով սովետական կինոարվեստի ոսկե ֆոնդը։ Դրանցից շատերը քաջ զինվորի նման ընկան մեծ կինոարվեստի ստեղծման համար մղվող պայքարում, ճանապարհ հարթելով իրենց հետնորդների համար։ Եվ, երևի, այլ կերպ չէր էլ կարող լինել։ Չէ՞ որ զինվորի արձակած ոչ բոլոր գնդակներն են անվրեպ։ Նշանակետին չհասած կրակոցները ևս իրենց հերթին նպաստում են կռվի ընդհանուր մթնոլորտի ստեղծմանը, նույնիսկ հաղթանակին։

Մեր կինոդիտողները ջերմությամբ ընդունեցին Նամուսը, Գիքորը, Պեպոն, Զանգեզուրը, Դավիթ Բեկը, Պատվի համարը, Տերտերի ուխտը, Տժվժիկը, Հյուսիսային ծիածանը, Անձամբ ճանաչում եմ և Արտակարգ հանձնարարությունը, Բարև, ես եմ, Եռանկյունին, Սարոյան եղբայրները, Կարինեն, դոկումենտալ կինոնկարներից՝ Երկիր հայրենին, Մարտիրոս Սարյանը, Յոթ երգ Հայաստանի մասին և մի շարք այլ գործեր։ Չի կարելի չնշել, որ այս վերջին երեք ֆիլմերի ստեղծման գործում իրենց արժանի ավանդն են մուծել այնպիսի անվանի մարդիկ, ինչպիսիք են՝ Ա. Դովժենկոն, Ի. Էրենբուրգը և հայ տաղանդավոր բանաստեղծ և հրապարակախոս Գևորգ Էմինը։

Վերևը նշված ստեղծագործություններն աչքի են ընկնում գաղափարա-

գեղարվեստական բարձր արժանիքներով, կյանքի երևույթների ճշմարտացի վերարտադրությամբ, արվեստի ազգային հատկանիշների խոր ըմբռնմամբ, հերոսների վարքագծի, արարքների հավաստիությամբ ու անմիջականությամբ, նրանց ներաշխարհի խոր դրսևորումներով։ Պատահական չէ, որ այդ ֆիլմերից շատերը մրցանակներ են շահել երկրում կազմակերպված կինոփեստիվալներում, արժանացել մամուլի և բազմամիլիոն հանդիսատեսների գրվատանքին։

Ամեն անգամ, երբ խոսք է լինում սովետահայ կինոարվեստի մասին, անկարելի է չհիշել մեր ժամանակի խոշորագույն ռեժիսորներից մեկին՝ Համո Բեկնազարյանին։ Բեկնազարյանն իրավամբ համարվում է սովետահայ կինոյի հիմնադիր. Նրա անվան հետ են կապված այդ բնագավառի ամենանշանավոր ստեղծագործությունները։ Նրա կատարած գործն իր նշանակությամբ կարող է համեմատվել այն բանի հետ, ինչ արեց սովետահայ գրականության համար հեղափոխության հանճարեղ երգիչ Եղիշե Չարենցը։

Բեկնազարյանի գլխավոր ծառայություններից մեկն էլ այն է, որ նա դաստիարակեց, ստեղծագործական լայն ճանապարհ դուրս բերեց բազմաթիվ կինոգործիչների, ինչպես Հայաստանում, այնպես էլ անդրկովկասյան մյուս երկու եղբայրական հանրապետություններում։ Այդ կինոգործիչները բարձր են գնահատում իրենց մեծ ուսուցչի պայծառ անունը, նրա մեծ վաստակը, շարունակում սրբությամբ կատարել Բեկնազարյանի ավանդները, ձգտելով նոր ստեղծագործություններով բազմապատկել հայ կինոարվեստի փառքը։ Այդ կինոգործիչների անունները լայնորեն հայտնի են մեր հանդիսատեսին. Նրանք տարբեր տարիքի մարդիկ են, որպես ստեղծագործողներ հանդես են եկել տարբեր շրջաններում, բայց նրանցից յուրաքանչյուրը համակված ազգային կինոարվեստի զարգացման շահերով, ձգտում է ստեղծել իր ինքնատիպ ոճը, խոսել իր լեզվով։ Ով չի ճանաչում հայ կինոարվեստի ստեղծման, ձևավորման ու զարգացման գործում անզուգական ծառայություններ մատուցած այնպիսի վարպետների, ինչպիսիք են՝ Համասի Մարտիրոսյանն ու Արտաշես Հայ-Արտյանը. Թե՛ մեկը, թե՛ մյուսը ուշադրության արժանի աշխատանք են կատարել հայ գրականության դասական երկերի էկրանավորման, ինչպես նաև այլ թեմաներով բարձրարժեք կինոնկարներ ստեղծելու գործում։

Կինոստեղծագործության գնահատման կարևոր չափանիշներից է հանդիսատեսի ցուցաբերած հետաքրքրասիրությունը։ Այդ տեսակետից իրենց հավասարը չունեն Հայկինոյի նշանավոր ռեժիսորներ Ս. Կևորկովի և Է. Մելիք-Քարամյանի Անձամբ ճանաչում եմ և Արտակարգ հանձնարարություն ֆիլմերը։ Բավական է ասել, որ այդ ֆիլմերը թողարկման հենց առաջին տարում դիտեցին ավելի քան 70 միլիոն մարդ։ Դրանք մեծ հաջողություն ունեցան ինչպես մեր երկրի, այնպես էլ արտասահմանյան կինոդիտողների շրջանում։ Այդ ստեղծագործությունների հեղինակներին հաջողվել է կինոլեզվի միջոցով ծանրակշիռ խոսք ասել հեղափոխության անմոռաց օրերի մասին, վերակենդանացնել հեղափոխության լեգենդար հերոսներից մեկին՝ Կամոյին։

Ս. Կևորկովն ու Է. Մելիք-Քարամյանը ավարտել և հանդիսատեսի դատին են հանձնել իրենց Պայթյուն կեսգիշերից հետո ֆիլմը, ուր վերարտադրված է հայ ժողովրդի մի այլ հերոս զավակի՝ Գևորգ Աթարբեկյանի կերպարը։ Նրանք նախապատրաստվում են էկրան հանել Կամոյի կյանքի ավելի ուշ շրջաններից մեկը, որտեղ ցույց կտրվեն այդ հերոսի նոր, ոչ պակաս հետաքրքրական սխրանքները։



Ավագ սերնդի հետ ձեռք-ձեռքի, եռանդուն աշխատանք են կատարում ավելի երիտասարդները, որոնց մեջ վերջին տարիներին ստեղծած իրենց փայլուն ստեղծագործություններով առանձնապես աչքի են ընկնում Ֆրունզե Դովլաթյանն ու Հենրիկ Մալյանը։ Այս հեղինակների գործերն ամենից առաջ գերում են իրենց ինքնատիպությամբ, ազգային արվեստի նրբերանգների ճիշտ դրսևորումներով, հերոսների փոխհարաբերությունների ազնվությամբ ու անմիջականությամբ։

Մենք հավատացած ենք, որ այս հեղինակները Բարև, ես եմ, Եռանկյունի և Սարոյան եղբայրներ ֆիլմերից հետո մեզ կուրախացնեն իրենց նոր, առավել հաջողված ստեղծագործություններով։

Կինոարվեստի զարգացման գործում կարևոր տեղ է գրավում դոկումենտալիստների աշխատանքը։ Այս ժանրն ունի իր առանձնահատկությունները. անհամեմատ «արագաշարժ» է, այդ պատճառով կարողանում է արձագանքել օրվա պահանջներին, ժապավենի վրա դրոշմել մեր կյանքում կատարվող կարևոր իրադարձությունները։ Սակայն, արձանագրելով փաստը, այն, հատկապես վերջին տարիներին, ձգտում է դուրս գալ փաստի գերությունից, փորձում ընդհանրացումներ կատարել, շարժական լուսանկարչությունից վերածվում արվեստի։ Այդ հանգամանքը հնարավորություն է տալիս հին ձևով աշխատող մեր դոկումենտալիստներին՝ փոխելու իրենց աշխատանքի ոճը, վերակառուցվելու։ Հատկանշական է, որ վերջերս նրանց շարքերը համալրվում են գեղարվեստական կինոարտադրության բնագավառում աշխատող ռեժիսորներով։ Եվ, պետք է ասել, որ այդ կարգի փոխադրումները, որպես կանոն, լավ արդյունք են տալիս։ Հեռու չգնալու համար կարելի է բերել ռեժիսոր Գ. Մելիք-Ավագյանի օրինակը։ Վերջին երկու տարիներում նրա ստեղծած դոկումենտալ ֆիլմերը, հատկապես Յոթ երգ Հայաստանի մասին ֆիլմը ցույց է տալիս, թե ինչպիսի հնարավորություն ունի դոկումենտալ կինոն, եթե այն ստեղծողները առավել լուրջ վերաբերմունք են դրսևորում ձեռնարկված գործի նկատմամբ, վճռականապես հրաժարվում են վաղուց արդեն ձանձրալի դարձած միօրինակությունից և ղեկավարվում արվեստին ներկայացվող բարձր պահանջներով։

Ուշադրության արժանի են նաև Երևանի փաստագրական-վավերագրական ստուդիայի՝ վերջին տարիներին էկրան հանած կինոակնարկները, որոնք ստեղծվել են Լ. Իսահակյանի, Գ. Բալասանյանի, Գ. Արամյանի, Դ. Քեսայանի, Ռ. Ֆրանգուլյանի և ուրիշների ջանքերով։

Հայ կինոգործիչներն իրենց գործունեության մեջ զգացել են Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի և հանրապետության կառավարության մշտական հոգատարությունը։ Այդ հոգատարության արտահայտություններից մեկն էլ ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության վերջերս ընդունած հրամանագրերն են, որոնցով Երևանի Համո Բեկնազարյանի անվան «Հայֆիլմ» կինոստուդիան և Երևանի ժամանակագրական-փաստագրական ֆիլմերի ստուդիան պարգևատրվել են Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի պատվոգրով։ Գերագույն սովետի մի այլ հրամանագրով Հայկական ՍՍՀ ժողովրդական արտիստի պատվավոր կոչում է շնորհվել կինոդերասան Խորեն Բաբկենի Աբրահամյանին և կինոռեժիսոր Ֆրունզե Վաղինակի Դովլաթյանին։

Կասկած չկա, որ այդ հոգատարությանը մեր կինոաշխատողները կպա-

տասխանեն կոնկրետ գործով, կստեղծեն նոր, առավել բարձրարժեք կինոստեղծագործություններ՝ ի փառս հայրենի կինոարվեստի։

Հայ կինոաշխատողների գործունեությունը գնահատվել է նաև անցյալում. ոչ շատ առաջ պատվավոր կոչումներ են շնորհվել նաև այլ աշխատողների. պետական մրցանակներ են ստացել Կամոյին նվիրված և Բարև, ես եմ կինոնկարների հեղինակները։ «Հայֆիլմ» կինոստուդիան 1967 թվականին պարգևատրվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Մինիստրների սովետի, Գերագույն սովետի նախագահության և արհմիության հանրապետական խորհրդի հուշադրոշով։ Այդ դրոշի գույնը առանձնապես մոտ ու հարազատ է մեր սրտին։ Դա մեզ հիշեցնում է այն նշանավոր որդան-կարմիրը, որով հայ գրիչները մագաղաթի վրա գրել են մեր ժողովրդի պատմությունը, նրա հզոր երևակայության պտուղները՝ առասպելները, հեքիաթները, տաղերն ու երգերը. դա այն հրաշք գույնն է, որ միշտ զարմանք է պատճառել մեր լեռնաշխարհը ոտք դրած թե՛ թշնամիներին, թե՛ բարեկամներին։ Այսօր էլ տիեզերքի անքննելի թվացող գաղտնիքները վերծանող գիտնականները պակաս զարմանքով չեն նայում այդ գույնին, որի ստեղծման գաղտնիքը իր հետ գերեզման էր տարել զավթողի չար նետից խոցված անանուն վարպետը։ Սակայն ինչից էլ որ պատրաստված լինի այդ զարմանահրաշ գույնը, մենք գիտենք, որ նրա բաղադրությանը խառնված է մեր արյունը, որ նրա մեջ ապրում է մեր ժողովրդի հավերժորեն անմահ հոգին։ Այդ գույնով է ներկված մեր նոր պետության դրոշը, որի հաղթական փայլից, բանաստեղծի պատկերավոր արտահայտությամբ ասած, շառագունել է տարածությամբ փոքր, բայց նշանակությամբ մեծ մեր Հայաստանը՝ Սովետական Սոցիալիստական Հայաստանը։

Հայ կինոարվեստի ձևավորումն ու զարգացումը սերտորեն կապված են մեր դասական գրականության մեծանուն ներկայացուցիչների՝ Շիրվանզադեի, Սունդուկյանի, Թումանյանի, սովետահայ կլասիկներ՝ Դեմիրճյանի, Չարենցի և Բակունցի անունների հետ, որոնց ստեղծագործությունները դարձել են ամրակուռ հիմքը, որի վրա բարձրացավ կինոարվեստի շենքը։ Բնավ պատահական չէ, որ հայ կինոարվեստի գլուխգործոց Պեպոն աշխարհ եկավ ամբողջ նորաստեղծ սովետահայ մտավորականության ընդհանուր ջանքերով։ Սցենարն էկրանավորելուց առաջ լայն քննության դրվեց գրական շրջաններում, որին մասնակցեցին անվանի գրողներ, քննադատներ, հասարակական գործիչներ։ Բեկնազարյանի կողքին կանգնեցին Եղիշե Չարենցն ու Արամ Խաչատրյանը, որոնցից առաջինը գրեց Պեպոյի հանրահայտ երգի տեքստը, երկրորդը՝ երաժշտությունը։

Ինչպես այս, այնպես էլ մյուս շատ ֆիլմերում հանդես եկան մեր ամենալավագույն դերասանական ուժերը, որոնց թվում հայ թատերական արվեստի փառք հանդիսացող Հ. Աբելյանը, Մայսուրյանը, Հասմիկը, Հ. Ներսիսյանը, Գ. Ավետյանը, Ա. Ավետիսյանը, Գ. Ջանիբեկյանը, Դ. Մալյանը, Գ. Գաբրիելյանը, Հ. Խաչանյանը։ Ավագների գործը շարունակում են երիտասարդները, այդ թվում՝ Գ. Թոնունցը, Վ. Վարդերեսյանը, Մ. Սիմոնյանը, Ա. Ջիգարխանյանը, Ֆ. Մկրտչյանը և ուրիշներ։

Մի շարք դերասաններ իրենց տաղանդը լրիվ դրսևորեցին կինոարվեստում, և դրանով մտան արվեստի պատմության մեջ. նրանցից են՝ Ն. Մանուչարյանը, Է. Ամիրբեկյանը, Մախմուրյանը և ուրիշներ։

Հայկինոյի զարգացման գործում իրենց անգնահատելի ավանդն են ներ-



դրել կոմպոզիտորներն ու նկարիչները— Մ. Սարյանն ու Հ. Կոջոյանը, Արուտչյան եղբայրները, Թարյանն ու Բաբայանը, Անդրանիկյանն ու Պողպատովը, Ա. Սպենդիարյանն ու Ա. Տիգրանյանը, Ա. Սաթյանն ու Ստեփանյանը, Ա. Բաբաջանյանն ու Է. Միրզոյանը, Ա. Հարությունյանն ու Է. Հովհաննիսյանը։

Հետպատերազմյան շրջանում ստեղծվեց մասնագետ կինոսցենարիստների մի խումբ, որոնցից հիշատակության արժանի են Առնոլդ Աղաբաբովը, Լևոն Ղարագյոզյանը, Աղասի Այվազյանը, Միքայել Շաթիրյանը, Միքայել Ջամանյանը, Հրանտ Մաթևոսյանը և ուրիշներ։

Ի հակակշիռ բուրժուական էսթետացող քաղքենիների, որոնք գտնում են, թե արվեստը պետք է ծառայի միայն «ընտրյալների» նեղ շրջանակին, սովետական արվեստն իր էությամբ ժողովրդական է, նրա գլխավոր նպատակն է՝ մասսաներին հասցնել դարի առաջավոր գաղափարները։ Ահա թե ինչու տարեցտարի, նույնիսկ այն ժամանակ, երբ հրապարակ է եկել կինոյի կրտսեր եղբայրն ու մրցակիցը՝ հեռուստատեսությունը— անշեղորեն աճում է կինոդիտողների թիվը։ Ամեն օր կինո են հաճախում 12—13 միլիոն, իսկ տարին՝ 5 միլիարդ մարդ։

Հայաստանի յուրաքանչյուր երրորդ բնակիչ ամեն օր լինում է մեր կինոթատրոնում։ Ստեղծագործական կոլեկտիվների հետ ձեռք-ձեռքի, եռանդուն ու շնորհակալ աշխատանք է կատարում կինոցուցադրողների ստվար բանակը։

Կինոֆիկացիայի և պրոկատի բազմահազար աշխատողների գլխավոր խնդիրն է՝ ճիշտ ու մտածված կազմել կինոթատրոնների ռեպերտուարը, բավարարել հանդիսատեսի օրավուր աճող պահանջները, կատարելագործել տեխնիկան, բարձրացնել ֆիլմերի ցուցադրման կուլտուրան քաղաքներում և գյուղերում։

Սովետական կինոյի բոլոր աշխատողները երախտագիտության խոր զգացումով ընդունեցին մեր կուսակցության լենինյան Կենտկոմի ողջույնը, որտեղ բարձր գնահատական է տրվում նրանց աշխատանքին։

«Կինեմատոգրաֆիայի աշխատողները,— ասված է Կենտկոմի ողջույնում,— սովետական հասարակարգի զարգացման բոլոր փուլերում ակտիվ մասնակցել են նոր կյանքի կառուցմանը և սոցիալիզմի թշնամիների դեմ մղված պայքարին, իրենց ուժերն ու տաղանդը նվիրաբերել մեր հայրենիքի բարգավաճման, համայն աշխարհի աշխատավորների գործի համար պայքարող, համոզված, կուսակցության շուրջը համախմբված մարտիկների ձևավորմանը...

Մեր երկրում կինոն առաջին անգամ դարձել է մեծ, իսկապես ժողովրդական արվեստ, նրա աչքի ընկնող ստեղծագործություններն արժանի ճանաչում են գտել ամբողջ աշխարհում և կարևոր դեր են խաղում աշխատավորական ամենալայն զանգվածներին առաջավոր կուլտուրայի հարստություններին հաղորդակից դարձնելու գործում։

Թող մեր կինոյի կեսդարյա հոբելյանի տոնակատարությունը, որը տեղի է ունենում Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախօրեին, նշանավորվի էկրանի արվեստի վարպետների ստեղծագործական ակտիվության նոր վերելքով, արդիականության կարևորագույն թեմաներին, ժողովրդի հերոսական պատմությանը, լենինյան անմահ գաղափարների իրականացմանը նվիրված վառ կինոստեղծագործությունների կերտմամբ»։

Իր կեսդարյա ճանապարհին սովետական կինոարվեստը ստեղծագործական մեծ հաղթանակների հետ մեկտեղ ունեցել է նաև անհաջողություններ։ Այդ անհաջողություններից, դժբախտաբար, զերծ չի մնացել նաև հայ կինոարվեստը։ Ում հայտնի չէ, որ մեր ոչ բոլոր կինոնկարներն են մեծ հաջողություն գտել հանդիսատեսի կողմից։ Եղել են ֆիլմեր, որոնք դեռ էկրան չբարձրացած մոռացվել կամ տհաճ հետք են թողել դիտողների հիշողության մեջ։ Մեր կինոգործիչներին դեռևս չի հաջողվել բազմակողմանի ու խոր վերարտադրել մեր այսօրվա կյանքը, սովետական մարդկանց աշխատանքն ու պայքարը կյանքի զանազան ոլորտներում, նրանց հարուստ ներաշխարհը, խոհերն ու զգացմունքները։ Կինոարվեստն այն հզոր միջոցներից մեկն է, որը հնարավորություն է տալիս սեփական ժողովրդի սխրանքը, նրա հոգու անբավ հարստությունները զարմանալիորեն արագ և, որ կարևոր է, բազմակողմանի ներկայացնել ուրիշ ժողովուրդների և դրանով հոգևոր կամուրջ ստեղծել նրանց միջև։ Սակայն այդպիսի կամուրջը պետք է կառուցվի ազնիվ մետաղից, ոչ թե տնայնագործների, այլ մեծ վարպետների ձեռքերով, մաքուր խղճով և ազնիվ միտումներով։

Հայաստանի կինովարպետները դեռևս չեն կարողացել լրիվ օգտագործել իրենց տրված հնարավորությունները, նրանց կատարածը դեռևս չի կարող բավարարել մեր ժողովրդի հարաճուն պահանջները։

Թևակոխելով իր կյանքի երկրորդ հիսնամյակը, ավելի կծաղկի ու կզարգանա սովետական կինոարվեստը, ժողովրդի հոգևոր մշակույթի կարևորագույն բնագավառներից մեկը, բոլոր արվեստներից ամենակարևորը մեզ համար։



# ՄԻՋԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՎԱԼՅՈՒՏԱ-ՖԻՆԱՆՍԱԿԱՆ ԱՐԴԻ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Վ. Մ. ԳԱԲՈՒՋՅԱՆ

Վ. Ի. Լենինի հայտնագործած՝ կապիտալիզմի անհամաչափ զարգացման օրենքը կապիտալի աշխարհում տեղի ունեցող տնտեսական ու քաղաքական տեղաշարժերի և հակասությունների գիտական ուսումնասիրության բանալին է։

Կապիտալիզմի անհամաչափ զարգացման օրենքի գործողությունը տարբեր ժամանակաշրջաններում ձեռք է բերում տարբեր առանձնահատկություններ։ Վերջին տասնամյակում իմպերիալիստական տերությունների միջև գոյություն ունեցող տնտեսական հակասությունների բնագավառում առավել ուժեղ սրվել է ֆինանսա-վալյուտային պայքարը։ Այդ փաստը առանձին ուժով ընդգծվեց կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թվականի հունիսին կայացած միջազգային խորհրդակցության հիմնական փաստաթղթում, որտեղ արձանագրված է. «Զանազան իմպերիալիստական տերությունների միջև և ամբողջ կապիտալիստական աշխարհում ուժեղանում է տնտեսական զարգացման անհավասարաչափությունը։ Կյանքը ցույց է տալիս ազդեցության ոլորտների համար իմպերիալիստական տերությունների, կապիտալիստական մոնոպոլիաների միջև մղվող պայքարի մարքս-լենինյան դրույթի ճշտությունը։ Խորանում է արդյունաբերական և առևտրական մրցակցությունը, ընդլայնվում է ֆինանսական և վալյուտային պատերազմը»: Այնուհետև՝ «Գրեթե ոչ մի կապիտալիստական պետություն չի խուսափել էկոնոմիկայի մեջ նշանակալի ցիկլային տատանումներից և անկումներից. առանձին երկրներում արդյունաբերության աճի արագ տեմպերի շրջաններին հաջորդում են դանդաղ տեմպերի շրջանները, իսկ երբեմն էլ արտադրության անկումը։ Կապիտալիստական սիստեմը բռնված է վալյուտա-ֆինանսական սուր ճգնաժամի տենդով»: (Ընդգծումները մերն են։ Վ. Գ.)։

Հայտնի է, որ վալյուտա-ֆինանսական բնագավառը կապիտալիստական էկոնոմիկայի ամենանուրբ, ամենազգայուն օրգանն է։ Ինչպես մարդու մարմնում ջերմաստիճանի տատանումները օրգանիզմում հիվանդագին պրոցեսների առկայության առաջին նշաններն են, այնպես էլ վալյուտային անկայունությունը, ֆինանսական լարվածությունը, բանկային տոկոսների նորմայի բարձրացումը, արժեթղթերի կուրսի անկումը, տենդագին վիճակը ֆոնդային բորսաներում և այլն, կապիտալիստական էկոնոմիկայում ավելի խոր հիվան-

դագին պրոցեսների սրման առաջին ազդանշաններն են։ Մինչև վաթսունական թվականները, կապիտալիստական վալյուտային սիստեմը կայուն չէր։ Այնուամենայնիվ այդ թվականին ֆինանսա-վալյուտային լարվածությունը և վալյուտային հակասությունները համեմատաբար մեղմ են արտահայտվել։ Ֆինանսա-վալյուտային հարաբերությունները «էկոնոմիկա» ամբողջական կոմպլեքսի այն տարրն են, որը կապիտալիզմի ժամանակ առավել մեծ չափով կապված է քաղաքականության հետ։ Վալյուտային պայքարի մեջ, ավելի քան որևէ այլ օղակում, միախառնվում ու արտահայտվում են իմպերիալիստական տերությունների ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական ու ռազմական հակասությունները։ Իմպերիալիստական տերությունների վարած ներքին և արտաքին քաղաքականությունը, աշխարհի տարբեր մասերում հրահրվող պատերազմներն ու քայքայիչ ոտնձգությունները, տեխնիկայի զարգացման ժամանակակից պայմաններում սպառազինությունների մրցավազքի համար ծախսվող վիթխարի միջոցները, այս ամենը վաթսունական թվականներին այնպիսի չափերի հասան, որ խախտվեց վալյուտա-ֆինանսական հավասարակշռությունը, վալյուտա-ֆինանսական միջպետական հարաբերություններում սկսեց սրվել հակոտնյա քաղաքականությունը։ Եվ, վերջապես, հիսունական թվականների վերջերից սկսվեց և վաթսունական թվականներին ուժեղացավ տնտեսական ներփակ խմբավորումների ստեղծման, մասնավորապես, արևմտաեվրոպական «ինտեգրացիայի» քաղաքականությունը, որը, անտարակույս, վալյուտային հակասությունների խորացման լուրջ գործոններից է։

Կապիտալիստական համաշխարհային շուկայում հակասությունների սրման գլխավոր պատճառը արտաքին առևտրի և, հատկապես, արտահանումների անհամաչափ զարգացումն է։ Ի դեպ, կապիտալիստական երկրների տընտեսական զարգացման անհամաչափության մեջ առավել ցայտուն է անհամաչափությունը արտաքին առևտրի բնագավառում։ Ստորև բերվող բնութագիրը, որը 1968 թվականի վիճակը համեմատում է 1950 թվականի հետ, դրա լավագույն ապացույցն է։

Նշված ժամանակաշրջանում արտաքին առևտրի շրջանառության ավելացման ցուցանիշով առաջին տեղում է Ճապոնիան (աճը՝ 2,3 անգամ), երկրորդ տեղում՝ Արևմտյան Գերմանիան (8,3), ապա Իտալիան (6,9), Ֆրանսիան (3,8), ԱՄՆ-ը (3,0) և Անգլիան (2,3 անգամ)։ Արտաքին ապրանքաշրջանառության նման անհամաչափ աճը փոփոխություններ առաջացրեց կապիտալիստական համաշխարհային շուկայում։ Կապիտալիստական աշխարհի արտաքին առևտրի ամբողջ շրջանառության մեջ ԱՄՆ-ի բաժինը 16,5-ից իջավ 15 տոկոսի, արտահանումների մեջ 18-ից 16,6-ի, իսկ արդյունաբերական պատրաստի արտադրանքի արտահանումների մեջ՝ 27,3-ից 20,9 տոկոսի։

Ամենից արագ փոխվել է Ճապոնիայի դրությունը։ Նրա բաժինը կապիտալիստական ամբողջ արտաքին առևտրի մեջ նշված ժամանակաշրջանում 1,6 տոկոսից բարձրացել է 5,7-ի, արտահանումների մեջ՝ 1,4-ից 5,5-ի, իսկ արդյունաբերական պատրաստի արտադրանքի արտահանումների մեջ՝ 3,5-ից 9,8 տոկոսի։ Պատկերացում տալու համար դրա մասշտաբների մասին նշենք, որ արդյունաբերական պատրաստի արտադրանքի ճապոնական արտահանումների ծավալն արդեն կազմել է ԱՄՆ-ի մակարդակի 47,1 տոկոսը։ Ճիշտ է, Ճապոնիան առայժմ առաջ է անցել միայն Իտալիայից ու Ֆրանսիայից, կապիտալիստական աշխարհում գրավելով չորրորդ տեղը՝ ԱՄՆ-ից, ԳՖՀ-ից և Անգլիայից հետո։ Սակայն այնքան է մոտեցել Անգլիային, որ, զարգացման առկա



տեմպերի պահպանման պայմաններում, ինչպես արդյունաբերական պատրաստի արտադրանքի կապիտալիստական արտահանումների, այնպես էլ առհասարակ արտահանումների և արտաքին ապրանքաշրջանառության ամբողջ ծավալի մեջ առաջիկայում, անշուշտ, կգրավի երրորդ տեղը։ Բայց Ճապոնիան սպառնում է ո՛չ միայն Անգլիային, այլև ԳՖՀ-ին։ Ճապոնական մոնոպոլիաները նպաստավոր դիրքեր են գրավել համաշխարհային շուկայում։

Ճապոնիան 60-ական թվականներին լուրջ վտանգ ստեղծեց նաև ԱՄՆ-ի արտաքին առևտրի համար. նա հատկապես որոշ ապրանքատեսակների արտահանումների բնագավառում ուղղակի դուրս է մղել ԱՄՆ-ին։ Բանը նրանում է, որ ճապոնական արտահանումներն ընդլայնվում են՝ ցածր գների պայմաններում, իսկ գնագոյացման գրեթե բոլոր տարրերը նպաստավոր են Ճապոնիայի համար (ապրանքների մրցունակության բարձրացման ուղղությամբ պետական-մոնոպոլիստական միջոցառումները, արտադրության ծախսերի կրճատումը, արտադրության ու մատակարարման կառավարման կազմակերպումը և այլն)։ Առանձնապես պետք է նշել աշխատուժի վրա կատարվող ծախսումների «խնայողությունը»։ Ճապոնական ապրանքների գների մեջ աշխատավարձի բաժինը անընդհատ իջնում է և այժմ կազմում է ընդամենը 5 տոկոս։ Ճիշտ է, աշխատավարձի բաժինը ապրանքագների մեջ իջնում է նաև ԱՄՆ-ում, ի տարբերություն արևմտաեվրոպական երկրների, սակայն գնագոյացման միասին վերցրած բոլոր տարրերի կոմպլեքսն ավելի նպաստավոր է Ճապոնիայի համար։ Բավական է նշել, որ վերջին հինգ տարիներին արտահանվող ապրանքների գների մակարդակն ԱՄՆ-ում բարձրացել է 11 տոկոսով, «Ընդհանուր շուկայի» երկրներում՝ 2, իսկ Ճապոնիայում՝ ընդամենը 1 տոկոսով։ Հետաքրքրական է նշել, որ թեև բոլոր զարգացած կապիտալիստական երկրներում բանվորների միջին տարեկան իրական աշխատավարձի մակարդակը ետ է մնում աշխատանքի արտադրողականության աճից, սակայն մոնոպոլիաների համար հարաբերակցությունն առավել շահավետ է լոկ ԱՄՆ-ում և Ճապոնիայում։ Ավելին, հենց միայն ԱՄՆ-ում և Ճապոնիայում է, որ բանվորների նաև անվանական աշխատավարձի մակարդակը ետ է մնում աշխատանքի արտադրողականության աճից։

Ճապոնիայի տնտեսական էքսպանսիան իմպերիալիզմի ներքին ուժերի հարաբերակցության մեջ նոր էական փոփոխություններ է մտցնում, հասցնում կապիտալիստական համաշխարհային շուկայի վերաբաշխման, խիստ սրում հակասությունները իմպերիալիստական երկրների միջև։

Եթե ԱՄՆ-ի արտաքին առևտրի ցուցանիշները նշված ժամանակամիջոցում վատթարացել են, ապա նրա հիմնական ախոյանի՝ Արևմտյան Եվրոպայի դրությունը բարելավվել է։ ԱՄՆ-ի արտահանումների ծավալի հարաբերությունն արևմտաեվրոպականի նկատմամբ 50 տոկոսից իջել է 35-ի։ Արևմտյան Եվրոպայի բաժինը կապիտալիստական արտաքին ամբողջ ապրանքաշրջանառության մեջ 38,6 տոկոսից բարձրացել է 48,3-ի, իսկ արտահանումների մեջ՝ 35,6-ից՝ 47,5 տոկոսի։

Արևմտյան Եվրոպայի դերի զգալի բարձրացումը արդյունք է «Եվրոպայի տնտեսական համագործակցության» (հիմնականում ԳՖՀ-ի) աշխուժացման։ Մինչդեռ «Ազատ առևտրի Եվրոպական ասոցիացիայի» (հիմնականում Անգլիայի) դիրքերը թուլանում են։ Բավական է նշել, որ եթե ամբողջ Արևմտյան Եվրոպայի արտաքին ապրանքաշրջանառությունն աճել է 4,2 անգամ, ապա

ԵՏՀ-ինը՝ 5,4 (այդ թվում ԳՖՀ-ինը՝ 8,3), իսկ ԱԱԵԱ-ինը՝ 3 անգամ (այդ թվում Անգլիայինը՝ 2,3)։

Համաշխարհային կապիտալիզմի անպլանային էկոնոմիկայի համար օրինաչափ է, որ երկրների վճարումների բալանսները մերթ դրական, մերթ բացասական լինեն։ Առանձին երկրների պլյուսները և մյուսների մինուսները ծածկում են միմյանց, որովհետև երկրների վճարային փոխադարձ պարտավորությունները, վերջին հաշվով, մարվում են։ Եվ վճարումների բացասական բալանսի հորձանուտն ընկած երկրները համապատասխան միջոցներ են ձեռնարկում, որոնք կարող են ժամանակավորապես ակտիվացնել վճարումների բալանսը։ Սակայն հենց այն պատճառով, որ ֆինանսական կապիտալիստական համաշխարհային սիստեմը շղթայակապ օղակ է, առանձին երկրների բալանսի ակտիվացումը այլ երկրների համար վճարումների բալանսի պասսիվացում է նշանակում։ Եվ այսպես, տարբերայնորեն, տարբեր պետությունների վճարային փոխադարձ պարտավորությունների անհամաչափ զարգացմամբ երկրների ֆինանսա-վալյուտային իրավիճակը բնութագրող գլխավոր գործոններից մեկի՝ վճարումների բալանսի պատկերը հաճախակի փոփոխվում է, որը, իր հերթին, համապատասխանաբար առաջացնում է վալյուտային մակընթացություն և տեղատվություն։

Այնուամենայնիվ, ԳՖՀ-ի վճարումների բալանսի դրական վիճակը շուռով կբոլորի իր երկրորդ տասնամյակը. սա կապիտալիզմի ֆինանսա-վալյուտային պատմության եզակի երևույթներից է։ Երկարատև ժամանակով և մեծ գումարներով ուրիշ երկրներից պահանջ ունենալը նշանակում է, որ որոշ երկրներ տևականորեն ֆինանսական տարին փակում են որպես ԳՖՀ-ի պարտապաններ։ Հասկանալի է, որ դա դժվարացնում է ԳՖՀ-ի հետ վճարային հարաբերությունների կարգավորման գործը։

Խիստ անկայուն է Անգլիայի վճարումների բալանսի վիճակը. հետպատերազմյան ժամանակաշրջանում միայն որոշ տարիներում է այն դրական եղել։ Բացասական մնացորդի գումարը 1960 թվականին կազմել է 467 միլիոն ֆունտ ստեռլինգ, 1965-ին՝ 342, 1966-ին՝ 133, 1967-ին՝ 540 և 1968-ին՝ 650 միլիոն ֆունտ ստեռլինգ։ 1963—1968 թվականներին Անգլիայի վճարումների բալանսի դեֆիցիտի ընդհանուր գումարը հասել է 25 միլիարդ ֆունտ ստեռլինգի։ Հենց այստեղ են թաքնված Անգլիայի ֆինանսա-վալյուտային ճգնաժամի արմատները։

Խախտվում է նաև ԱՄՆ-ի ֆինանսական դրությունը։ Վերջին տարիներս վատթարացել է արտաքին առևտրի բալանսը, կրճատվում է ներմուծումների գումարի նկատմամբ արտահանումների գերազանցումը։ 1967 թվականին առևտրական բալանսի դրական մնացորդը կազմել է 3,5 միլիարդ դոլար, 1968-ին ընդամենը՝ 100։ Իսկ 1969-ի առաջին եռամսյակին մնացորդն արդեն բացասական էր, որը եռամսյակային առաջին դեֆիցիտն էր 1950 թվականից հետո։ Ինչ վերաբերում է վճարումների բալանսին, ապա այն խրոնիկական դեֆիցիտի պատճառով ավելի բարդ պրոբլեմ է։

1969 թվականի սկզբներին ամերիկյան պաշտոնական գործիչներն իրենց ելույթներում հպարտանում էին, թե 1968 թվականը (1957 թվականից ի վեր) վճարումների բալանսի հավասարակշռման առաջին տարին էր։ Սակայն այդ «բարելավումը» ժամանակավոր երևույթ էր և 1969 թվականի առաջին կեսի պատկերը լիովին ապացուցեց, որ ամերիկյան կառավարության կողմից ձեռնարկված արտակարգ ու արհեստական միջոցները չէին կարող որևէ չափով



բուժել ԱՄՆ-ի ֆինանսական դրությունը։ Ֆինանսա-վալյուտային լարված վիճակի գլխավոր պատճառներից մեկը ռազմական ծախսերի ծանր բեռն է, որ դրվել է ամերիկյան ժողովրդի ուսերին։ Միայն Վիետնամում մղվող պատերազմի համար 1959—1968 թվականներին ԱՄՆ-ի բյուջեից 10 անգամ ավելի է ծախսվել, քան բարձրագույն կրթության վրա նրա ամբողջ պատմության ընթացքում։

Կապիտալի աշխարհում տարբեր երկրների ֆինանսա-վալյուտային ուժի հարաբերակցության անհամաչափությունն ու այս բնագավառում հակասությունների սրումն արտահայտվում են նաև իմպերիալիստական գլխավոր պետությունների ոսկու և վալյուտային պաշարների ցուցանիշում։ Այս տեսակետից հատկանշական են ԱՄՆ-ն և ԳՖՀ-ն, ուր վերջին 1—2 տասնամյակում առաջինի պաշարները տարեցտարի նվազում են, իսկ երկրորդինը, ընդհակառակը՝ աճում։ Ըստ որում, այդ փոփոխության մասշտաբները բավական մեծ են։ Այսպես, եթե 1950 թվականին ԳՖՀ-ի ոսկու և դոլարի պաշարները կազմել են 0,2 միլիարդ դոլար, իսկ 1968-ին՝ 9,1, ապա, նույն ժամանակամիջոցում, ԱՄՆ-ի պաշարները 22,8 միլիարդ դոլարից իջել են 15,7 միլիարդի։ Տատանումներ են եղել նաև մյուս երկրներում։ Կապիտալիստական աշխարհի ոսկու և վալյուտային ընդհանուր պաշարների մեջ ԱՄՆ-ի տեսակարար կշիռն ուղղակի նվազել է և 1968 թվականին կազմել է 19,8 տոկոս, Անգլիայինը՝ 4, Ֆրանսիայինը՝ 8,3, Իտալիայինը՝ 6,3, ԳՖՀ-ինը՝ 11 տոկոս։ Նման փոփոխությունները, կապիտալիստական աշխարհի ֆինանսա-վալյուտային ուժերի հարաբերակցության մեջ, սրում են վալյուտային լարվածությունն ու հակասությունները իմպերիալիստական տերությունների միջև։

Համաշխարհային կապիտալիզմի ֆինանսա-վալյուտային սիստեմում տեղի ունեցող ցնցումները չի կարելի վերագրել միայն պետությունների վճարումների բալանսի կամ ոսկու ու դոլարի պաշարների դրությանը։ Այստեղ առկա են նաև այլ պատճառներ։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո միջազգային վալյուտային ֆոնդի ստեղծումը նպատակ ուներ միջազգային համաձայնագրերով ապահովել վալյուտային այնպիսի կայունություն, որը փոխարիներ ոսկու ստանդարտի կայունությանը։ Մինչև օրս ուժի մեջ է ՄՎՖ-ի սահմանած վալյուտային կուրսերի սիստեմը։ Այդ հիման վրա երկրների մեծամասնությունն ունի ՄՎՖ-ի հետ համաձայնեցված կայուն պարիտետներ, որոնք արտահայտվում են ինչպես ոսկով, այնպես էլ ամերիկյան դոլարով։ Իսկ ոսկով արտահայտած դոլարի պարիտետը սահմանված է՝ 1 ունցիա ոսկին հավասար է 35 դոլարի, այսինքն՝ վերջին 35 տարիների ընթացքում անփոփոխ է թողնվել։ Մինչդեռ, այդ նույն ժամանակամիջոցում ապրանքագների մակարդակը, դոլարներով արտահայտած, բարձրացել է ավելի քան 2,5 անգամ։ Ներկայումս դոլարն ունի 40 տոկոսն այն գնողունակության, որ ուներ 1934 թվականի հունվարին, երբ սահմանվեց նրա՝ մինչև այժմ ուժի մեջ պահվող ոսկու բովանդակությունը։ Սա նշանակում է, որ ամերիկյան դոլարի «արժեքը» արհեստականորեն պահվում է բարձր մակարդակի վրա և հենց դա էլ ֆինանսա-վալյուտային ժամանակակից շատ պրոբլեմների և հակասությունների հիմնական պատճառներից է։

Միջազգային շրջանառության մեջ հաշվարկների և ռեզերվների՝ դոլարին վերապահված դերը որոշ ժամանակ հաջող էր կատարվում։ Սակայն 50-ական թվականների վերջերին և, հատկապես, 60-ական թվականներին ավելի ու ավելի խախտվեց կապիտալիստական աշխարհի վալյուտային հարաբերական

կայունությունը։ Օտարերկրյա տերիտորիաներում մինչ այդ զգացվող «դոլարի սովին» եկավ փոխարինելու «դոլարի ավելցուկը»։ Դա, իր հերթին, ուժեղացրեց դոլարը ոսկով փոխարինելու ձգտումը։

«Դոլարի ավելցուկի» առաջացման և դոլարով արտահայտած ոսկու գնի բարձրացման պատճառ դարձավ ԱՄՆ-ի վճարումների բալանսում ծագած խրոնիկական դեֆիցիտը։ Կապիտալիստական համաշխարհային ցուցանիշներում ԱՄՆ-ի արդյունաբերության և արտահանումների բաժնի նվազումը և, հատկապես, վճարումների բալանսի ու ոսկու պաշարների դրությունը, փաստորեն, դոլարին զրկեցին հիմնական ռեզերվային վալյուտայի դերը կատարելու իրավունքից։

Դևալվացիան վալյուտային ճգնաժամի ամենացայտուն դրսևորումն է։ Դա ազգային վալյուտայի ոսկու պարունակության պաշտոնական իջեցումն է, երբ վալյուտային պարիտետները և կուրսերը հարմարեցվում են թղթադրամի փաստացի գնողունակությանը։ Թեև դևալվացիան խիստ գցում է ազգային վալյուտայի միջազգային հեղինակությունը, բայց ժամանակավորապես կարող է բարելավել տվյալ երկրի արտաքին վճարումների դրությունը՝ ապրանքների արտահանումները խթանելու և ներմուծումների նկատմամբ շահագրգռվածությունը պակասեցնելու պատճառով։ Այդ ընթացքում արտաքին շուկաներ արտահանվող ապրանքների գները, արտահայտած օտար վալյուտաներով, սեփական վալյուտայի դևալվացիայի հետևանքով կիջնեն, իսկ առավել էժան ապրանքները, բնականաբար, շուկաներից դուրս կմղեն մրցակից երկրների արտադրանքը։ Այդպիսի հանգամանքներում, ընդհակառակը, ներքին շուկաներում նպաստավոր պայմաններ կստեղծվեն ներմուծումների համար, որովհետև ներմուծվող ապրանքների գները՝ արտահայտած ազգային վալյուտայով, կբարձրանան։ Սակայն դևալվացիայի նման «բարեբար» ազդեցությունը միակողմանի է, խախուտ և հիվանդագին։ Այդ է պատճառը, որ բուրժուական պետությունները դրան դիմում են ծայրահեղորեն հարկադրված լինելու դեպքում միայն։

Կարող է թվալ, թե ստեռլինգի վիճակի վատթարացումը՝ 1967 թվականի դևալվացիան, չպետք է անդրադառնար դոլարի վրա։ Սակայն Արևմուտքում ստեռլինգը համարվում է դոլարի առաջին պաշտպանը։ Միջազգային վալյուտային ֆոնդի կանոնադրությամբ ռեզերվային վալյուտա է հռչակված ո՛չ միայն դոլարը, այլև ֆունտ ստեռլինգը։ Հենց այդ պատճառով էլ կապիտալիստական աշխարհի գլխավոր վալյուտաների վիճակը փոխադարձ սերտ ներգործություն ունի։ Վերջին հաշվով, ոսկով փոխարինելի այդ թղթադրամների նկատմամբ վստահությամբ է պայմանավորված բուն իսկ այդ դերի իրականացումը։ Ճիշտ է, 1949 թվականին ևս ֆունտ ստեռլինգը դևալվացիայի էր ենթարկվել, սակայն, այն չսասանեց դոլարի հեղինակությունը։ Այլ էր դրությունը 1967 թվականին, երբ ստեռլինգի դևալվացիան վատթարացրեց դոլարի, առանց այն էլ խախուտ վիճակը։ 1968 թվականի գարնանը դոլարն արդեն սուր ճգնաժամ էր ապրում և միայն ԱՄՆ-ի կառավարության միջոցառումների շնորհիվ (ինչպես, բնակչության հարկերը 10 տոկոսով բարձրացնելը) հնարավոր եղավ դոլարը ժամանակավորապես փրկել դևալվացիայից։

Դոլարի ճգնաժամը պայմանավորված է մի քանի պատճառներով՝ ԱՄՆ-ի վճարումների բալանսի խրոնիկական դեֆիցիտը, ռազմական վիթխարի ծախսերն ու ամերիկյան բյուջեի մշտապես լարված վիճակը, ոսկու պաշարների բացարձակ ու հարաբերական նվազումը. լուրջ պատճառ է նաև՝ դոլարի պա-



րիտետը արհեստականորեն բարձր մակարդակի վրա պահելը։ Թեև դոլարի ոսկու բովանդակությունը պաշտոնապես սահմանված է 0,88 գրամ, սակայն փաստացի գնողունակությունն զգալիորեն ավելի փոքր է։ Շատ երկրներ պահանջում են պաշտոնապես բարձրացնել դոլարով արտահայտած ոսկու գինը, որն ինչ-որ չափով մեղմացնի միջազգային վալյուտային լարվածությունը։ Սակայն դա կնշանակի իջեցնել դոլարի ոսկու պարունակությունը, այսինքն՝ դևալվացնել այն։ Ահա թե ինչու ԱՄՆ-ի կառավարությունն ամեն կերպ ձգտում է պահպանել դոլարի իրական բովանդակությանը չհամապատասխանող արհեստական «արժեքը»։ Եվ ԱՄՆ-ի նախաձեռնությամբ 1964—1968 թվականներին տեղի ունեցած՝ ՄՎՖ-ի անդամ «տասնյակի» խորհրդակցությունը հենց այդ նպատակն էր հետապնդում, սակայն, խնդիրը անլուծելի մնաց։

1968 թվականի մարտին այդ խորհրդակցությունում ոսկու երկակի գին սահմանվեց։ Կենտրոնական բանկերի փոխադարձ հաշվարկներում ոսկու մեկ ունցիայի գինը պահպանվեց 35 դոլար, իսկ մասնավոր մարդկանց գործարքներում ոսկու գնի բախտը թողնվեց շուկայի քմահաճույքին՝ պահանջի և առաջարկի փոխհարաբերության տարերքին։ Մինչ այդ, ՄՎՖ-ի կանոնադրության համաձայն, շուկայում ոսկի բաց թողնելու կամ ավելորդ ոսկին շուկայից գնելու միջոցով, պետությունները ոսկու գինը պահպանում էին (1 ունցիան հավասար էր 35 դոլարի)։ Վերջին տարիներին վալյուտային ճգնաժամի սրման արտահայտություններից մեկն էլ հենց այն էր, որ մեծացավ «էժան դրամից»՝ դոլարից ազատվելու ձգտումը, որն արտահայտվեց ոսկու նկատմամբ պահանջի խիստ մեծացմամբ։ Պետություններն արդեն ի վիճակի չէին իրենց պաշարներից մասնավորներին այդ չափերով ոսկի փոխանցել։ Եվ որոշեցին «սանձը» բաց թողնել. դրա հետևանքով, փաստորեն, դոլարի ավելի ցածր պարիտետ սահմանվեց։ Բավական է ասել, որ լոնդոնյան բորսայում, որտեղ կատարվում է կապիտալիստական աշխարհի ոսկու ամբողջ մասնավոր առևտրի մոտ կեսը, 1969 թվականին ոսկու մեկ ունցիայի գինը բարձրացավ 43, իսկ Փարիզի բորսայում՝ 49 դոլարի։

Սակայն Փարիզում դոլարով արտահայտած ոսկու գնի այդ մեծ բարձրացմանը հաջորդեց ֆրանկի թուլացումը, որը հատկապես զգալի դարձավ 1968 թվականի ամռանը։ Տարվա վերջին արդեն ծայր առավ ֆրանսիական վալյուտայի ճգնաժամը, որի կուրսն ընկավ, կազմելով 5,3 ֆրանկ մեկ դոլարին, այն դեպքում, երբ պաշտոնական կուրսով 1 դոլարը հավասար է 4,937 ֆրանկի։ Պետք է ասել, որ առհասարակ զարգացած կապիտալիստական երկրների վալյուտաների շարքում ֆրանկը ամենևին կայուն չի եղել։ 1928—1958 թվականների ընթացքում այն 15 անգամ դևալվացվեց։ 1968 թվականի վերջերին սկսված ճգնաժամի հետևանքով 1969 թվականի օգոստոսին ֆրանկը կրկին դևալվացվեց։

Այսպիսով, աստիճանաբար կուտակված վալյուտային կապիտալիստական ճգնաժամի տարրերը 1967 թվականից հետո նոր ուժով պայթեցին։ Այժմ խոսքը վերաբերում է ո՛չ թե այս կամ այն երկրի ազգային վալյուտայի պարբերաբար կրկնվող ցնցումներին, այլ կապիտալիստական վալյուտային սիստեմի քայքայմանը, որի հիմքում ընկած է դոլարի և ստեռլինգի ճգնաժամը։

Ռեզերվային այդ երկու վալյուտաների ճգնաժամի և այլ երկրների վալյուտաների դրության վատթարացման հետևանքով միջազգային հաշվարկներում մեծացավ արևմտագերմանական մարկի դերը։ Ավելին, մարկի դերի մե-

ծացումը սրեց ֆինանսա-վալյուտային հակասությունները և խորացրեց վալյուտային ճգնաժամը կապիտալիստական աշխարհում։

Դեռ 1960 թվականին Արևմտյան Գերմանիայի վճարումների բալանսը տվեց 8 միլիարդ մարկ դրական մնացորդ։ Ակտիվի նման մեծությունն աննախադեպ էր և, անշուշտ, հղի իմպերիալիստական մյուս պետությունների ֆինանսա-վալյուտային դիրքերը խախտելու վտանգով։ Չկարողանալով դիմադրել գործադրված ճնշմանը, ԳՖՀ-ի կառավարությունը 1961 թվականին 5 տոկոսով ռևալվացիայի ենթարկեց ֆրանկը։ Մարկի ոսկու բովանդակությունը 0,211588-ից բարձրացվեց 0,222168 գրամի և դրան համապատասխան՝ մեկ դոլարի դիմաց 4,2 մարկից կուրսը բարձրացվեց 4,0 մարկի։

Վալյուտայի ռևալվացիան, այսինքն՝ տվյալ երկրի դրամական միավորի ոսկու բովանդակության մեծացումը և այլ վալյուտաների նկատմամբ կուրսի համապատասխանաբար բարձրացումը, դևալվացիայի հակադիր երևույթն է։ Թվում է, ռևալվացիան բարձրացնում է վալյուտայի միջազգային հեղինակությունը և ձեռնտու է տվյալ պետության համար։ Սակայն այն բացասաբար է անդրադառնում հենց նույն երկրի արտաքին առևտրի պայմանների, վճարումների բալանսի վրա։ Ռևալվացիայի հետևանքով պակասում է շահագրգռվածությունն արտահանումների ոլորտում, ուժեղանում ավելի շատ ներմուծելու ձգտումը։ Ենթադրենք արևմտագերմանական մարկը ռևալվացվում է 10 տոկոսով, հետևաբար, կուրսը մեկ դոլարին 4 մարկից բարձրանում է 3,6 մարկի. Նշանակում է 1000 դոլար արժողությամբ արտահանումների դիմաց ԳՖՀ-ի մոնոպոլիաները կստանան արդեն ոչ թե 4000, այլ 3600 մարկ։ Արտահանումը դառնում է նվազ շահութաբեր։ Առավել նպաստավոր պայմաններ են ստեղծվում ներմուծողների համար, որովհետև քիչ մարկով շատ ապրանքներ կարելի է ձեռք բերել և վաճառահանել ներքին շուկայում։ Օտարերկրյա մոնոպոլիաները նույնպես շահագրգռվում են արտադրանքը վաճառահանել Արևմտյան Գերմանիա, որովհետև այնտեղ ստացված վալյուտայով՝ մարկով, ավելի մեծ գումար այլ վալյուտա կարող են ձեռք բերել։ Այդ անխուսափելի հետևանքներն են պատճառը, որ պետությունները, որպես կանոն, խուսափում են ռևալվացիայից։

1968 թվականին ԳՖՀ-ի բոլոր պարտնյորները նորից պահանջներ ներկայացրին մարկի ռևալվացիայի վերաբերյալ։ 1961 թվականի ռևալվացիան արդյունավետ չէր, որովհետև ԳՖՀ-ի վճարումների բալանսի պայմանների համար 5 տոկոսը քիչ էր, հատկապես, եթե հաշվի առնենք արևմտագերմանական կառավարության ձեռնարկած այն հակազդող միջոցները, որոնք ի չիք դարձրին ռևալվացիան։ 1968 թվականի սեպտեմբերին դոլարը արդեն գնահատվում էր 3,9744 մարկ։ Դոլարը, ստեռլինգը և ֆրանկը սկսեցին ենթարկվել արտաքին անընդմեջ, ուժգին հարվածների։ Խորհրդակցությունները մեկը մյուսին հաջորդեցին։ Պահանջվում էր մարկը ռևալվացնել ոչ թե 5, այլ 10—15 տոկոսով, ԳՖՀ-ն շուրջ մեկ ու կես տարի մերժեց այդ առաջարկները։ Բնորոշ է, որ արևմտագերմանական մոնոպոլիաները կոմպրոմիսի դիմեցին։ Արևմուտքի ռազմա-քաղաքական միավորումներում իրենց դիրքերն ավելի ևս ամրապնդելու նպատակով զիջումներ արեցին վալյուտային բնագավառում և հոկտեմբերի 27-ին 8,5 տոկոսով բարձրացրին մարկի կուրսը։ Այդ ռևալվացիայի հետևանքով ամերիկյան դոլարը հավասարվեց արևմտագերմանական 3,66 մարկի։ Սակայն ռևալվացիայի և նման արհեստական միջոցներով անհնար է կանխել կապիտալիստական աշխարհում սրված վալյուտային ճգնաժամը, վերականգնել խախտված հավասարակշռությունը։

# ԼԻՈՎԻՆ ԻՐԱՑՆԵԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԿԱՊԻՏԱԼ ՆԵՐԴՐՈՒՄՆԵՐԸ

Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆ

ՀԿԿ Երքաղկոմի քարտուղար

Կոմունիստական հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման և սոցիալ-տնտեսական խոշոր պրոբլեմների լուծման հաջողությունը մեծ չափով պայմանավորված է կապիտալ շինարարության մասշտաբներով ու տեմպերով։

ՍՄԿԿ ԿԿ և ՍՍՀՄ Մինիստրների սովետը հետևողականորեն իրականացնում են կուսակցության XXIII համագումարի որոշումները՝ կապիտալ շինարարության հետագա ընդլայնման, դրա պլանավորման և ղեկավարման բարելավման վերաբերյալ։ Մեր երկրում ազգային եկամտի մոտ 20 տոկոսը հատկացվում է հիմնական ֆոնդերի աճին։ Միայն 1968 թ. կապիտալ ներդրումների ծավալը ՍՍՀՄ-ում կազմել է 61,5 միլիարդ ռուբլի, որը 5,6 անգամ գերազանցում է 1950 թ. իրացված ծավալը։ Այդ նույն ժամանակամիջոցում (1950—1968 թթ.) հիմնական ֆոնդերն աճել են 4,6 անգամ, այդ թվում՝ արդյունաբերության մեջ՝ 6,4 անգամ։

Մեր հանրապետությունում կապիտալ ներդրումների ծավալը 1968 թ. կազմել է 538 միլիոն ռուբլի, որը մոտ 9 անգամ գերազանցում է 1950 թ. ծավալին։ Երևան քաղաքում 1968 թ. այն կազմել է 143,3 միլիոն ռուբլի, որը 2,1 անգամ ավելի է, քան 1950 թ. Հայաստանի ամբողջ կապիտալ ներդրումները։ Միայն 1969 թ. հանրապետությունում նախատեսված է ներդնել 556,6, Երևանում՝ 188,1 միլիոն ռուբլի։

Վերջին երկու տարում (1967—1968 թթ.) Երևանում գործարկվել են նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, առանձին արտադրամասեր, բնակելի շենքեր, կուլտուր-կենցաղային օբյեկտներ և այլ կառույցներ։ Դրանց թվում են քիմռեակտիվների, կենցաղային քիմիայի գործարանները, մոդելային կոշիկների նոր ֆաբրիկան (տարեկան 1 միլիոն զույգ բարձրորակ կոշիկի արտադրական կարողությամբ), դեղագործարանը, լիմոնադի նոր գործարանը (տարեկան 300 հազար դեկալիտր հզորությամբ), հացի № 7 գործարանը։ Կարևոր արտադրամասեր և կարողություններ են գործարկվել Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատում, Հայէլեկտրագործարանում, էլեկտրաապարատների,

ավտո, «Պոլիվինիլացետատ», կաբելի, ֆրեզերային հաստոցների գործարաններում, Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկայում և այլն։ Նույն ժամանակամիջոցում Երևանում շահագործման են հանձնվել 21.531 դպրոցական տեղ, նախադպրոցական հիմնարկություններ՝ 3.310 տեղով, մոտ 451,5 հազար քմ բնակելի տարածություն։

1969 թ. առաջին կիսամյակում բնակելի տարածությունների շահագործման հանձնման պլանը կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին եղել է 72 հազար քմ, շահագործման է հանձնված 90 հազարը, այդ թվում՝ Երքաղսովետի կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին՝ 60,46, կատարողականը՝ 63,12 հազար քմ։ Երևանում առաջին կիսամյակում շահագործման է հանձնվել 122 հազար քմ բնակելի տարածություն, պլանավորված 103 հազարի դիմաց։ Այս թվերն ուրախացնող են, սակայն ոչ հուսադրող, քանի որ 1968 թ. չհանձնված մոտ 80—90 հազար քմ տարածությամբ բնակելի շենքերը շահագործման են հանձնվել այս տարի։

Կապիտալ շինարարության բուռն թափի պայմաններում հատուկ նշանակություն են ստանում կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացումը, դրանց փոխհատուցման ժամկետների կրճատումը, 1 ռուբլի կապիտալ ներդրումների դիմաց արտադրանքի ավելացումը, նախագծման և շինարարության ժամկետների կրճատումը, շինարարության որակը, աշխատանքի մեքենայացվածության ու արտադրողականության բարձրացումը և այլն։ Այժմ հրամայաբար պահանջվում է կապիտալ շինարարության պլանավորման և շինարարական արտադրության կազմակերպման ձևերն ու մեթոդները լիովին համապատասխանեցնել երկրի անընդհատ աճող տնտեսության պահանջներին և կարճ ժամանակամիջոցում վերացնել շինարարության ասպարեզում գոյություն ունեցող էական թերությունները։

Կուսակցության և կառավարության որոշմամբ առաջիկայում շինարարության ասպարեզում ևս պետք է իրականացվի տնտեսական ռեֆորմը։ Բայց առանց լուրջ և բազմակողմանի նախապատրաստական աշխատանքի դա անհնարին է։ Հարկավոր է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր բանվոր ու մասնագետ հասկանա շինարարական արտադրության պլանավորման և նյութական խրախուսման նոր սկզբունքները, որոշի իր տեղն ու անելիքները կապիտալ շինարարության բարելավման մեծ և դժվարին գործում։

Կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ ՍՄԿԿ ԿԿ և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումները պարզաբանել յուրաքանչյուր կոմունիստի, աշխատողի, լայն բացատրական աշխատանք տանել դրանց ճիշտ ըմբռնման ու ժամանակին իրականացման համար։

Չնայած շինարարության բնագավառում ձեռք բերված որոշակի հաջողություններին, բայց և այնպես դեռևս կան լուրջ թերություններ։ Այսպես, տարիներ շարունակ Երևանում չի կատարվում շինարարության կապիտալ ներդրումների իրացման պլանը։ 1967 թ. պետական կապիտալ ներդրումների իրացման պլանը կատարվել է 92, 1968 թ.՝ 89 տոկոսով։ Առավել վատ է վիճակը 1969 թ.։ Առաջին կիսամյակի պլանը կատարվել է 72 տոկոսով։ Անցած երկու տարում նախատեսվել և շահագործման են հանձնվել 287,1 միլիոն ռուբլու հիմնական ֆոնդեր. փաստացի կատարողականը կազմել է 220,5 միլիոն ռուբլի (պլանը կատարվել է 76,8 տոկոսով)։ Այդ տարիներին այս կամ



այն պատճառով շահագործման չեն հանձնվել պետական պլանով նախատեսված կարևոր նշանակություն ունեցող մի շարք արդյունաբերական օբյեկտներ և կարողություններ։

Վերջին երկու տարում քաղաքային սովետի կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին նախատեսված էր շահագործման հանձնել 346.868 քմ բնակելի տարածություն. փաստորեն հանձնվել է 249.513 քմ, առաջադրանքը կատարվել է 72 տոկոսով։ Շահագործման չի հանձնվել մոտ 97 հազար քմ բնակելի տարածություն։ Հետաքրքրական է նշել, որ չնայած մայրաքաղաքը նախադպրոցական ձեռնարկությունների սուր կարիք է զգում, վերջին հինգ տարում երբեք չի կատարվել դրանց շահագործման հանձնման պլանը։ 1966—68 թթ. ֆինանսավորման բոլոր աղբյուրներից կապիտալ ներդրումների պլանն այդ գծով կատարվել է 88, իսկ մսուր-մանկապարտեզների շահագործման հանձնմանը (տեղերի թվով)՝ 55 տոկոսով։

Պատկերն ավելի տխուր է կոոպերատիվ բնակելի շինարարության ասպարեզում։ Այստեղ տարիներ շարունակ ինչպես կապիտալ ներդրումների իրացման, այնպես էլ շահագործման հանձնման պլանները չեն անցնում 50—60 տոկոսից։ Այսպիսով, մայրաքաղաքի շինարարական կազմակերպությունների, նախագծային ինստիտուտների, պատվիրատուների աշխատանքներում լուրջ թերություններ կան, որոնց վերացումը քաղաքի կուսկազմակերպությունների և շինարարական մարմինների առաջնահերթ խնդիրն է։

Բնակարանային շինարարությունը մեր ամենագլխավոր և լուրջ հարցն է։ Մեր կարծիքով, բնակելի շինարարության պլանների ձախողման գլխավոր պատճառներից մեկը շինտրեստների անբավարար աշխատանքն է։ Այսպես, Երևանում բնակարաններ են կառուցում հիմնականում №№ 1, 2, 3 և բարձրաբերձշին տրեստները. գլխավոր կապալառուներն են՝ Հայէլեկտրամոնտաժ, Հայսանտեխմոնտաժ, Հայգազշին տրեստները և մյուս մոնտաժային կազմակերպությունները (որպես ենթակապալառուներ)։ Գլխավոր կապալառու չորս տրեստներն էլ 1967—68 թթ. չեն կատարել քաղաքային սովետի կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին կառուցվող բնակելի շինարարության շինմոնտաժային աշխատանքների պլանները։

Հետաքրքրական է նշել, որ 1967—1968 թթ. №№ 1, 2, 3 տրեստների գլխավոր կապալառուի և սեփական ուժերով իրականացվող շինարարության պլաններն ու փաստացի կատարողականը 1966—67 թթ. համեմատությամբ, իջել են։

Այսպես, № 1 տրեստը, որպես գլխավոր կապալառու 1966 թ. 18.491 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանքներ է կատարել, սեփական ուժերով՝ 15.221 հազար ռուբլու, իսկ 1968 թ. դրանք նվազել են համապատասխանաբար՝ 14.909 և 11.922 հազարի, ընդ որում, նշված երկու տարվա հաշվետվություններում կատարվել են առաջադրանքները։ № 1 տրեստի աշխատանքների ծավալային մակարդակը թե՛ պլանի և թե կատարողականի տեսակետից, 1968 թ. ավելի ցածր է եղել, քան 1963 թ.։ Նույնն է վիճակը նաև № 2 տրեստում, որի պլանային և փաստացի կատարողականի ցուցանիշները 1968 թ. ավելի ցածր են եղել, քան 1963 թ.։

Արտադրական ձեռնարկությունների շինարարության պլանն ընթացիկ տարվա առաջին կիսամյակում կատարվել է ընդամենը 67,6 տոկոսով (48 կաբևորագույն կառույցներից միայն 13-ում է կատարվել այն։ Մնացածներում այդ պլանը կատարվել է 50—52 տոկոսով)։

Ինչպես տեսնում ենք, կատարողականը խիստ անբավարար է: №№ 1, 2, 3 տրեստներն այս տարվա 7 ամսում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, նկատելիորեն քիչ ծավալներ են իրացրել, իսկ ենթակապալառուների աշխատանքների ծավալն անցյալ տարվա մակարդակին է: Արդյունաբերության շինարարության մինիստրության այլ տրեստներ ևս չեն կատարել իրենց 7 ամսվա պլանները, սակայն դրանք, անցյալ տարվա 7 ամիսների համեմատ, ունեն 103—165 տոկոս ծավալային աճ: Իսկ քաղաքային տրեստները՝ ընդհակառակը:

Չորս շինտրեստներն 9 ամսվա ընթացքում չեն կատարել մոտ 20 միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանքներ: Պլանային առաջադրանքների թերակատարման հիմնական պատճառը շինարարական և շինմոնտաժային աշխատանքների կազմակերպման ցածր մակարդակն է: Նշված տրեստներում ցածր է կարգապահությունը: Անբավարար է աշխատանքների կազմակերպման մակարդակը շինհրապարակներում: Բանվորներն աշխատանքն սկսում են ուշացումով, աշխատատեղերն անհրաժեշտ նյութերով ապահովված չլինելու հետևանքով ունենում են արհեստական պարապուրդներ: Որպես կանոն, մեխանիզմներն օգտագործվում են միայն մեկ հերթափոխ կամ, լավագույն դեպքում՝ 9—9,5 ժամ: Աշխղեկները հաճախ բացակայում են շինհրապարակներից: Շինտրեստներում ցածր է տնտեսագիտական աշխատանքի մակարդակը: Անհրաժեշտ վերլուծությունների բացակայության հետևանքով ճիշտ չեն տեղաբաշխվում աշխատուժը, նյութերն ու մեխանիզմները: Վատ է հաշվառման և հաշվետվության վիճակը, որի հետևանքով մեծ են նյութատեխնիկական արժեքների կորուստներն ու գերածախսերը: Կառուցումների որակը խիստ ցածր է, որը հաճախ պահանջում է կրկնակի աշխատանք և կրկնակի վարձատրում:

Որպեսզի պարզ պատկերացում ունենանք տրեստների աշխատանքի մասին, համառոտակի վերլուծենք դրանցից մի քանիսի գործունեությունը:

Շինարարությունը լավ է կազմակերպում և ունեցած հնարավորությունները ռացիոնալ է օգտագործում № 14 շինտրեստը (կառավարիչ՝ Վ. Զաքարյան, գլխավոր ինժեներ՝ Գ. Մանվելյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Ե. Բաբայան): Այս տրեստը նոր կազմակերպություն է, որն ստեղծվել է «Երքիմշին» տրեստի նախկին № 3 շինվարչության բազայի վրա:

Գործն օրինակելի կազմակերպելու շնորհիվ կոլեկտիվն անընդհատ մեծացրել է մեխանիզմների հզորությունը: Տրեստի ղեկավարության և կուսկազմակերպության ուշադրության կենտրոնում են շինարարական արտադրության կազմակերպման և էկոնոմիկայի հարցերը: Այստեղ արտադրության հիմնական օղակ են համարվում շինհրապարակներում ստեղծված կոմպլեքսային բրիգադները, որոնք կոմպլեկտավորված են համապատասխան մասնագիտություն ունեցող բանվորներով: Լայնորեն կիրառվել են աշխատանքի վարձատրման առաջավոր և, հատկապես, պարգևա-ակորդային վարձատրման եղանակները: Տրեստը շինմոնտաժային աշխատանքների պլանը 1968 թ. կատարել է 104,8, արտադրողականությանը՝ 107,7 տոկոսով: Բարձրացել է բանվորների միջին աշխատավարձը: Այն, պլանի համեմատությամբ, կազմել է 106,8 տոկոս: Աշխատանքի արտադրողականության և միջին աշխատավարձի բարձրացման համամասնության ճիշտ պահպանման շնորհիվ տրեստն աշխատավարձի ֆոնդից տնտեսել է 17 հազար ռուբլի (մի բան, որ վերջին տարիներս շինարարության մեջ շատ քիչ է հանդիպում), այդ թվում՝ հիմնական արտադրության գծով՝ 12 հազար:



Տրեստում գործում է ռացիոնալիզատորների միտքը: Միայն 1968 թ. արտադրության մեջ ներդրվել են 31 ռացիոնալիզատորական առաջարկություն, 17,3 հազար ռուբլի տարեկան պայմանական տնտեսումով: 5.234 հազար ռուբլի պլանային ինքնարժեքի դիմաց շինմոնտաժային աշխատանքների փաստացի ինքնարժեքը կազմել է 5.145 ռուբլի, կամ ինքնարժեքի իջեցման պլանը գերակատարվել է 89 հազար ռուբլով: Պլանային 177 հազար ռուբլի շահույթի դիմաց տրեստն ունեցել է 262 հազարի բալանսային շահույթ: Ծախսերը (բոլոր հոդվածներով) տնտեսվել են: Չկան կորուստներ և անարտադրողական ծախսեր:

Վերը բերված ցուցանիշները կուսկազմակերպության ակտիվ աշխատանքի արդյունք են: Այս տրեստում կազմակերպությունը հասել է այն բանին, որ յուրաքանչյուր աշխատող պատասխանատվության բարձր զգացումով է կատարում իր պարտականությունները, բարձր է աշխատանքային և արտադրական կարգապահությունը: Եվ պատահական չէ, որ № 14 տրեստի կոլեկտիվը եռամսյակներ շարունակ իր ձեռքին է պահում ՀԿԿ Երքաղկոմի և քաղսովետի գործկոմի փոխանցիկ դրոշը:

Պատկերը հակառակն է համաշինարարական № 3 տրեստում (կառավարիչ՝ Ե. Գյողակյան, գլխավոր ինժեներ՝ Մ. Բաղալյան, կուսկոմիտեի քարտուղար՝ Վ. Շափաղաթյան): Այստեղ 1967 թ. ձախողվել է շինարարական բոլոր ցուցանիշների կատարումը: Թերակատարման հիմնական պատճառն այն է, որ տրեստում գոյություն ունի արտադրական բազայի և ծավալների պլանային աճի անհամամասնություն: Անմխիթար վիճակում է արտադրական բազան: Մոտ 3.000 խմ երկաթ-բետոնե իրեր արտադրվում են տրեստի պոլիգոնում, որը չափազանց նեղ է և անհարմար: Բետոնն ու շաղախները պատրաստվում են ոչ մեքենայացված սարքավորումներով: Այստեղ խախտվում են տեխնոլոգիական պրոցեսների ամենատարրական կանոնները (սկսած ցեմենտի պահպանումից, վերջացրած դրա և այլ բաղադրամասերի չափաքանակով), որի հետևանքով շատ մեծ են ցեմենտի և այլ կոմպոնենտների կորուստները. ցածր է արտադրանքի որակը:

Մեքենայական պարկի պրոֆիլակտիկ-վերանորոգման բազան շատ փոքր է և չի կարող բավարարել վերանորոգման նվազագույն պահանջները: Այդ է պատճառը, որ տրեստի մեքենաներն ու մեխանիզմները վատ են վերանորոգվում և հիմնականում մաշված են: Տրեստի բեռնաթափման բազան գտնվում է քաղաքի հարավային մասում, իսկ հիմնական կառույցները՝ հյուսիսում: Բեռները տեղափոխելու համար մեքենաներն անցնում են մոտ 15—20 կմ, որը, բնականաբար, կորուստ է պատճառում: Տրեստը չունի ցեմենտի պահպանման անհրաժեշտ տարողություններ: 1968 թ. աշխատանքի արտադրողականության պլանը կատարվել է 85 տոկոսով, ընդ որում, փաստացի կատարողականի մակարդակն ավելի ցածր է, քան 1967 թ.:

Պետական-կուսակցական կարգապահության բացակայության հետևանքով տրեստում հաճախ թերակատարում են պլանները, ֆինանսական և տնտեսական խախտումները սովորական երևույթ են դարձել: Ընթացիկ տարվա անցած 9 ամիսների պլանները չի կատարել տրեստի և ոչ մի շինվարչություն: Միաժամանակ շինվարչություններում թույլ են տրվել հավելագրումներ և այլ խախտումներ:

Այսպիսի թերություններ կան նաև քաղաքի մյուս շինկազմակերպություններում: Կապիտալ շինարարության պլանների թերակատարման և ձախողման

պատճառներից մեկն էլ մասնագիտացված ենթակապալառու կազմակերպու-
թյունների անբավարար գործունեությունն է։ Երևանում այդ նպատակով գոր-
ծում են Հայսանտեխմոնտաժ, Հայէլեկտրամոնտաժ, Հայարդմոնտաժ, Հայ-
գազշին, Միութենական լիֆտմոնտաժ և այլ տրեստների քաղաքային վարչու-
թյուններն ու տեղամասերը։ Մոնտաժային ենթակապալառու կազմակերպու-
թյունները 1968 թ. իրենց ծավալների իրացման պլանը վատ չեն կատարել,
մինչ հանրապետության արդյունաբերական շինարարության մինիստրության
պլանները կատարվել են 85,5, քաղաքային տրեստներինը՝ 79 տոկոսով։

Մոնտաժային աշխատանքների պլանների թերակատարման հետևանքով
որոշ շինտրեստներում (սեփական ուժերով շինարարության պլանները կա-
տարելով հանդերձ) չեն կատարվել գլխավոր կապալառուի պլանները։ Այս-
պես, Երքիմշինտրեստը 1968 թ. սեփական ուժերով շինարարության պլաննե-
րը կատարել է 104, ենթակապալառու կազմակերպությունները՝ 63 տոկոսով։
Ըստ որում, Հայարդմոնտաժ տրեստը պլանները կատարել է 73, Հայէլեկտրա-
մոնտաժը՝ 60,4, Հայսանտեխմոնտաժը՝ 74, Արդկապմոնտաժը՝ 46,1 տոկոսով։

Այդպիսին է վիճակը նաև Երարդշին տրեստում, 1968 թ. սեփական ուժե-
րով տրեստը պլանը կատարել է 98,5, գլխավոր կապալառուի գծով՝ 92, իսկ
ենթակապալառուները՝ 84,5 տոկոսով։ 1969 թ. յոթ ամիսներին (հունվար—
հուլիս) Երարդշինի սեփական ուժերով շինարարության պլանի կատարողա-
կանը կազմել է 108, իսկ ենթակապալառուներինը՝ 84,6 տոկոս։

Հատկապես վատ է վիճակը Հայսանտեխմոնտաժ տրեստի (կառավարիչ՝
Ա. Ջորաբյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Ա. Դավթյան) օբյեկտնե-
րում։ Կան շենքեր, որոնք պետք է շահագործման հանձնվեին երրորդ եռամս-
յակում, մինչդեռ դրանց պլանները կատարված են 20—25 տոկոսով։

Մոնտաժային կազմակերպությունների աշխատանքների հիմնական թե-
րությունն է, օրինակ, գլխավոր կապալառուի հետ կազմած համատեղ աշ-
խատանքների գրաֆիկներով սահմանված ժամկետների խախտումը։ Այդ
կազմակերպությունները աշխատատեղերը ժամանակին չեն ապահովում ան-
հրաժեշտ սարքավորումներով և հարմարանքներով։ Որպես կանոն, հանձնվող
օբյեկտները չունեն անհրաժեշտ բանվորական ուժ։ Բանվորների ցածր որա-
կավորման հետևանքով չի ապահովվում աշխատանքի անհրաժեշտ արտադրո-
ղականությունը, իսկ տրեստները և վարչությունը լուրջ միջոցներ չեն կիրա-
ռում աշխատատար պրոցեսների մեքենայացման և, հատկապես, փոքր մեքե-
նայացման համար։

ՍՄԿԿ ԿԿ և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1969 թ. մայիսի 28-ի որոշման
մեջ մեծ տեղ է հատկացված շինարարությունում աշխատանքի արտադրողա-
կանության բարձրացման, մեքենաների և մեխանիզմների, աշխատաժամա-
նակի ռացիոնալ օգտագործման, ձեռքի աշխատանքի նվազեցման բնագավա-
ռում գոյություն ունեցող թերությունների վերացմանը։ Այժմ շինարարական
կազմակերպությունների համար այս հարցերը, իրոք, կենսական նշանակու-
թյուն ունեն։ Հայտնի է, որ շինարարները ևս անցել են հնգօրյա աշխատանքա-
յին շաբաթի, իսկ դա նշանակում է, որ յուրաքանչյուր աշխատող պետք է օգ-
տագործվի ռացիոնալ, թույլ չտրվեն աշխատաժամանակի կորուստներ։

Ինչպես ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, այնպես էլ շի-
նարարությունում աշխատանքի արտադրողականության բարձրացման վճռա-
կան պայմաններից մեկը աշխատատար պրոցեսների մեքենայացումն է։ Մինչ-



դեռ մեզ մոտ այդ հարցին անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում։ Բազմա-
թիվ տրեստներում հողային, բեռնման-բեռնաթափման աշխատանքները լրիվ
մեքենայացված չեն։ Իսկ ծեփագործական և ներկման աշխատանքների մեծ
մասը բոլոր տրեստներում կատարվում է ձեռքով։

Քաղաքի շինարարական կազմակերպություններում թե՛ ավտոմեքենա-
ների և թե՛ մյուս մեխանիզմների (էքսկավատորներ, վերամբարձ կռունկներ,
բուլդոզերներ և այլն) օգտագործման գործակիցը ցածր է։ Դժբախտաբար
դրանք օգտագործվում են հիմնականում մեկ, հազվադեպ նաև մեկուկես հեր-
թափոխ։ Սակայն բուն հերթափոխի ընթացքում դրանք խիստ անբավարար են
օգտագործվում։ Ոչ ռացիոնալ տեղափոխումների հետևանքով երկարում են
երթուղիները, հետևապես պակասում է ավտոերթը, որի հետևանքով
պարապուրդներ են ունենում էքսկավատորներն ու բուլդոզերները։ Մեկ էքս-
կավատորի տարեկան արտադրողականության նորման ՍՍՀՄ-ում կազմում է
120 հազար խմ (1 խմ շերեփ), մեր հանրապետության համար նորման հաս-
տատված է 73 հազար խմ, իսկ փաստական կատարումը դրանից էլ ցածր է
(50—55 հազար խմ)։ Իրենց կարողությունների կեսի չափով են գործում № 1
տրեստի բուլդոզերներն ու էքսկավատորները։

Շինարարության մեջ էական է նաև աշխատանքի վճարման ճկուն սիս-
տեմի կիրառումը, որը խթանում է աշխատանքի արտադրողականության
բարձրացմանը։ Սակայն մեր քաղաքի շատ տրեստներում աշխատավարձի
քաղաքականությունը կիրառվում է խեղաթյուրումներով, որն արհեստական
պարապուրդներ է հարուցում։ Հաճախ աշխղեկներն ու բրիգադավարները
սխալ են որոշում կատարած աշխատանքների ֆիզիկական ծավալները։ Շատ
են աշխատավարձի կանոնների խախտման դեպքերը։

Չնայած ակորդային վարձատրության առավելությանը, մինչև օրս այն
դանդաղ է ներդրվում։ Դեռ ավելին, որոշ տրեստներում իջել է դրա մակար-
դակը. այսպես, № 1 տրեստում 1968 թ. ակորդային վճարումը կազմել է 55,6
տոկոս, 1969 թ. առաջին կիսամյակում իջել է (38,7 տոկոս)։ Վիճակը նույնն
է մյուս տրեստներում։

Շինարարությունում ամենաակնառու թերությունն անորակ կառույցներն
են։ Օրինակ, 1967 թ. Երքաղսովետի կենտրոնացված կապիտալ ներդրումների
հաշվին հանձնված շենքերում այնքան անավարտ աշխատանքներ ու թերու-
թյուններ կային, որ դրանց վերացման նպատակով 1968 թ. առաջին կիսամյա-
կում ծախսվել է 2,3 միլիոն ռուբլի, որը կազմել է նույն ժամանակամիջո-
ցում կատարած շինմոնտաժային աշխատանքների ծավալի մոտ 23 տոկոսը։
1967—1969 թթ. առաջին կիսամյակում շահագործման հանձնված 283 բնա-
կելի շենքերից ոչ մեկը գերազանց գնահատական չի ստացել. լավ է գնահատ-
վել միայն 58 շենք, իսկ մնացած 225-ը ստացել են բավարար գնահատական։
Սակայն լավ գնահատականի արժանացած շենքերի տեսակարար կշիռն ընդհա-
նուր քանակի մեջ, նախորդ երկուսուկես տարիների համեմատությամբ, իջել է։

Հաճախ բնակելի շենքը շահագործման են հանձնում անավարտ, կոմու-
նալ հարմարությունների թերություններով, կաթող տանիքներով։ Ի՞նչ է
ստացվում. այն, որ աշխատավորները պետությունից ձրի ստանում են բնա-
կարան (շատ դեպքերում 2—3 սենյականոց), սակայն իրավացի իրենց դժգո-
հությունն են հայտնում վատ որակի համար։ Իհարկե, այս գործում միայն
շինարարները մեղավոր չեն։ Կառույցների որակի համար իրենց պատասխա-
նատու պետք է զգան շինանյութ արտադրողներն ու նախագծողները։ Մեր շի-

նարարների և կուսկազմակերպությունների կարևորագույն խնդիրը պետք է լինի մեծ ուշադրություն նվիրել նորակառույցների որակին։

Սոցիալիստական սեփականության պահպանության, չարաշահումների դեմ պայքարի ուժեղացման մասին ՍՄԿԿ և ՀԿԿ Կենտկոմների որոշումների կենսագործման անհրաժեշտությունը, մեր կարծիքով, խիստ զգացվում է շինարարական կազմակերպություններում։

Շինարարական կուսկազմակերպությունների խնդիրն է՝ ամենօրյա համառ և հետևողական պայքար մղել վատնում-չարաշահումների դեմ, բարձրացնել կոմունիստների և շինարարական կոլեկտիվների յուրաքանչյուր անդամի պատասխանատվությունը՝ սոցիալիստական սեփականության պահպանման գործում։ Պետք է հասնել այն բանին, որ հաշվառումն ու հաշվետվությունները լինեն պատշաճ մակարդակով, արտացոլեն իրավիճակը, շինանյութերի օգտագործումը, դրանց դուրսգրումը կատարվի գոյություն ունեցող կարգի համաձայն, ժամանակին կատարվեն նյութական արժեքների ամենամյա տնտեսական հաշվառումներ (ինվենտարիզացիա), պետական նյութական և դրամական արժեքները վստահվեն ստուգված և ազնիվ մարդկանց։

Մայրաքաղաքի կառուցման ինչպես ընթացիկ, այնպես էլ հեռանկարային նախագծումների իրականացումը հանձնարարված է քաղաքային սովետի ճարտարապետական-հատակագծման վարչությանը (պետ՝ Է. Պապյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Ա. Ղազարյան)։ Այս վարչության աշխատանքներն այսօրվա վիճակով բավարար համարել չի կարելի։

Մայրաքաղաքը (առ այսօր) չունի հաստատված գլխավոր հատակագիծ։ Այն մշակված է մինչև 1980 թ.։ Քաղաքը չունի նաև առաջնահերթ շինարարության տեղակայման հաստատված պլան. լրիվ մշակված չեն միկրոշրջանների կառուցման հարցերը։ Այս և այլ պատճառներով շինարարության համար առանձնացվող հողամասերի իրացումը ժամանակին չի սկսվում, ուշանում են Երևաննախագիծ ինստիտուտին տրվող պատվերները և այլն։

Կուսակցության և կառավարության նոր որոշումների համաձայն հնգամյա պլանը կհանդիսանա կապիտալ շինարարության պետական պլանավորման հիմնական ուղեցույցը։ Ճարտարապետական-հատակագծման վարչության և նրա կուսկազմակերպության հիմնական խնդիրն է՝ արագ, որակով և ժամանակին կազմել 1971—75 թթ. կառուցման պլանը։

Ցավոք, ճարտարապետական-հատակագծման վարչությունը տակավին չի գլխավորում քաղաքում իրականացվող շինարարության ինչպես ճարտարապետական, այնպես և հատակագծման կանխագծումների կենսագործումը։ Նախագծերի և նախահաշիվների փորձագիտության գործը բարձիթողի վիճակում է, այլապես սխալ նախագծերով չէր կառուցվի այնպիսի ունիկալ մի օբյեկտ, ինչպիսին է ճոպանուղին, որն ավարտելուց հետո չի գործում։

Ճարտարապետական վարչությունն ու Երևաննախագիծ ինստիտուտը լուրջորեն չեն հետաքրքրվում շինարարության էկոնոմիկայի հարցերով։ Առանց նախագծման տնտեսական արդյունավետության վերլուծության, անհնար է իրականացնել նախագծման աշխատանքները։

Խոսելով նախագծման, շինարարության մեջ նոր կոնստրուկցիաների ու նյութերի ներդրման և ընդհանրապես շինարարական արտադրության մասին, չի կարելի չնշել պետշինի դերը այդ գործում։ Կուսակցության վերջին որոշումներն ավելի են բարձրացնում այդ կազմակերպության նշանակությունը



կապիտալ շինարարությունում տեխնիկական քաղաքականության իրականացման և նախագծային կազմակերպությունների ղեկավարման գործում։ Սակայն, մեր կարծիքով, պետշինը դեռևս անհրաժեշտ հետևողականություն հանդես չի բերում շինարարական և նախագծային աշխատանքներում գիտության ու տեխնիկայի, արտադրության կազմակերպման առաջավոր մեթոդների արմատավորման գործում։

Կառուցվող և նախագծվող օբյեկտներում ներքին հարդարման և արտաքին ճակատների ձևավորումներում տիրում է միապաղաղություն, չկան կոլորիտային և արդյունավետ լուծումներ և դա այն դեպքում, երբ մեր հանրապետությունը հարուստ է բնական շինանյութերով։

ՍՄԿԿ ԿԿ և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշման մեջ նշված է, որ շինարարության պլանավորման իրականացման ժամանակ դեռևս չի ապահովվում կապիտալ շինարարության ծավալների և ֆինանսական ու նյութա-տեխնիկական ռեսուրսների, շինմոնտաժային կազմակերպությունների հզորությունների միջև անհրաժեշտ համամասնությունը, որը հանգեցնում է կապիտալ միջոցների փոշիացման, մեծ թվով օբյեկտների միաժամանակյա կառուցման, որոնք ապահովված չեն անհրաժեշտ ռեսուրսներով։ Կապիտալ շինարարության մեծ խնդիրների լուծման գործում, շինմոնտաժային կազմակերպությունների աշխատանքի բարելավմանը զուգընթաց, պետք է բարելավել շինարարության պլանավորման և նյութատեխնիկական մատակարարման գործը։

Հաճախ պլանավորող օրգանները շինարարական կազմակերպությունների աշխատանքների պլանում մտցնում են կառույցներ, որոնք չունեն ֆինանսներ, նախագծեր, սարքավորումներ և այլն։

1968 թ. Երքիմշին տրեստում (միայն Ս. Մ. Կիրովի անվան կոմբինատի շինարարության համար) շինարարության ծավալը կազմել է 9,63 միլիոն ռուբլի։ Դրանցից 1,5 միլիոնը իրացված է առանց նախագծերի, իսկ քացախաթթվի հիմնական արտադրության գծով սպեցիֆիկացիաների և նախահաշիվների բացակայության հետևանքով չի կատարվել մոտ 3,15 միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանք։

Պլանները կազմելիս պլանավորող օրգանները հաճախ հաշվի չեն առնում շինարարական կազմակերպության ռեալ կարողությունները։ Այսպես, 1968 թ. նոր կազմակերպված բարձրաբերձշին տրեստը պլանով շահագործման պետք է հանձներ 40 հազար քմ բնակելի տարածություն, որն, ինչպես շինարարության տևողության, այնպես էլ տրեստի կարողության առումով, անիրականալի էր։

Վերը նշված թերությունները քիչ կլինեին, եթե շինարարական, մոնտաժային, նախագծային, համապատասխան պետական հիմնարկությունների կուսկազմակերպությունները հանդես բերեին անհրաժեշտ մարտունակություն, շինարարական գործի բարելավման ոլորտում հետևողականորեն իրականացնեին կուսակցության որոշումները։ Կուսկազմակերպությունները պետք է հասնեն այն բանին, որ ամրապնդվեն շինարարական կոլեկտիվները, ստեղծվեն սոցիալիստական կոլեկտիվին հատուկ աշխատանքային ավանդույթներ։ Նրանք պարտավոր են մեծ ուշադրություն նվիրել բանվոր-ծառայողների աշխատանքային և կենցաղային պայմանների բարելավման հարցերին։ Տարօրինակ է, բայց փաստ, որ շինարարը չունի իր հանգստի, կուլտուրական ժամանցի մշտական օջախները։

Կուսկազմակերպություններում անհրաժեշտ ուշադրություն պետք է նվի-

րել աշխատանքային և արտադրական կարգապահության բարձրացման, սոցիալիստական սեփականության պահպանման հարցերին։ Նրանք չեն հասել այն բանին, որ կոլեկտիվներում անողոք պայքար մղվի աշխատանքի արտադրողականության բարձրացման, նոր տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, որակի բարելավման և ինքնարժեքի իջեցման համար։

Ինչպես նշեցինք, կուսակցության և կառավարության որոշման համաձայն, առաջիկայում (1971 թ.) շինարարական կազմակերպություններում պետք է իրականացվի տնտեսական ռեֆորմը։ Կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ տնտեսական ռեֆորմի նախապատրաստական աշխատանքների իրականացման գործում ամենօրյա օգնություն ցույց տալ շինարարներին։ Այս տեսակետից մենք բավական փորձ ենք կուտակել արդյունաբերական ձեռնարկություններում տնտեսական ռեֆորմի արմատավորման ժամանակ։

Կուսակցական, սովետական, արհմիութենական կազմակերպությունների պարտքն է՝ շինարարության պլանավորման և նյութական խթանման ամրապնդման նպատակով նախապատրաստական բազմակողմանի աշխատանք ծավալել, մոբիլիզացնել բոլորին՝ կապիտալ շինարարության աշխատանքների արմատական բարելավման, հնգամյա պլանի ժամկետից շուտ կատարման համար։

Մայրաքաղաքի կուսկազմակերպությունը, ինչպես միշտ, այս անգամ ևս կանգնած կլինի կուսակցության որոշումների կատարման առաջամարտիկների շարքերում և կանի ամեն ինչ քաղաքում կապիտալ շինարարության առավել բարելավման, տեղ գտած թերությունների վերացման համար։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԲԱՐՁՐ ԿՈՉՈՒՄԸ ՊԱՐՏԱՎՈՐԵՑՆՈՒՄ Է

Ն. Ն. ՄԵԼՔՈՆՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի կուսակցական-կազմակերպական
բաժնի վարիչի տեղակալ

Իրենց մեծ նպատակը պարզ գիտակցող սովետական միլիոնավոր աշխատավորներն առաջ են գնում, նվաճելով նորանոր բարձունքներ։ Նրանց կոմունիզմի ճանապարհով առաջ է տանում փորձված և պանծալի ավանգարդը — Լենինի մեծ կուսակցությունը։

Կոմունիստները մարդկային հասարակության վերափոխողներն են, համարձակ նորարարներ։ Նրանք անծանոթ, չփորձված ճանապարհներով առաջ տարան բանվոր դասակարգին և բոլոր աշխատավորներին։ Ռուսաստանը դարձավ այն երկիրը, որը հարթեց դեպի սոցիալիզմ տանող ուղին։ Կոմունիստները անվեհերության և հերոսության օրինակներ ցույց տվին հին աշխարհի մութ ու ռեակցիոն ուժերի դեմ մղվող մարտերում, մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։ Կոմունիստն առաջավոր մարտիկ է՝ զինված մարքս-լենինյան գաղափարներով։ Նրա ուժը ժողովրդական մասսաների հետ ունեցած անխզելի կապի մեջ է, հասարակության զարգացման օրենքների իմացության, նորի զգացումի մեջ։ Կուսակցական կազմակերպությունները և կոմունիստները ջերմորեն պաշտպանում են յուրաքանչյուր արժեքավոր նախաձեռնություն, գլխավորում են քաղաքի և գյուղի աշխատավորների հայրենասիրական մտահղացումների արմատավորման գործը։

Կոմունիզմի կառուցման ընթացքում նորի զգացումը մեծ ուժ է, որով պետք է օժտված լինի կուսակցական յուրաքանչյուր կազմակերպություն, յուրաքանչյուր կոմունիստ։ Այդ է պահանջում կյանքը, այդ են պահանջում մեր ժողովրդի շահերը։ Կոմունիստի բարձր կոչումը կուսակցության յուրաքանչյուր անդամի պարտավորեցնում է լինել պահանջկոտ իր անձի նկատմամբ, չլինել ինքնագոհ և չգոռոզանալ, ամեն օր հանրագումարի բերել կատարած աշխատանքի արդյունքները, քննադատորեն գնահատել այն, զգայուն կերպով ունկնդրել ներքևից եկող քննադատությունը, ժամանակին վերացնել պրակտիկ աշխատանքներում նկատված թերություններն ու սխալները։

Կոմունիստի և սովետական մարդու բարոյական բարձր հատկությունները

վառ դրսևորվեցին սոցիալիզմի համար մղված պայքարում, հայրենական
մեծ պատերազմի թեժ ճակատամարտերում։ Դրանք հիանալի կերպով ամեն-
ուրեք դրսևորվում են նաև մեր ժամանակաշրջանում, կուսակցության ու կա-
ռավարության առաջադրած հսկայական խնդիրների կենսագործման համար
մղվող պայքարում, կոմունիզմի կառուցման մեր հերոսական աշխատանքներ-
րում։ Կուսակցության վարած համակողմանի գաղափարական-դաստիարակ-
չական աշխատանքի շնորհիվ կոմունիստները, մեր քաղաքացիները մի կողմ են
նետել հին աշխարհի բարոյական հնոտին, վերափոխվել են հոգեպես։ Աշխարհ
է եկել բարոյաքաղաքական նոր հատկություններով օժտված սովետական
մարդը։
Կոմունիզմի համար մղվող պայքարը սովետական մարդկանց գործու-
նեությունը մարմնավորել է նոր բովանդակությամբ, ազնվացրել նրանց, հաս-
ցրել է բարոյական այնպիսի բարձրության, որն անհնար է մեկ ուրիշ հասա-
րակարգի պայմաններում։ Բարձր գաղափարայնություն, անսահման սեր հայ-
րենիքի նկատմամբ, նվիրվածություն կոմունիզմի մեծ գործին, աշխատասի-
րություն, դժվարությունները հաղթահարելու համառ կամք ու կարողություն,
կոլեկտիվիզմի և սոցիալիստական համակեցության կանոնների հետևողական
պահպանում— ահա թե ինչն է բնորոշում կոմունիստի, սովետական մարդու
բարոյական կերպարը։ Այդ վսեմ հատկությունները նրա մեջ դաստիարակվում
են մանկությունից՝ դպրոցում և ընտանիքում, զարգանում ու բյուրեղանում են
հանրօգուտ աշխատանքում, հասարակական գործունեության պրոցեսում, սո-
վետական մարդկանց ապրելակերպի հիման վրա։
Կոմունիստը, սովետական ազնիվ մարդը հասարակական պարտքի մարդ
է, որը հասարակության շահերը, սոցիալիստական պետության շահերը ամեն
բանից բարձր է դասում։ Եվ դա բնական է, նա իրեն զգում է որպես երկրի
տերը, նրա փառապանծ պատմության կերտողը, կոմունիստական մեծ շինա-
րարության ակտիվ մասնակիցը։ Կոմունիստների, սովետական մարդկանց սո-
ցիալիստական գիտակցությունը, նրանց բոցաշունչ հայրենասիրությունն
իրենց արտահայտությունն են գտնում ամենից առաջ աշխատանքի և հան-
րային սեփականության նկատմամբ նրանց վերաբերմունքի մեջ։ Կոմունիզմի
կառուցման մեծ գործերն անսահման հնարավորություններ են ստեղծել բոլոր
մարդկանց համար աշխատանքում խիզախելու, ոգեշնչվելու նորանոր ստեղ-
ծագործություններով։ Սովետական մարդիկ, ուր էլ որ աշխատելիս լինեն,
իրենց պարտքն են համարում անընդհատ բարձրացնել աշխատանքի արտա-
դրողականությունը, թողարկվող արտադրանքի որակը, իջեցնել նրա ինքնար-
ժեքը։ Հենց դրանում է արտահայտվում իր, ամբողջ հասարակության և իր
սոցիալիստական պետության համար աշխատող ազատ աշխատավորների
բարոյական կերպարը։ Մեր երկրում կատարված սոցիալ-տնտեսական բոլոր
վերափոխությունները, մեր ժողովրդի նյութական և հոգևոր ուժերի ժամանա-
կակից մեծ առաջադիմությունն անխզելիորեն կապված են սովետական մար-
դու անձնվեր աշխատանքի ու նրա բարձր բարոյական կերպարի հետ։
Հերոսությունն աշխատանքում մասսայական երևույթ է դարձել մեզ մոտ։
Հոկտեմբեր-
Ղափանի հանքագործները, Լենինականի տեքստիլագործները, Հոկտեմբեր-
յանի, Արարատի խաղողագործներն աշխատանքային հերոսության վառ օրի-
նակներ են ցույց տալիս մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի,
հոբելյանական այդ նշանավոր տարեթվի պատվին վերցված սոցիալիստական
պարտավորությունների կատարման գործում։



Միայն բարձր բարոյականությամբ օժտված մարդիկ կարող էին կատա-
րել աշխատանքային այնպիսի սխրագործություններ, ինչպիսին կատարեց Ղա-
փանի պղնձահանքային կոմբինատի № 7—10 հանքի կոմունիստական աշխա-
տանքի բարձր կոչմանն արժանացած հանքի ողջ կոլեկտիվը, որի առջևից ըն-
թանում են հանքի կոմունիստները։ Հանքի կուսակցական կազմակերպության
ակտիվ ղեկավարությամբ, անկուսակցական հանքագործների և օժանդակ
բանվորների ու ինժեներա-տեխնիկական անձնակազմի աշխատանքի շնորհիվ,
սաորերկրյա աշխարհի տարբեր հորիզոնականներում իր նախորդը չունե-
ցող պայթեցումներ կազմակերպվեցին և այդպիսով հարուստ հանքաքարի մեծ
պաշարներ կուտակվեցին, որով նպաստավոր պայմաններ ստեղծվեցին Ղա-
փանի պղնձահանքային կոմբինատի նորմալ աշխատանքի համար։ Այդ բա-
նում իրենց լավ գործերով աչքի ընկան կոմունիստներ՝ Է. Դանիելյանը (հան-
քի վարիչ), Մ. Եսայանը (ինժեներ), Ա. Հակոբջանյանը (հանքափորների բրի-
գադավար), Ի. Կուրբանովը (հանքագործ), Յու. Շալաևը (հանքագործ), Ս.
Պետրոսյանը (անկուսակցական հանքագործ), Ժ. Անտոնյանը (անկուսակցա-
կան բրիգադավար)։ Հանքագործների աշխատանքային սխրանքն աննկատ
չմնաց։ № 7—10 հանքի կոլեկտիվը նվաճեց ՀՍՍՀ Մինիստրների սովետին կից
գունավոր մետալուրգիայի վարչության և ճյուղային արհմիության հանրապե-
տական կոմիտեի միջհանքային փոխանցիկ դրոշը և դրամական առաջին կար-
գի պարգև՝ 3000 ռուբլի։
Հանքի կոլեկտիվը, ոգևորված ձեռք բերած հաջողություններով, խնդիր է
դրել պետական բոլոր առաջադրանքները կատարել ժամկետից շուտ, իսկ
հնգամյակի պլանային առաջադրանքները՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամ-
յակի տարեդարձի օրերին։
Վաստակաշատ լեռնագործներն առաջին անգամը չէ, որ իրենց վերցրած
պարտավորությունները պատվով են կատարում։ Հոբելյանական մրցություն-
ները գնալով ավելի մեծ թափ են ստանում ոչ միայն Ղափանի հանքերում,
այլև հանրապետության արդյունաբերական, շինարարական և տրանսպորտի
բոլոր կոլեկտիվներում, բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում։
Լենինականի տեքստիլ կոմբինատի կուսակցական կազմակերպություննե-
րը, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները կազմակերպ-
չական մեծ աշխատանքներ են ծավալել՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը
նշանավորելու նորանոր լավ գործերով։ Կոմբինատի կոլեկտիվը վերջին մեկու-
կես տարվա ընթացքում շուրջ 12 անգամ պարգևատրվել և խրախուսվել է
արտադրական լավ ցուցանիշների համար։ Նրա առաջավոր մարդիկ միշտ
ապահովում են իրենց վրա դրված առաջադրանքների բարձր ցուցանիշներով
կատարումը։
Առաջնորդի ծննդյան հարյուրամյակը լավ գործերով են դիմավորում
Առաջնորդի ծննդյան հարյուրամյակը լավ գործերով են դիմավորում
կոմբինատի առաջավորներ Ն. Վարդանյանը (կոմունիստ ջուլհա-
կուհի, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ), որն արտադրական առաջա-
դրանքները սիստեմատիկ կատարում է 120—130 տոկոսով, ակտիվ մասնակ-
ցում հասարակական աշխատանքներին, բոլորի հարգանքը վայելում, Ա.
Մկրտչյանը (կոմունիստ, գլխավոր մեխանիկ), որը շուրջ 40 տարի է, ինչ աշ-
խատում է կոմբինատում, պատրաստել է տասնյակ որակյալ կադրեր, ռացիո-
նալիզատորական տասնյակ առաջարկությունների հեղինակ է։ Նրա առա-
ջարկությունների ներդրումից կոմբինատն ստացել է հազարավոր ռուբլու
պայմանական օգուտ։

Մեր մարդկանց բարոյա-քաղաքական նոր հատկությունները բացառիկ ուժով են դրսևորվում սոցիալիստական գյուղատնտեսության վերելքի համար մղվող պայքարում։ Օր-օրի մեր սովետական բարոյականության իմաստը դրսևորող ինչպիսի՜ շնորհակալ նյութ են տալիս գյուղատնտեսության առաջավորները, դաշտերում բարձր բերքի համար պայքարող տասնյակ հազարավոր լավագույն հայրենասերները։

Վերջերս հանրապետական մամուլի էջերում ինֆորմացիա հրապարակվեց այն մասին, որ Հոկտեմբերյանի և Արարատի շրջանների գյուղական աշխատավորությունը ժամկետից շուտ կատարեց խաղողի տարեկան պետական առաջադրանքի և վաճառքի պլանը։ Էջմիածնի շրջանի կոլտնտեսությունները և սովխոզները հանրապետությունում առաջինը զեկուցեցին բանջարեղենի վաճառքի ու հանձնման տարեկան առաջադրանքները կատարելու մասին։

Գյուղի աշխատողները, չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, եզրափակվող տարում աչքի ընկնող աշխատանք կատարեցին հացահատիկի լավ բերք աճեցնելու համար։ Ստեփանավանի, Հոկտեմբերյանի, Էջմիածնի, Արարատի շրջանների հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը կազմեց 20—27 ցենտներ։ Աշխատանքները եռում են կոլտնտեսային ու սովխոզային դաշտերում, աշխատավորները մեծ ջանքեր են գործադրում Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակն աշխատանքային հաջողություններով նշանավորելու, երկրի շտեմարանը մուտքագրելու ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ։

Կոմունիզմի համար մղվող պայքարում ամեն օր ծնվում են մասսաների ստեղծագործական ինքնագործունեության նոր ձևեր, աշխատանքի նոր մեթոդներ։ Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ տեսնել և խրախուսել այդ նորը, մասսաների հայրենասիրական նախաձեռնությունը լայն կերպով տարածել ամենուրեք և հասնել այն բանին, որ քաղաքական և արտադրական վերելքը դառնա մեր առօրյան։

Հայրենասիրական այն պաթոսը, որը համակել է մեր ժողովրդին, մեզ հրամայաբար թելադրում է անողոք և հետևողական պայքար մղել մեր հասարակության բարքերին ու բարոյական նորմերին խորթ ու անհարիր պորտաբուծության, ծուլության, գործալքության և տարբեր բնույթի խարդախությունների դեմ։ Սովետական մարդիկ չեն կարող հաշտվել նման իրողությունների հետ, որպիսիք անհամատեղելի են կոմունիզմ կառուցողի կոդեքսի բարոյական սկզբունքներին։

Աշխատանքի և սոցիալիստական սեփականության նկատմամբ առանձին մարդկանց գռփողական վերաբերմունքի մեջ մեր ժողովուրդը տեսնում է անցյալի զզվելի մնացուկը։ Ուստի, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները պետք է մշտական պայքար մղեն այդ արատավոր երևույթի դեմ, իրենց ամբողջ դաստիարակչական աշխատանքն ուղղեն աշխատանքային գիտակցական կարգապահության ամրապնդմանը, աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ մարդկանց դաստիարակեն կոմունիստական ոգով։ Կուսկազմակերպությունների հիմնական խնդիրն է՝ բոլոր աշխատավորներին դաստիարակել կուսակցական և պետական ամուր կարգապահության, բարձր պահանջկոտության, թերությունների նկատմամբ անհաշտվողականության ոգով։

Բայց, ինչպես ցույց տվին առանձին շրջկոմների (Աշտարակի, Գորիսի) և սկզբնական կուսկազմակերպությունների (Երևան քաղաքի Շահումյանի շրջա-



նի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատ) գործունեության ուսումնասիրությունները և սկզբնական կուսկազմակերպությունների ներկա հաշվետու-ընտրական ժողովները՝ վերջինների գործունեության ոլորտում դեռևս լուրջ թերություններ կան։ Օրինակ մետաքսի կոմբինատում անհրաժեշտ պայքար չի տարվում կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման համար, թույլ է ծավալված քննադատությունն ու ինքնաքննադատությունը, առանձին կոմունիստներ երբեմն մոռանում են իրենց կանոնադրական պարտականությունները, թույլ են տալիս պաշտոնական դիրքի չարաշահումներ, ոտնձգություններ են անում սոցիալիստական սեփականության նկատմամբ և այլն։ Այստեղ կուսկոմիտեն հոգ չէր տանում կուսկազմակերպությունների հետ գործարար կապը ուժեղացնելու համար, անբավարար ուշադրություն էր դարձնում կոլեկտիվի քաղաքական-գաղափարական դաստիարակության հարցերին, չէր ապահովում ձեռնարկության ադմինիստրացիայի գործունեության կուսակցական վերահսկողության ֆունկցիայի կենսագործումը։ Կոմբինատում վատ էր դրված կադրերի ընտրության և նրանց դաստիարակության գործը, յուրաքանչյուր տարի նոր ընդունված բանվորների մեկ երրորդը հեռանում է աշխատանքից, մեծ թիվ են կազմում անհարգելի պատճառով աշխատանքից բացակայելու ժամերը։

Կոմբինատը տարիներ շարունակ չի կատարում պետական առաջադրանքները։ Ընթացիկ տարում արտադրանքի որակի վերահսկողության տեսչությունը երկու անգամ արգելել է կոմբինատի ամբողջ արտադրանքն առաքել ֆոնդատերերին՝ որակի խիստ ցածր լինելու պատճառով։

1968 թ. և ընթացիկ տարվա 6 ամիսների ընթացքում կոմբինատում արձանագրվել է շուրջ 390 դեպք, երբ վաճառքի հանված ապրանքը հետ է վերադարձվել՝ որպես վատորակ, որի համար կոմբինատը մեծ գումարի տուգանք է վճարել. բավական է ասել, որ տուգանքները միայն վերջին երկուսուկես տարում կազմել են 2.638 հազար ռուբլի։ Նյութերի և հումքի հաշվառման վատ դրվածքի և նրա օգտագործման վրա անհրաժեշտ հսկողություն չսահմանելու պատճառով կոմբինատում թույլ է տրվել տասնյակ տոննա ամենաբարձր որակի մետաքսաթելի վատնում։ Վերջին մեկուկես տարում երեք անգամ աճել է ստանդարտին չհամապատասխանող արտադրանքը։ Կոմբինատի ղեկավարությունը, օգտվելով կուսկազմակերպության վերահսկողության թույլ դրվածքից, 1968 թվին 700 հազար մետր տարբեր ասորտիմենտի գործվածք է բաց թողել հանրապետությունից դուրս գտնվող տարբեր առևտրական կազմակերպությունների, որոնք ստանալիք ֆոնդ չեն ունեցել, իսկ, դրան հակառակ, այն կազմակերպությունների մի մասը, որ պետք է պայմանագրային կարգով իրեն հասանելիք արտադրանքն ստանար, չի ստացել։ Պայմանագրային պարտավորությունների խախտումների համար կոմբինատը վճարել է 250 հազար ռուբլի տուգանք։ Կուսակցական կոմիտեն հաճախ ձևացրել է, որ ինքը չի տեսնում այդ արատներն ու աղաղակող թերությունները, չի ցանկացել մեղավորներին պատասխանատվության կանչել։ Կուսկոմիտեի քարտուղարը և անդամները լիբերալ վերաբերմունք են ցուցաբերել հանցավորների նկատմամբ։

ՀԿԿ Կենտկոմի բյուրոն քննության առնելով Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի կուսկոմիտեի հաշվետվությունն այն մասին, թե կուսկազմակերպությունն ինչպես է կենսագործում ՍՄԿԿ Կենտկոմի և ՀԿԿ Կենտկոմի որոշումները սոցիալիստական սեփականության պահպանման մասին,

նշեց, որ նա անբավարար է պայքարել այդ որոշումները մինչև վերջ կենսագործելու համար, որ կուսկոմիտեն, նրա քարտուղարը թերացել են աշխատանքում։ Այս ամենի համար Կենտկոմի բյուրոն Վ. Կարապետյանին հեռացրեց կուսկոմիտեի ազատված քարտուղարի պարտականություններից և կոմբինատի մի շարք ղեկավար աշխատողների կուսակցական հարցերը հանձնարարեց ՀԿԿ Կենտկոմին կից կուսակցական հանձնաժողովին՝ նրանց կուսակցական խիստ պատժի ենթարկելու։

Կոմբինատում գործերի անբարեհաջող վիճակի համար պակաս պատասխանատվություն չի կրում նաև Շահումյանի կուսշրջկոմը, անձամբ նրա՝ արդյունաբերության ու շինարարության հարցերով զբաղվող քարտուղար Ա. Հարությունյանը։ Ինչպես պարզվել է, Շահումյանի կուսշրջկոմի բյուրոն, բաժինները անհրաժեշտ պահանջկոտություն չեն ցուցաբերել կոմբինատի ղեկավարների նկատմամբ, չեն հետաքրքրվել այդ խոշորագույն ձեռնարկությունում կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության վիճակով։ Թույլ է եղել պահանջկոտությունը կոմունիստների ու ղեկավար կադրերի նկատմամբ. կուսակցության ու կառավարության դիրեկտիվների կենսագործման վերահսկողությունը, կենդանի կապը, գործարար ղեկավարությունը հաճախ փոխարինվել են գրություններ և որոշումներ ուղարկելով։

Կուսակցական աշխատողը քաղաքական ղեկավար է։ Նրա անմիջական պարտքն է հաճախակի լինել սկզբնական կուսկազմակերպություններում, լավ իրազեկ լինել ձեռնարկությունների և հիմնարկությունների գործերի բուն վիճակին, մարդկանց սովորեցնել աշխատելու ճիշտ մեթոդներով, փաստերի վերլուծման հիման վրա։ Կուսակցական կազմակերպությունները պետք է ավելի մեծ ուշադրություն դարձնեն ներկուսակցական, կուսակցական-քաղաքական աշխատանքների ոճի ու մեթոդների կատարելագործման վրա, հասնեն այն բանին, որ ղեկավարությունը միշտ լինի կոնկրետ և կենդանի, մշտապես հենված կուսակցական և անկուսակցական մասսաների լայն զանգվածների ակտիվության վրա։

Մեր հանրապետության կուսակցական, սովետական և տնտեսական օրգանները շատ գործ են կատարել և կատարում են ավելի շատ նյութական արժեքներ ստեղծելու, սոցիալիստական արդյունաբերության նյութատեխնիկական բազան ամրապնդելու համար։ Հպարտանալու շատ բան ունենք աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում ձեռք բերած հաջողություններով։ Այսուհանդերձ, մենք չենք կարող աչք փակել և չտեսնել դաստիարակչական աշխատանքի բնագավառի թերություններն ու չլուծված հարցերը։

Սովետական ժողովուրդն ակնբախ հաջողություններով եզրափակելով ութերորդ հնգամյակի չորրորդ տարին, առաջընթաց քայլ կատարեց կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ճանապարհին։ Այժմ նա ոտք է դրել հնգամյակի եզրափակիչ տարին, որը պատմության մեջ կմտնի որպես Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի տարի։ Ավելի մեծ ու պատասխանատու են այդ հոբելյանական տարվա խնդիրները։ Կուսակցական կազմակերպությունները պարտավոր են աշխատավորների շրջանում ավելի ուժեղացնել քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, լայնորեն պրոպագանդել Վ. Ի. Լենինի հերոսական կյանքն ու գործունեությունը, նրա տեսական ժառանգությունը, լենինյան ոճն ու ապրելակերպը և դրանով իսկ՝ սովետական մարդկանց ստեղծագործական ուժերը մոբիլիզացնել հոբելյանական տարվա վիթխարի խնդիրները հաջող լուծելու համար։

# ՄԱՍՍԱՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է

Ռ. Ա. ԱՍԱՏՐՅԱՆ

Մարդու առողջ կենցաղի, նրա կոմունիստական դաստիարակության գործում անգնահատելի է ֆիզիկական կուլտուրայի, սպորտի դերը։ Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը պահանջում էր կենսագործել երիտասարդության համընդհանուր, պարտադիր ֆիզիկական դաստիարակություն. ֆիզիկական դաստիարակությունը և հոգեկան զարգացումը նա դիտում էր օրգանական միասնության մեջ։ Կ. Ցետկինի հետ ունեցած զրույցում Լենինն ընդգծել է, որ երիտասարդությանը հարկավոր է առողջ սպորտ-մարմնամարզություն, լող, ֆիզիկական վարժություններ, որոնք պետք է հմտորեն զուգակցել հոգեկան բազմակողմանի հետաքրքրասիրությունների հետ։

Ահա թե ինչու սխալ են այն ընկերները, որոնք նեղացնելով, հասարակացնելով ֆիզիկական դաստիարակության նշանակությունը՝ ֆիզկուլտուրային շարժումը համարում են անհատների սպորտային գործունեություն։ Մինչև վերջերս էլ սպորտային որոշ կազմակերպություններ իրենց ջանքերը գործադրում էին միայն մի քանի սպորտսմեններ պատրաստելու, մրցանակներ, գավաթներ, մեդալներ շահելու համար, աչքաթող անելով ֆիզկուլտուրայի մասսայականության հարցերը։

Ինչ խոսք, այսուհետև ևս պետք է պայքարել տարբեր մրցություններում, սպարտակիադաներում, օլիմպիական խաղերում առաջնություն գրավելու, կարգային սպորտսմենների թիվն ավելացնելու համար, բնավ չմոռանալով ֆիզկուլտուրայի մասսայականության մասին։ Ֆիզիկական կուլտուրային պետք է տրվի համաժողովրդական բնույթ։ Անհրաժեշտ է վճռականորեն բարձրացնել նրա դերը, զարգացման մակարդակը համապատասխանեցնել սովետական հասարակության զարգացման ներկայիս պահանջներին։ Այլ կերպ ասած՝ անհրաժեշտ է խելացի կազմակերպել մարդկանց աշխատանքն ու հանգիստը, կենցաղում լայնորեն արմատավորել ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայական ձևերը, պատշաճ ուշադրություն նվիրել առողջապահական միջոցառումներին, արտադրական մարմնամարզությանը, տուրիզմին, դաստիարակել ֆիզիկապես ամուր, հոգեպես ուժեղ, անձնազոհ, մեր հայրենիքի ազատությունը, անկախությունը պաշտպանելու պատրաստ սովետական քաղաքացիներ։

Անտարակույս, սպորտային շարժումը նշանակալից հաջողությունների է հասել։ Մեծ հռչակ են վայելում մեր հանրապետության այնպիսի փառաբանված սպորտսմեններ, ինչպիսիք են՝ Սերգո Համբարձումյանը, Ռուբեն Մանուկյանը, Հրանտ Շահինյանը, Ալբերտ Ազարյանը, Վլադիմիր Ենգիբարյանը, Իգոր Նովիկովը, Ալբերտ Ազնաուրյանը, Նորիկ Մուշեղյանը, Ռուբեն Վարդանյանը, Հարություն Քեհեյանը և շատ ուրիշներ։ Կոփված ու լավ

մարզված մեր այս սպորտսմենները, եղբայրական հանրապետությունների մյուս ճանաչված սպորտսմենների հետ միասին, փառքով են պսակել սովետական սպորտի պատիվը աշխարհի տարբեր մրցումներում։

Սակայն այստեղ մեր նպատակն է խոսել ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայականության մասին, որը, մեր կարծիքով, ֆիզկուլտուրային շարժման ամենակարևոր հարցերից է, որով և պայմանավորված է այդ շարժման ողջ հաջողությունը։ Առանց մասսայականության հնարավոր չէ բարձրացնել սպորտային վարպետությունը, առաջինով պայմանավորված է երկրորդը։

Ֆիզիկական կուլտուրան համաժողովրդական դարձնելու կարևոր պայմանը՝ տեղերում կուսակցական կազմակերպությունների, արհմիությունների, արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարների, սովետների, կոմերիտմիության, մինիստրությունների, գերատեսչությունների համատեղ, կազմակերպված ու ծավալուն գործունեությունն է։ Այս իմաստով ուշագրավ շատ բան կա Կիրովականում։ Դեռևս 1967 թ. կուսակցության քաղաքային կոմիտեի պլենումը քննության առավ ֆիզկուլտուրայի և սպորտի բարելավման հարցը։ Ընդունվեց համապատասխան որոշում և դրա կենսագործման ուղղությամբ ձեռնարկված միջոցառումները ցույց են տալիս, որ քաղաքի կուսակցական կազմակերպությունը լրջորեն մտահոգված է բնակչության և, հատկապես, երիտասարդության ֆիզիկական դաստիարակությամբ։ Քաղաքում գնալով աճում է ֆիզկուլտուրայով և սպորտով զբաղվողների թիվը. յուրաքանչյուր չորրորդ բնակիչն այնտեղ ընդգրկված է ֆիզկուլտ կոլեկտիվներում։ Մեծ աշխատանք է տարվում սպորտի բոլոր ձևերը համապատասխան բազաներով ապահովելու ուղղությամբ։ Ամեն տարի կազմակերպվող մասսայական միջոցառումներին՝ «Լոռվա ձմեռ» տոնին, միջգործարանային և դպրոցականների սպարտակիադաներին, հազարավոր ֆիզկուլտուրնիկների և ֆիզկուլտուրային աշխատողների հետ մեկտեղ, մասնակցում են նաև հիմնարկ-ձեռնարկությունների, քաղսովետի, կուսակցության ու կոմերիտմիության քաղաքային կոմիտեների ղեկավարները։

Ֆիզկուլտուրան կենցաղում արմատավորելու ուղղությամբ լուրջ աշխատանք է կատարված նաև Հոկտեմբերյանի շրջանում. պատահական չէ, որ առանձին կոլտնտեսությունների ու սովխոզների ֆիզկուլտուրային կոլեկտիվներ ինչպես հանրապետական, այնպես էլ միութենական մրցումներում միշտ առաջնակարգ տեղեր են գրավում։

Սակայն հաջողությունների կողքին առավել ցայտուն են երևում հանրապետության ֆիզկուլտուրայի և սպորտի բնագավառում եղած թերությունները. ոչ բոլոր տեղերում են պատշաճ սրտացավություն հանդես բերում ֆիզկուլտուրային շարժման նկատմամբ, որի հետևանքով այդ ասպարեզում դեռևս կան չլուծված շատ հարցեր։

Վիճակագրական տվյալներով մեր հանրապետությունում ֆիզկուլտուրայով և սպորտով զբաղվում են մոտ 417 հազար մարդ։ Իրականում շատ տեղերում այդ թիվն ուռճացված է, որը հատկապես ցայտուն է երևում գյուղական շրջաններում կատարված ուսումնասիրություններից։ Այսպես. ներկայացված տվյալներով Թալինի շրջանի Ալագյազի սովխոզում ֆիզկուլտուրայով ու սպորտով զբաղվում են 260 մարդ, մինչդեռ իրականում զբաղվում են ընդամենը 60 հոգի։ Ստեփանավանի շրջանի Կաթնաղբյուր, Կույբիշև, Լեջան, Յաղդան գյուղերում տարիներ շարունակ ոչ մի մրցություն, ընկերական հանդիպում չի անցկացվել, ֆիզկուլտուրային կոլեկտիվներն այստեղ գոյություն ունեն միայն ձևականորեն, բայց հաշվետվություններում ամեն ինչ բարվոք է։ Եվ, պատահական չէ, որ Ստեփանավանի շրջանը վերջին երեք տարում տվել է ընդամենը 9 կարգային սպորտսմեն։

Մասսայական սպորտի զարգացման բնագավառում դեռևս շատ թերալույծ հարցեր կան Լենինականում, Դիլիջանում, Ղափանում, Մարտունիում, Վարդենիսում և այլ քաղաքներում ու շրջաններում։

Ֆիզկուլտուրային շարժման մասսայականության արդասաբեր գործոններից է ֆիզկուլտ-սպորտային աշխատանքների արմատական բարելավումը դպրոցներում, պրոֆտեխնիկական ուսումնարաններում, միջնակարգ և



բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Սպորտասիրությամբ մարդուն պետք է համակել մանուկ հասակից. դպրոցներում են աճում ներկայիս սպորտսմենների ապագա փոխարինողները։ Վերջին տարիներին, իրոք, մեծ աշխատանք է տարվել դպրոցականների ֆիզիկական դաստիարակության ուղղությամբ։ Այդ են ցույց տալիս վերջերս Երևանում անցկացված համամիութենական 11-րդ դպրոցական սպարտակիադայի արդյունքները։ Հայաստանի պատանի սպորտսմենները 21 ձևից մրցանակային տեղեր գրավեցին 13 սպորտաձևում, 16 դպրոցական նվաճեցին սպարտակիադայի չեմպիոնի կոչում, իսկ 29-ը արժանացան արծաթյա և բրոնզե մեդալների։

Բայց երբ համեմատում ենք կատարված աշխատանքը եղած հնարավորությունների հետ, արդյունքներն անբավարար են։ Գաղտնիք չէ, որ շատ պատանիներ ու աղջիկներ, միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո էլ, չգիտեն լողալ, դահուկներով և չմուշկներով սահել, ծանոթ չեն սպորտային շատ խաղերի։ Այդ, ամենից առաջ, հետևանք է այն բանի, որ ժողովրդական կրթության շատ ղեկավարներ պատշաճ հոգատարություն չեն ցուցաբերում դպրոցականների ֆիզիկական դաստիարակության նկատմամբ։ Հանրապետության դպրոցների մի մասում դեռևս անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծված ֆիզկուլտուրայի ժամերը ինչպես հարկն է անցկացնելու համար։ Չնայած վերջին տարիներս զգալի աշխատանք է կատարվել դպրոցների սպորտ-հրապարակների և սպորտ-դահլիճների կառուցման ուղղությամբ, բայց, այնուամենայնիվ, այդ դեռևս անբավարար է, որովհետև հանրապետության դպրոցների միայն 37 տոկոսն է ապահովված սպորտ-դահլիճներով, 9,2 տոկոսը՝ կոմպլեքսային սպորտ-հրապարակներով. մինչդեռ Ուկրաինայում այդ թվերը համապատասխանաբար կազմում են 38 և 28,3 տոկոս, ՌՍՖՍՀ-ում՝ 40, 20,2, իսկ ՍՍՀՄ միջինը՝ 35 և 20,5 տոկոս է։

Մյուս կարևոր հարցը՝ դա ութամյա և միջնակարգ դպրոցները ֆիզկուլտուրայի մասնագետ կադրերով ապահովելն է։ Հանրապետության մի շարք դպրոցներում ֆիզկուլտուրայի ժամերը պարապում են ոչ-մասնագետները։ Այսպես, հանրապետության 19 շրջաններում ու քաղաքներում կատարված ուսումնասիրությունից պարզվել է, որ այդ տեղերում աշխատող 571 ֆիզկուլտուրայի ուսուցիչներից միայն 192-ն ունեն մասնագիտական կրթություն. այսպես՝ Ապարանի շրջանում ֆիզկուլտուրայի 44 ուսուցիչներից՝ միայն 3-ը, Արթիկում՝ 55-ից 6-ը, Ղափանում՝ 37-ից 5-ը և այլն։ Այդ է պատճառը, որ III—X դասարաններում սովորողների ընդամենը 40,3 տոկոսն է ընդգրկված ֆիզկուլտ կոլեկտիվներում, մինչդեռ Միության շատ տեղերում՝ 75—80 տոկոսը։

Առանց մասնագետ կադրերի խոսք անգամ չի կարող լինել ո՛չ մասսայական սպորտի, ո՛չ սպորտային վարպետության բարձրացման մասին։ Այս կարևոր խնդիրը պահանջում է արագ լուծում։ Այժմ ամեն տարի ֆիզկուլտուրայի ինստիտուտի 50—60 շրջանավարտներ անցնում են մանկավարժական աշխատանքի։ Իսկ դա քիչ է։ Մեր կարծիքով, անհրաժեշտ է ավելացնել ֆիզկուլտուրայի ինստիտուտ ընդունվողների թիվը, որպեսզի հնարավոր լինի տարեկան առնվազն 80—90 հոգու օգտագործել մանկավարժական աշխատանքում։ Մեծ օգուտ կարող է տալ ամռան ամիսներին ֆիզկուլտուրայի դասատուների կարճատև դասընթացների կազմակերպումը, մինչև կլրացվի այդ առարկայի դասատուների պակասը։

Ֆիզկուլտուրայի մասսայականությունն ապահովելու համար շատ կարևոր է թե ո՛վ է ղեկավարում այդ գործը, ո՛ւմ է վստահված այն. այսինքն՝ դրա հաջողությունը պայմանավորված է ֆիզկուլտուրայի բնագավառում աշխատող կադրերով, նրանց տեսական ու գործնական պատրաստականությամբ, նախաձեռնությամբ։ Մենք ունենք բավական աշխատողներ, որոնք տարիներ շարունակ իրենց ողջ փորձն ու կարողությունն ի սպաս են դրել հանրապետությունում ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացմանը. շատերն ըստ արժանվույն գնահատվել են կուսակցության ու կառավարության կողմից. միայն անցյալ տարի նրանցից 12-ն արժանացան կառավարական շքանշանների ու մեդալների, իսկ վերջին երկու տարում 16 հոգի՝ հանրապետության ֆիզկուլտուրայի և սպորտի վաստակավոր գործչի կոչման։ Սակայն, ցավոք, հանդիպում ենք նաև այնպի-

նի աշխատողների, որոնց համար սպորտը հեշտ կյանք վարելու միջոց է։ Պարզ է, որ այդպիսի մարդկանց խորթ են բարձր քաղաքացիական պատասխանատվությունը, պարտքի զգացումը։

Լենինականը տարիներ շարունակ եղել է հանրապետության՝ սպորտային լավ ավանդույթներ ունեցող քաղաք. սակայն վերջին տարիներս հանրապետության հավաքական թիմերում լենինականի սպորտսմենները հատուկենտ էին։ Լավ բազաներ ունենալով հանդերձ, այստեղ քիչ էին կազմակերպվում մրցումներ, հանդիպումներ։ Տարվա բոլոր եղանակներին սպորտային դահլիճները, հրապարակները անգործության էին մատնված։ Պատճառն այն էր, որ քաղաքում ֆիզկուլտուրայի ղեկավարությունը հանձնված էր անձեռնհաս մարդկանց, որոնք չէին զբաղվում մասսայական սպորտի հարցերով, նրանց աշխատանքում ավելի շատ ձևամոլությունն էր իշխում, քան իրական գործը։ Ճիշտ վարվեց կուսակցության քաղաքային կոմիտեն՝ փոխելով ֆիզկուլտուրայի քաղաքային կոմիտեի ղեկավարությունը։ Այս բնագավառի ղեկավար աշխատողների ընտրությունը ևս պետք է լինի մտածված, բծախնդիր խստությամբ։ Աճող սերնդի դաստիարակությունը պետք է վստահել իրենց գործին նվիրված, բարոյապես մաքուր, նախաձեռնող, իրենց տեսական գիտելիքները մշտապես հարստացնող, քաղաքականապես զարգացած կուլտուրական մարդկանց։

Երկար ժամանակ է, որ մեր հանրապետությունում տևականորեն ետ են մնում թեթև ատլետիկան, լողը, հեծանվային սպորտը և մի շարք այլ ձևեր։ Երևանն ունի Միության լավագույն հեծանվահրապարակներից մեկը, բայց այդ սպորտաձևով զբաղվողներ գրեթե չկան։ ՍՍՀՄ ժողովուրդների արհմիութենական սպարտակիադաների և այլ խոշոր սպորտային միջոցառումների ժամանակ, այդ սպորտաձևերից հավաքական թիմերը կոմպլեկտավորելիս, մեծ դժվարությունների հանդիպեցինք համապատասխան սպորտսմեններ չունենալու հետևանքով։ Այդ իսկ պատճառով այս տարի ՀԱՄԽ-ի սպարտակիադայում մեր հավաքական թիմերը թեթև ատլետիկային և լողին մասնակցեցին ոչ լրիվ կազմով։ Նման վիճակով առաջնային տեղերի մասին մտածելն անգամ ավելորդ է։

Մասսայական ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման հետ անխզելիորեն կապված է դրանց տեխնիկական զինվածությունը, նյութական ապահովվածությունը։ Կենցաղում արմատավորել ֆիզկուլտուրան և սպորտը, նշանակում է մասսայականորեն կառուցել պարզ տիպի սպորտային հրապարակներ և դաշտեր։ Իհարկե, որտեղ հնարավորություններ կան, պետք է ստեղծել նոր սպորտային բազաներ ու կառուցվածքներ։ Այս ասպարեզում մեծ անելիքներ ունեն նախագծող կազմակերպությունները։ Չէ՞ որ մինչև այժմ չկան քիչ թե շատ լավ նախագծված ամբողջական սպորտային կառուցվածքներ, հատկապես գյուղական վայրերում։ Հաճախ նախագծվում և կառուցվում են բնակավայրեր՝ առանց ֆիզկուլտուրայի և սպորտի համար նախատեսվող հարմարությունների։ Իհարկե, մեկ սպորտային պալատով կամ մեկ սպորտային կոմպլեքսով մասսայականության պրոբլեմը չի լուծվի։ Պետք է կառուցել շատ և էժանագին հրապարակներ և այլ հարմարություններ, առաջին հերթին՝ ուսումնական հաստատություններում։ Անհրաժեշտ է պատասխանատվության ենթարկել շինարարական այն կազմակերպություններին, որոնց մեղքով տարիներ շարունակ չեն իրացվում ֆիզկուլտուրայի և սպորտի կառույցների համար նախատեսված գումարները և մեծ ուշացումով են շահագործման հանձնվում օբյեկտները։

Այժմ, երբ տեղերում կոնկրետ պլաններ են մշակվում եղած թերությունները վերացնելու և ֆիզկուլտուրան առավել մասսայական դարձնելու համար, կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ բազմակողմանի օգնել սպորտային կազմակերպություններին՝ կենսագործելու, թղթի վրա չթողնելու այդ լավ կանխագծումները։

Արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում և ուսումնական հաստատություններում ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման ասպարեզում մեծ անելիքներ ունեն տնտեսական ու հասարակական կազմակերպությունները։ Նրանց ղեկավարները պատասխանատվության խոր զգացումով պետք է անեն հնարավոր ամեն ինչ, համապետական այդ գործը պատշաճ մակարդակի հասցնելու համար։

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՏԵՂԱԲԱՇԽՄԱՆ ՏՆՏԵՍԱ-ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՄՈԴԵԼԻ ԳՈՐԾՈՆՆԵՐՆ ՈՒ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐԸ

Պլանավորելիս և տնտեսական հետազոտություններ կատարելիս մաթեմատիկայի ու հաշվիչ տեխնիկայի կիրառման բնագավառում առավել բարդ հարցերից մեկը արտադրաուժերի տեղաբաշխումն է։ Այդ ասպարեզում առայժմ փորձ է կուտակվում արդյունաբերության առանձին ճյուղերի, ավելի ստույգ՝ դրանց կազմի մեջ մտնող միասեռ արտադրությունների ենթաճյուղերի տեղաբաշխման ուղղությամբ։ Մինչդեռ խնդիր է դրված տնտեսա-մաթեմատիկական մեթոդների կիրառումով հանձնարարականներ նախապատրաստել, որպեսզի 1975 և 1980 թթ. արդյունաբերության նորակառույցները Հայաստանում տեղաբաշխվեն ռացիոնալ կերպով։

1966 թ. ՍՍՀՄ պետպլանին կից արտադրաուժերն ուսումնասիրող խորհուրդը հրապարակեց «1971—1980 թթ. արտադրաուժերի տեղաբաշխման գլխավոր սխեմայի մշակման մեթոդիկան» փաստաթուղթը, որում օրինակ է բերված ցեմենտի արդյունաբերության, ազոտի պարարտանյութի արտադրության, ներշրջանային մասսայական սպառման արդյունքների արդյունաբերության վերաբերյալ տեղեկությունը։

Ցեմենտի արդյունաբերությանը վերաբերող օրինակներում փոխադարձ պայմանավորված գործոններ են ձեռնարկությունների կարողությունների զանազան տարբերակների ազդակները և արտադրանքի ինքնարժեքի մակարդակն ու կապիտալ ներդրումների տեսակարար կշիռն այդ ձեռնարկություններում։ Առավելագույնի չափանիշ է ընդունված ամբողջական ծախսերի նվազագույնը։ Ազոտային պարարտանյութերի համար՝ արտադրության տեղաբաշխման խնդիրը լուծվում է արտադրության ոլորտում նվազագույն ծախսեր կատարելու միջոցով ցածր ինքնարժեքով արտադրանք տալ սպառողին։ Մասսայական սպառման արտադրանքի վերաբերմամբ բերված օրինակում հաշվի է առնվում արտադրության հնարավոր կարողությունների ընտրությունը և տեղաբաշխման տարբերակային կետերը՝ ամբողջական ծախսերի հաշվառումով։

Արդյունաբերության նորակառույցները տեղաբաշխելիս ցուցանիշների այդ շրջանակով սահմանափակվել չի կարելի։ Ներհանրապետական տեղաբաշխման խնդիրն առավել ևս հետապնդում է ավելի լայն նպատակ՝ տվյալ օբյեկտի համար լավագույն կետի, հանրապետության շրջանների տնտեսական մակարդակների համահավասարեցումը նրանց տեղական յուրահատկություններին, զարգացած քաղաքների չափից ավելի աճի կասեցումը, աշխատանքային և բնական պաշարների ռացիոնալ օգտագործումը, հանգուցակետերի մասնագիտացումը՝ տվյալ տեղում գոյացող արտադրությունների կոոպերացմամբ և այլն։

Մեր կարծիքով արդյունաբերության բոլոր նորակառույցների տեղաբաշխման համար (հաշվի առնելով վերը շարադրված հիմնական նպատակը և տեղաբաշխման խնդիրները) անհրաժեշտ է հանրապետության շրջանների

զարգացման հիմնական ուղղությունների վերաբերյալ ընդհանուր հանձնարարականների հիման վրա մաթեմատիկայի «լեզվին» փոխադրել ավելի լայն շրջանակի գործոններ ու ցուցանիշներ՝ դրանց համեմատ ընտրելով նոր արտադրությունների տեղաբաշխման կետեր։

Ընդ որում, հաշվի են առնվում, մի կողմից՝ յուրաքանչյուր շրջան-կետի համար նրան բնորոշ այն առանձնահատկություններն ու պայմանները, որոնք նպաստում են արտադրությունների տեղաբաշխմանը կամ սահմանափակում այն, մյուս կողմից՝ օբյեկտների տեղաբաշխման շրջան-կետերին ներկայացվող պահանջները։ Այդ պայմանների ու պահանջների զուգակցումը կհեշտացնի տեղաբաշխման լավագույն կետի ընտրությունը։

Այն գործոններն ու պայմանները, որոնք նպաստում են արտադրությունների տեղաբաշխմանը կամ սահմանափակում այն շրջան-կետերի համար, կարող են լինել՝

1. Աշխատանքային ռեսուրսները (տղամարդ, կին), որոնք պետք է նկատի առնվեն նոր արտադրությունների համար.
2. Երաշխավորված ջրապահովվածությունը (հաշվի առնելով գետի ստորին հոսանքում հոսքի ջրասպառումը և դեբիտի հավասարաչափությունը).
3. Հանքային հումքի արդյունաբերական պաշարների առկայությունը ծանր արդյունաբերության և շինարարության ճյուղերի համար.
4. Գյուղատնտեսության մասնագիտացումը և գյուղատնտեսական հումքի պաշարները՝ երկրորդ ստորաբաժանման վերամշակող ձեռնարկությունների համար.
5. Առկա և հեռանկարային տրանսպորտային կապը (ըստ տեսակների).
6. Շրջանի և կետի յուրահատկությունները, որոնք նպաստում են տեղաբաշխմանը կամ սահմանափակում այն (բնության պահպանությանը վերաբերող պահանջները, տնտեսության մասնագիտացումը, կոոպերացնելու ցանկալիությունը և այլն)։

Հատուկ ուշադրություն պետք է դարձնել հանքային հումույթի պաշարների գնահատմանը։ Տնտեսական օգտագործման համար այս կամ այն հանքավայրի օգտակարության հարցը պետք է լուծել լեռնա-երկրաբանական հանքակուտակման պայմանները նկատի ունենալով։ Օրինակ, բարդ հիդրոգեոլոգիան, հաստ ծածկաշերտը, ոչ միասեռ հանքատեսակները կարող են այնքան բարձրացնել հումքի ինքնարժեքը, որ գործնականորեն բոլորովին ձեռնտու չլինի դրանց մշակումը։ Վճռական գործոն է հանդիսանում պաշարների մեծությունը և հումքի որակը։ Մեր կարծիքով, լեռնահանքային ձեռնարկություններ կառուցելու վայրն ընտրելիս հանքավայրում հումքը մշակելու համար պետք է հաշվի առնել հետևյալ ելակետային տվյալները.

1. Համախառն արտադրանք.
2. Կարևորագույն արտադրանքը բնեղենով (հատկապես լեռնահանքային արդյունաբերության և բազմատոննաժ արտադրություն ունեցող ձեռնարկությունների համար).
3. Արդյունաբերական-արտադրողական անձնակազմի թիվը.
4. Օբյեկտի արժեքը և կապիտալ ներդրումները հաշվետու ժամանակաշրջանում (մեկ տարվա համար).
5. Արտադրության հատուկ պահանջները (ըստ տեսակի, տրանսպորտի, հումքի, էներգետիկայի, վնասակար թափոնները դեն նետելու պայմանները և այլն)։

Գիտենալով, մի կողմից՝ շրջանների այն պայմանները, որոնք անխուսափելի են դարձնում արտադրությունը, մյուս կողմից՝ արտադրության պահանջներն իր իսկ տեղաբաշխման համար, փոխադարձ համապատասխանությամբ կարելի է գտնել տեղադրման լավագույն տարբերակներ։

Բայց էլեկտրահաշվիչ մեքենաների (ԷՀՄ) միջոցով միևնույն ձեռնարկության համար կարելի է ընտրել տեղաբաշխման մի քանի միանման կետեր և, ընդհակառակը, միևնույն կետը ծանրաբեռնել չափից ավելի շատ օբյեկտներով։ Այդպիսի դեպքերում անհրաժեշտ կլինի ամենալավագույնի ընտրությունը կատարել, ելնելով առավել նպատակահարմարությունից, հաշվի առնելով տեղաբաշխման նպատակը, տնտեսական մակարդակի համահավասարեցու-



մը, ետ մնացող շրջանները հասցնելով միջինհանրապետական մակարդակին։

Սակայն դա չի նշանակում, թե բոլոր շրջաններն էլ անպայման պետք է հասնեն միջինհանրապետական մակարդակին, առավել ևս համախառն արտադրանքի կամ բնակչության մեկ շնչին ընկնող հիմնական արտադրաֆոնդերով, քանի որ այդ ցուցանիշների մեծության վրա մեծ ազդեցություն են թողնում արտադրության կառուցվածքն ու բնույթը։ Տեղաբաշխելով, օրինակ, մեքենաշինության կամ թեթև արդյունաբերության ձեռնարկությունները, կստանանք առավել մեծ համախառն արդյունք և նվազագույն արտադրաֆոնդեր կամ, տեղաբաշխելով էլեկտրակայան, մասնավորապես պետական էլեկտրակայան, կստանանք նվազագույն համախառն արտադրանք և զբաղվածություն, բայց առավել մեծ հիմնական ֆոնդեր։

Բայց, քանի որ շրջանի տնտեսական մակարդակի աճը նպաստում է նաև նրա բնակչության բարեկեցության բարձրացմանը, ապա հիմնական չափանիշը կարող է լինել նաև այդ բնակչության զբաղվածությունը։ Հետևաբար, նոր օբյեկտների (ներառյալ սպասարկման ոլորտում զբաղվողներինը) կառուցման հարցը լուծելիս պետք է հաշվի առնել նաև աշխատող ձեռքերի ռեզերվի հարցը։

Տեղաբաշխվող արդյունաբերական ձեռնարկությունների «հատուկ պայմանների» տեսակետից կպահանջվի հաշվի առնել ճյուղային առանձնահատկությունները, իսկ մի շարք դեպքերում կարող է գերադասություն տրվել նաև պակաս շահավետ կառույցներին։ Օրինակ՝

ա) **Էլեկտրակայաններ**։ (ՀԷԿ). Հայաստանի մի շարք տնտեսական գոտիներում ջրի սուր պակասության պայմաններում էլեկտրակայանների համար գետերի հոսանքների միակցումը սխալ կլիներ, թեև դրանցից կստացվեր ամենից շատ դեբիտ և ջրի առավելագույն ճնշում։ Այդպիսի ուղին գետի վերին հոսանքներում սպառողներին կզրկեր ջրի հարաբերականորեն անհատույց օգտագործման (բնակչություն, ոռոգում, արդյունաբերություն), ինչպես նաև ավելի ապահովված գոտիներից ջուրն անապահով գոտիներ փոխադրելու հնարավորությունից։ ՀԷԿ-երի տեղադրումը գետերի հոսանքների միակցող կետերում կարող է թույլատրվել միայն այն դեպքում, երբ հնարավոր լինի ջուրը շրջադարձ հոսքերով օգտագործել և երբ կապահովվեն ո՛չ միայն գոյություն ունեցող, այլև հեռանկարային պահանջները վերին հոսանքներում, ինչպես տվյալ, այնպես էլ հարևան ջրատնտեսական գոտում։ Դա, առաջին հերթին, վերաբերում է Դեբեդ, Արփա, Որոտան գետերին։ ՀԷԿ-երի ամենալավագույն տեղաբաշխումը պայմանավորվում է տեղում համապատասխան գոլորշու առկայությամբ։ Որոշ դեպքերում ՋԷԿ-ի առկայությունը նույնիսկ կարող է հանդիսանալ այնպիսի գործոն, որը խիստ բարենպաստ է արտադրության համար։ ԱԷԿ-ի տեղադրումը, առաջին հերթին, ենթարկվում է բնության պահպանմանը։ Այստեղից էլ դրանց շինարարության նպատակահարմարությունը խիտ բնակչություն ունեցող գոտիներում և զարգացած գյուղատնտեսական արտադրություն ունեցող շրջաններում։ Հարկավոր է նախապատվություն տալ նաև այն շրջաններին, որոնք ավելի նվազ չափով են ենթակա երկրագնդի սեյսմիկ երևույթներին։ Պետք է ջանալ ԿԷԿ (կոնդենսացիոն էլեկտրակայան) կառուցել այնպիսի շրջաններում, որոնք էլեկտրաէներգիայի խոշոր սպառողներ են, որպեսզի հանգամանքը կնպաստի կորուստների իջեցմանը հաղորդման գծերում։ Բոլոր տիպի էլեկտրակայանների համար, բնականաբար, պահանջվում է ջուր։ Հենց այստեղ էլ վերապահություն անենք, որ ամբողջությամբ վերցրած ջրամատակարարման տեսակետից կատարվող տեղաբաշխումը պահանջում է հարցը քննարկել կոմպլեքսային ձևով։

բ) **Մետալուրգիա**։ Հիմնականում պետք է շարունակել հանքաքարի հումքի հայտնագործումը։ Ընդ որում, որոշ բացառություն կկազմի թեթև մետաղների մետալուրգիան (ալյումին և այլ էլեկտրատար արտադրություններ), որոնք, որպես էլեկտրահոսանքի մշտական սպառողներ, գերադասում են տեղաբաշխվել էլեկտրակայաններին մոտիկ։ Այս դեպքում վերանում է էլեկտրահոսանքը հիմնական աղբյուրից ընդունիչին և այնուհետև՝ նորից հիմնական աղբյուրին հաղորդելու անհրաժեշտությունը։ Այդ կնպաստի էլեկտրաէներգիայի կորուստների նվազեցմանը։ Հայաստանի կոնկրետ պայմաններում

կպահանջվի ոսկու հանքի արդյունաբերության հարստացուցիչ ձեռնարկությունները տեղաբաշխել տրանսպորտի տեսակետից ավելի պակաս շահավետ վայրերում, եթե ֆլոտացիայի պրոցեսում ցիանկալիում է կիրառվում։ Զոդի հանքավայրի շրջանում (նույնը և Մարմարիկ գետահովտի շրջանում) հարստացուցիչ ֆաբրիկաների վնասակար նյութերը կարող են թունավորել Սևանա լիճը և Մարմարիկ—Հրազդան գետերը։ Ուստի, մեր կարծիքով, արդյունաբերության այս ճյուղում վճռականը բնության պահպանությունն է, թեկուզ դա պահանջի տրանսպորտի տոննա-կիլոմետր աշխատանքի զգալի ավելացում։ Այդ գործոնը որոշ չափով պահանջում է նաև հաշվի առնել պղնձամոլիբդենի հանքաքար վերամշակող ձեռնարկությունների տեղաբաշխումը։

գ) **Քիմիական արդյունաբերություն:** Հաշվի առնելով, որ արդյունաբերության այս ճյուղի արտադրության սկզբնական պրոցեսներում օդի մթնոլորտն ապականվում է, և արդյունաբերական ջրերով աղտոտվում ու թունավորվում են հոսող ջրերը, գերադասելի է, որ հիշյալ ճյուղի օբյեկտները տեղաբաշխվեն խոշոր քաղաքներից ու ինտենսիվ հողագործության վայրերից հեռու, եթե, իհարկե տեղում չի ապահովվում աղտոտված ջրերի կատարյալ մաքրումը և թունավոր նյութերի վնասազերծումը։ Նուրբ, օրգանական և կենցաղային քիմիան, եթե դրանց արտադրությունների տոննաժը փոքր է, կարելի է տեղաբաշխել նաև այնպիսի կետերում, որոնք երկաթուղային կապ չունեն։

դ) **Շինանյութերի արդյունաբերություն:** Այս արդյունաբերության օբյեկտները տեղաբաշխելիս հարկավոր է զուգակցել երկու հիմնական հատկանիշ՝ ու հանքային հումքի և տեղական խոշոր սպառողի առկայությունը։ Առաջին պայմանը հայտնի է, երկրորդը կարող է ի հայտ գալ միայն ամբողջ տեղաբաշխումն ավարտելուց հետո։ Դրանում է կայանում կենտրոնացած շինարարության գոտու որոշման խնդրի բարդությունը։ Արդեն իսկ գոյացած խոշոր հանգույցների համար ինչ-որ չափով կարելի է գնահատությունից ելնել, իսկ նոր զարգացող շրջանների համար այդ մեթոդն ավելի պակաս չափով է ընդունելի։ Այստեղ էական սխալներ կատարելը հնարավոր է։ Բնական է, որ դա վերաբերում է տեղական շինանյութերին, բայց ոչ այնպիսի նյութերի, ինչպես, ասենք, ցեմենտի արտադրությունն է, խոշոր քարհանքերը, պատի մեջ լցվող թեթև, մարմարների և այլ նյութերի հանույթի համար, որոնք նախատեսված են հանրապետության բոլոր սպառողներին, իսկ մի շարք դեպքերում՝ հանրապետությունից դուրս մատակարարելու, ընդհուպ արտասահմանյան երկրներ արտահանելու համար։ Այդպիսի դեպքերում շրջանի տեղական սպառումը երկրորդական է։

ե) **Ապակու արդյունաբերություն:** Մեր կարծիքով, ապակու արտադրությունը պետք է կազմակերպվի այնպիսի սկզբունքով, որ այն օգտագործի համասեռ հումք։ Դրանով կկրճատենք կապիտալ ներդրումները և շահագործման ծախսերը՝ միավորված օժանդակ տնտեսության գծով, կհեշտացնենք մասնագետ կադրերի համալրումը։ Այստեղ նկատի ունենք «ապակու քաղաքը» Արզնու տափարակի վրա։ Մյուս գործոնն այդ ապակու հումքի աղբյուրի և ապակե տարաների սպառման վայրի փոխադարձ մոտիկությունն է։ Դրա համար որպես նպատակակետ է ընտրված Հոկտեմբերյանի շրջանի Արտենիսի ավազուտների գոտին, որը խոշոր գինեգործական, պահածոների արտադրության կենտրոն է, և Ջերմուկը, որը հանքաջրերի նշանակալի լցման վայր է։

զ) **Անտառային և փայտամշակման արդյունաբերություն:** Այս ճյուղի արտադրությունը, ինչպես ենթադրում ենք, ճիշտ տեղակայված է փայտանյութի պատրաստման ու դրանից կահույքի դետալներ արտադրելու և գործարաններում հավաքելու համար։ Առաջինները նպատակահարմար է տեղաբաշխել անտառային զանգվածների մոտ, իսկ երկրորդները՝ խիտ բնակչություն ունեցող վայրերում, այսինքն՝ խոշոր քաղաքներում։

է) **Սննդարդյունաբերություն:** Տեղաբաշխման երկու կողմ ունի։ Առաջին՝ տեղական գյուղատնտեսական մթերքների (պտուղների, խաղողի, խորդենու, ծխախոտի) վերամշակումը և հանքային հումքի (աղի, հանքային ջրերի և այլն) օգտագործումը։ Այդ արտադրությունները պետք է կազմակերպվեն գյուղատնտեսական մասնագիտացմանը համապատասխան, և հանքային պաշարների վայրերում։ Երկրորդ՝ տեղական սպառման համար ինչպես տե-



ղական, այնպես էլ դրսից բերված հումքից արտադրվող արտադրանքներ (հաց թխելը, գարեջուր պատրաստելը, հրուշակեղենի արտադրանքները և այլն). դրանց ձեռնարկությունները պետք է տեղադրել սպառման շրջաններին մոտ, այսինքն՝ տարաբնակեցված բնակչություն ունեցող վայրերում և այլն։

ը) **Մեքենաշինություն և թեթև արդյունաբերություն:** Այս ճյուղերի համար էական նշանակություն չունեն տեղաբաշխման շրջանի պայմանները։ Դրանք առավել չափով կապիտալ ներդրումներ են պահանջում և ավելի աշխատատար են։ Թեթև արդյունաբերությունը կարող է ներգրավել կանանց։ Նույնը կարելի է ասել մեքենաշինության որոշ ենթաճյուղերի մասին, առավել ևս Հայաստանի պայմաններում, որտեղ ծանր մետաղատար մեքենաշինությունը, որպես կանոն, քիչ է զարգացած։ Ըստ այդ հատկանիշների, մեքենաշինությունն ու թեթև արդյունաբերությունն այնպիսի ճյուղեր են, որոնք աշխատանքի հաշվեկշիռը եզրափակում են, իսկ տղամարդու և կնոջ զբաղվածությունը համահարթում։ Առավել նպատակահարմար է այդ ճյուղի ձեռնարկությունները տեղադրել այն գոտիներում, ուր զարգացած են լեռնահանքային արդյունաբերությունը, մետալուրգիան, շինանյութերի արդյունաբերությունը, ուր գերազանցապես գործադրվում է տղամարդու աշխատանքը, ինչպես նաև այն շրջանները, ուր բնական գործոնների հետևանքով (հանքային և գյուղատնտեսական ռեսուրսների սահմանափակություն) անհրաժեշտ պայմաններ չկան արտադրության մյուս ճյուղերի զարգացման համար, բայց կան աշխատանքային ռեսուրսներ, որոնք ավելի պակաս չափով են մասնակցում միջշրջանային միգրացիային։

Այսպիսով, արդյունաբերական օբյեկտների տեղաբաշխման համար միշտ չէ, որ բավարարում է մեկ, թեկուզև այնպիսի մի կարևոր գործոնի առկայությունը, ինչպիսիք աշխատանքային ռեսուրսներն են։ Կարող է առաջարկություն արվել նոր արտադրություն տեղակայելու մասին այնպիսի մի կետում, որտեղ տվյալ օրվա դրությամբ առհասարակ բնակչություն չկա կամ ծայրահեղորեն աննշան է բնակչությունը։ Այդպես էր Քաջարանում, Դաստակերտում, Ագարակում. այդպես է Զոդում, այդպես կլինի Շորժայում, ուր թեև մինչև արդյունաբերության զարգացումը բնակչություն չկար, բայց հանքային պաշարների առկայությունն անհրաժեշտաբար թելադրում է խոշոր ձեռնարկությունների շինարարություն՝ բազմահազար մարդկանց վերաբնակեցնելով այդ վայրերում։

Այդ կապակցությամբ ծագում է այնպիսի մի հարց, ինչպիսին միջշրջանային վերաբնակեցումն է։

Չէ՞ որ արդյունաբերության առաջարկված տեղաբաշխման յուրաքանչյուր կետի համար աշխատանքային ռեսուրսները որոշվում են բնակչության բնական աճով, նկատի ունենալով նրա հեռանկարային զբաղվածությունը հասարակական տնտեսության մյուս ճյուղերում։ Ընդ որում, կարող է հաշվի առնված չլինել այն պակասը, որ անհրաժեշտ է մյուս արտադրությունների զարգացումն ապահովելու համար, որոնք շինարարությունն սկսելու պահին բնակչություն չունեին։ Ընդ որում, թեև հանրապետության մասշտաբով վերցրած աշխատանքի բալանսն ընդհանուր առմամբ կհամընկնի, բայց առանձին կետերում կարող է ճեղքվածք առաջանալ։ Այդ հարցը կարելի է լուծել, ըստ մեզ, հետևյալ ձևով։

| | I շրջան | II շրջան | III շրջան |
|---|---|---|---|
| Աշխատանքային ռեսուրսներ | 100 | 150 | 200 |
| Զբաղված է արդյունաբեր. դուրս | 20 | 50 | 70 |
| Ազատ մնացորդ | 80 | 100 | 130 |
| Կանխավ պահանջվում է | 150 | 20 | 30 |
| Տարբերություն | —70 | +80 | +100 |
| Վերաբնակության գործակիցը | | $\frac{70}{80+100}$ | 38,9 |
| Բացարձակ վերաբնակություն | +70 | —31 | —39 |
| Մնում է արդյունաբեր. զարգացման համար | — | +49 | +61 |
| Ամբողջ զբաղված. արդյունաբերության մեջ | 150 | 69 | 91 |

Տեղաշարժում կատարելիս կարևոր է, որ թույլ չտրվեն սխալներ էներգատարողության և ջրատարողության չափանիշը որոշելիս։ Օրինակ, 1 տոննա ցեմենտի արտադրության համար պահանջվում է 5 խոր. մետր ջուր, իսկ 1 տոննա ացետիլցելյուլոզի արտադրության համար՝ 800 խոր. մետր ջուր։ Բայց ենթադրենք, որ ցեմենտի արտադրության հեռանկարային մասշտաբը 200 անգամ գերազանցում է ացետիլցելյուլոզի արտադրության ծավալը։ Համապատասխանաբար «ոչ ջրատար» արտադրությունն իր տեղաբաշխման համար կպահանջի 25 տոկոսով ավելի ջուր։ Նույնը վերաբերում է նաև էլեկտրատարողությանը (այդ մասին ավելի մանրամասն ասված է մեր Քանակական քիմիայից դեպի որակական քիմիա հոդվածում—(«Промышленность Армении», 1968, № 11)։

Ահա ներհանրապետական արդյունաբերության տեղաբաշխման այն բարդ պրոբլեմի ակնհայտորեն ոչ լրիվ շրջանակը, որ ենթակա է լուծման։ Այդ պրոբլեմը տվյալ բնագավառում ծագում է թե՛ հետազոտման սովորական եղանակի համար, թե՛ էլեկտրոնային-հաշվիչ տեխնիկայի կիրառման դեպքում։ Բայց բոլոր ելակետային տվյալների առկայության ժամանակ այդ պրոբլեմն ավելի արագ կլուծվի տնտեսա-մաթեմատիկական մեթոդով։ Այսօր դա դեռ էքսպերիմենտ է։ Հարկավոր է անցնել այդ ժամանակաշրջանը, թերևս սկզբում ստացված արդյունքներն ստուգելով փորձնական տրամաբանական գնահատումով, իսկ ավելի լավ է թեկուզև մի քանի կետերի համար վերահսկիչ հաշվարկ կատարել սովորական մեթոդով։

Այդ հետազոտման առաջին և, թերևս, առավել բարդ փուլն այն գործոնների և ցուցանիշների գիտականորեն հիմնավորված սահմանումն է, որոնք անհրաժեշտ են ծրագրման համար։ Հաջորդ փուլը կհանդիսանա հաշվարկման համար ընդունված բոլոր ցուցանիշների բացարձակ նշանակության հաստատումը և ալգորիթմի կազմումը։ Այնուհետև, ըստ հաղորդված ծրագրի և դրա ցուցանիշների, մեքենան պետք է լուծի տեղաբաշխման խնդիրը, իսկ տրված պատասխանները փորձնականորեն գնահատվեն և վերահսկողաբար ստուգվեն։ Այդ ամբողջ բարդ պրոցեսն ավարտվելուց հետո արդյունքները կարող են հանձնարարվել արմատավորման համար։

Այստեղ սահմանափակվեցինք այն գործարանների ու ցուցանիշների շրջանակը որոշելով, որոնք նպաստում են կամ սահմանափակում արտադրության տեղաբաշխումը նրանց ճյուղային առանձնահատկություններով, ինչպես նաև, որոշ նկատառումներով, արդյունքների ամփոփման ու գնահատման մասում՝ արտադրաուժերի տեղաբաշխման հիմնական նպատակի ապահովման տեսակետից։

Կ. Խ. ՎԵՐՄԻՇԵՎ
Տնտեսական գիտությունների թեկնածու
Հայկական ՍՍՀ պետպլանին առընթեր
էկոնոմիկայի և պլանավորման ինստիտուտի
արտադրողական ուժերի տեղաբաշխման
բաժնի վարիչ

# ՔԱՂԱՔԱՅԻՆ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԱՃԸ ԵՎ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԱԶԳԱՅԻՆ ԵԿԱՄՏԻ ՍՏԵՂԾՄԱՆԸ

Հայաստանում սովետական կարգերի հաղթանակը նոր դարագլուխ բացեց երկրի արտադրաուժերի բուռն զարգացման համար։ Արմատական տեղաշարժեր կատարվեցին հանրապետության հասարակական-տնտեսական կառուցվածքում։ Սոցիալիստական արտադրության աննախընթաց վերելքը բարելավեց բնակչության նյութական և կենցաղային պայմանները, նվազեցրեց բնակչության մահացությունը, կայունացրեց բնական աճը, փոխեց քաղաքային և գյուղական բնակչության կառուցվածքը։ 1913—1968 թթ. ՍՍՀՄ-ում քաղաքային բնակչության թիվն ավելացել է 4,6 անգամ, այդ թվում՝ Ադրբեջանական ՍՍՀ-ում՝ 4,4, Վրացական ՍՍՀ-ում՝ 3,3, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 12,6 անգամ։

Սովետական Հայաստանի քաղաքային բնակչության ինտենսիվ վերելքը քաղաքներում, քաղաքատիպ ավաններում, արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, կապի, ինչպես և ոչ արտադրական ոլորտի արագ զարգացման արդյունք է։

Բացի բնական գործոնից, քաղաքային բնակչության աճի վրա ազդել են հանրապետության տնտեսության մեջ կատարված ներքին տեղաշարժերն ու դրսի միգրացիան։ 1. Քաղաքային բնակչությունը լրացվել է գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման շնորհիվ գյուղական բնակչության մի մասի քաղաքային բնակավայրեր տեղափոխվելու և մշտական բնակություն հաստատելու միջոցով, 2. Միության այլ հանրապետություններից մասնագետ կադրեր գալու հաշվին, 3. մի շարք գյուղեր քաղաքների վերածվելու կամ քաղաքների հետ միացնելու, 4. հայրենադարձության միջոցով։ Ըստ հրապարակված աղբյուրների, Սովետական Հայաստան են վերադարձել ընդամենը 177 հազար հոգի՝ Հայկական ՍՍՀ ներկա բնակչության 7,7 տոկոսը։

Հայաստան վերադարձած հայերի հիմնական զանգվածը բնակվել է քաղաքներում, քաղաքատիպ ավաններում, մասնավորապես մայրաքաղաքում։

Գյուղերը քաղաքների վերածվելու շնորհիվ ձևավորվել են գունավոր մետալուրգիայի հնագույն կենտրոններ Ալավերդին, Ղափանը, Քաջարանը և ուրիշներ։ Գյուղերը քաղաքներին միացնելու հաշվին բնակչության աճի բնորոշ օրինակ է Երևանը։ Սովետական իշխանության տարիներին նրա սահմաններն անընդհատ ընդարձակվելու շնորհիվ մայրաքաղաքի շրջագծի մեջ են վերցվել երեք տասնյակից ավելի բնակավայրեր։ Դրանց բնակչության ճնշող մասն այժմ աշխատում է քաղաքային տնտեսության համար բնորոշ ճյուղերում՝ ար-

դյունաբերության, շինարարության մեջ և ոչ արտադրական ոլորտում, այսինքն՝ գյուղականից նրանք վեր են ածվել քաղաքային բնակչության, առանց փոխելու իրենց բնակավայրերը։ Այսպես, Աբովյան (Քանաքեռ), Շահումյան քաղաքատիպ ավանները և Շահումյանի շրջանի մեջ մտնող 11 գյուղ Երևանին միացնելու կապակցությամբ 1959 թ. բնակչության թիվն ավելացել է մոտ 10 տոկոսով (92,2 հազար մարդ), մեծ է նաև մեխանիկական աճը։ 1939—1959 թթ. (չհաշված պատերազմի տարիները) այն կազմել է 144 հազար մարդ կամ ամբողջ բնակչության 27,3 տոկոսը (Ереван за 1959—1963 гг. Статистический сборник, Ереван, 1965, стр. 16—17)։

Հանրապետության քաղաքային բնակչության վերջին տարիների աճի աղբյուրների մասին պատկերացում են տալիս մեր կատարած հետազոտությունները։

Հայկական ՍՍՀ քաղաքային բնակչության աճի աղբյուրները 1959—1966 թթ.

| | Բնակչության թիվը | Տոկոսներով |
|---|---|---|
| 1. Քաղաքային բնակչության աճը 1959—1966 թթ. այդ թվում՝ | 328485 | 100 |
| ա) բնական աճի հաշվին | 175559 | 53,5 |
| բ) մեխանիկական աճի (գյուղական բնակչության, հայրենադարձների և ՍՍՀՄ մյուս հանրապետություններից եկածների) հաշվին | 94509 | 28,7 |
| գ) որոշ գյուղեր քաղաքների վերածվելու հաշվին | 58417 | 17,8 |
| 2. Քաղաքային բնակչության ընդհանուր թիվը առ 1959 թ. հունվարի 15-ը (համամիութենական մարդահամարի տվյալներով) | 881844 | |
| 3. Քաղաքային բնակչության թիվը առ 1966 թ. հունվարի 1-ի դրությամբ | 1210329 | |

Աղյուսակից երևում է, որ 1959—1966 թթ. հանրապետության քաղաքային բնակչությունն ավելացել է 338.485-ով, որի համարյա կեսը (152.926 հոգի կամ 46,5 տոկոսը) լրացվել է մեխանիկական աճի և որոշ գյուղեր քաղաքների վերածվելու հետևանքով։

Փոփոխություններ են կատարվել քաղաքային բնակչության տերիտորիալ տեղաբաշխման մեջ։ Արտադրաուժերի անընդհատ զարգացումն ավելի է ուժեղացրել սոցիալ-տնտեսական գործոնների ազդեցությունը բնակչության տերիտորիալ տեղաբաշխման վրա։ Արտադրության վճռական ազդեցությունը, նրա ձգողական ուժը միշտ էլ ակնբախ են եղել պատմական բոլոր դարաշրջաններում, առավել ևս մեր օրերում, երբ արագ զարգանում են ինդուստրիալ ճյուղերը, ուժեղանում քաղաքներում բնակչության կենտրոնացման պրոցեսը։ Քաղաքային բնակավայրեր են առաջացել ո՛չ միայն լավ յուրացված տերիտորիաներում, այլև այնտեղ, որտեղ համեմատաբար խիստ են կլիմայական պայմանները, բայց առկա են բնական որևէ հարստություն և այն օգտագործելու հնարավորությունները։ Օրինակ, Քաջարանը (բացարձակ բարձրությունը ծովի մակարդակից 1950 մ) աչքի է ընկնում գունավոր մետաղներով, իսկ Ջերմուկը (բացարձակ բարձրությունը՝ 2070 մ)՝ հանքային բուժիչ ջրերով։ Բնական հարստությունների շնորհիվ դրանցից մեկը դարձել է Միության ճա-



նաչված առողջարան, մյուսը՝ մոլիբդենի և պղնձի հանույթի խոշոր կենտրոն։ Որոշակի տարածության վրա բնակչության կենտրոնացումը միաժամանակ նպաստում է արտադրության տեղադրմանը։

Արտադրության ծավալի մեծացման հետ մեկտեղ յուրացվում են նոր շրջաններ՝ արդյունաբերական կամ գյուղատնտեսական հումք վերամշակող ձեռնարկություններ կառուցելու համար. դա նպաստում է բնակեցման ընդարձակմանը, նոր բնակավայրերի առաջացմանը, որոնցից շատերն արագ զարգացման շնորհիվ վերածվել են քաղաքների կամ քաղաքատիպ ավանների, դրանով իսկ փոխելով բնակչության տերիտորիալ տեղաբաշխումը։

Եվ իրոք, Ամասիա, Ղուկասյան և Կրասնոսելսկ շրջաններից բացի, հանրապետության մյուս բոլոր շրջաններում ձևավորվել են քաղաքային բնակավայրեր, ստեղծվել միութենական, հանրապետական ու տեղական նշանակություն ունեցող արդյունաբերություն։

Առանձին տնտեսական շրջաններում բարձրացել է քաղաքային բնակչության տեսակարար կշիռը, իսկ գյուղականինը, ընդհակառակը, նվազել է։

Հայկական ՍՍՀ քաղաքային և գյուղական բնակչության տեղաբաշխումը տնտեսական շրջաններում (արտահայտված տոկոսներով)[1]

| Տնտեսական շրջաններ | Տերիտորիան տոկոսով | 1959 (ըստ մարդահամարի) | | | 1968 առ 1-ը հունվարի գնահատմամբ | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| | | քաղաքային | գյուղական | ընդամենը | քաղաքային | գյուղական | ընդամենը |
| Արարատի | 18,1 | 68,5 | 31,5 | 100,0 | 69,5 | 30,5 | 100,0 |
| Շիրակի | 19,5 | 45,2 | 54,8 | 100,0 | 51,8 | 48,2 | 100,0 |
| Մերձ-Դեբեդյան | 13,3 | 38,8 | 61,2 | 100,0 | 48,3 | 51,7 | 100,0 |
| Սևան—Աղստեֆ[2] | 25,1 | 17,9 | 82,1 | 100,0 | 29,1 | 70,9 | 100,0 |
| Զանգեզուրի | 24,0 | 35,1 | 64,9 | 100,0 | 42,9 | 57,1 | 100,0 |
| Հայկական ՍՍՀ | 100,0 | 50,0 | 50,0 | 180,0 | 55,9 | 44,1 | 100,0 |

Քաղաքային բնակչության տեսակարար կշիռը համեմատաբար արագ է աճել Մերձդեբեդյան և Սևան—Աղստեֆի տնտեսական շրջաններում։ 1959—1968 թթ. քաղաքային բնակչության թիվն առաջինում ավելացել է 9,5, երկրորդում՝ 11,2 տոկոսով, իսկ Արարատի տնտեսական շրջանում այն կազմել է ընդամենը 1 տոկոս։ Դա արդյունք է տվյալ շրջանի մեջ մտնող քաղաքների արագ զարգացման և նոր քաղաքային բնակավայրերի ձևավորման։ Մարդահամարից հետո 12 գյուղ[3] դարձել են քաղաքային բնակավայրեր, այսինքն՝ 58,4 հազարով ևս ավելացել է քաղաքային բնակչության թիվը։

Բացի այդ, կարևոր դեր է խաղացել նաև առանձին քաղաքային բնակա-

1. Աղյուսակը կազմված է 1959 թ. համամիութենական մարդահամարի և ՀՍՍՀ վիճակագրական վարչության նյութերի հիման վրա։

2 Առանց Սևանա լճի մակերեսի 1384 քառ. կմ։

3 Աբովյանը և Աշտարակը ձևավորվել են քաղաք, իսկ Ապարանը, Այրումը, Բերդը, Վեդին, Կագարինը, Եղեգնաձորը, Կալինինոն, Մարալիկը, Մարտունին և Թալինը՝ քաղաքատիպ ավան, 1969 թ. քաղաքատիպ ավան դարձավ և Վարդենիսը (Բասարգեչարը)։

վայրերի շրջագծում նոր գյուղեր մտցնելու հանգամանքը։ Այսպես, 1961 թ. Ալավերդուն են միացվել Ակներ, Կամոյին՝ Արծվաքար ու Հացառատ գյուղերը, որոնց բնակչությունը 1962 թ. սկզբներին կազմել է 7275 մարդ։ 1963 թ. Հրազդան քաղաքի շրջագծի մեջ են մտել Աթարբեկյանը, Ջրառատը, Ղափանի՝ Վաչագանը, Բեխը, Շհարջիկը, Աչխլուն 10.742 բնակչությամբ, Կիրովականի՝ Ժդանովը, Խնձորուտը (Վարդանլուն), ուր ապրում էին 6.162 մարդ. 1966 թ. Դիլիջանի շրջագծում Կույբիշևը, Գոշը՝ 5.085 բնակչությամբ։ Կատարվել է և հակառակը. 1963 թ. Երևանի շրջագծից հանվել և էջմիածնի շրջանին է միացվել Արգավանդ, Ազատաշեն, Գետափ, Գեղանիստ, Ենգիջա, Ղուկասավան, Թաղագյուղ, «Մասիս», № 15 սովխոզների, ինչպես և խաղողագործական-գինեգործական ինստիտուտի փորձարարական բազային կից ավանները։ Ինքնուրույն դարձան, բայց վարչական կարգով Երևանի քաղսովետին են ենթարկվում նաև Սովետաշեն, Նոր Խարբերդ քաղաքատիպ ավանները։ Նշված բնակավայրերում այդ թվականներին ապրում էին 17.511 մարդ։ 1969 թ. սկզբներին Մասիսի շրջանը[1] կազմակերպվելու կապակցությամբ Երևանի շրջագծից հանվեց և դրան միացավ Նոր Խարբերդը։

Այսպիսով, 1960—1966 թթ. վերոհիշյալ քաղաքներում մասնակի փոփոխությունների հետևանքով, գյուղականից քաղաքային են դարձել 29.264, իսկ Երևանի շրջագծից որոշ գյուղեր դուրս գալու հետևանքով քաղաքայինից գյուղական բնակիչ է դարձել 12.800 հոգի։ Դրանք ևս տնտեսական շրջաններում քաղաքային բնակչության տեսակարար կշռի փոփոխություններ են հարուցել։

Առանձին տնտեսական շրջաններում քաղաքային բնակչության տեսակարար կշռի բարձրացման վրա ազդող մյուս կարևոր հանգամանքն արտադրության տերիտորիալ տեղաբաշխման սոցիալիստական սկզբունքի, փոքր և միջակ քաղաքներում արդյունաբերական նոր ձեռնարկություններ կառուցելու ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվ ցուցումների հետևողական կիրառումն է։ Միայն 1959—1966 թթ. հանրապետությունում կառուցված խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների ավելի քան $^2/_3$-ը տեղադրվել է փոքր և միջակ քաղաքներում։ Նոր գործարաններ, ֆաբրիկաներ ու կոմբինատներ են գործարկվել Կիրովական, Դիլիջան, Կամո, Ստեփանավան, Սևան, Իջևան, Գորիս քաղաքներում, Ագարակ, Ախթալա, Կալինինո, Մարտունի քաղաքատիպ ավաններում և մյուս շրջկենտրոններում։ Ձեռնարկված միջոցառումների շնորհիվ մասամբ իջել է Երևանի տեսակարար կշիռը հանրապետության արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ, նվազել է և բնակչության մեխանիկական աճը։

1958 թ. հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ներդրված կապիտալ միջոցների 44,2 տոկոսը հատկացվել է Երևան քաղաքին։ Այդ ժամանակ Երևանը տվել է Սովետական Հայաստանի ամբողջ արդյունաբերության արտադրանքի ավելի քան 60 տոկոսը, 1964 թ.՝ 64, 1940 թ.՝ 40 տոկոսի դիմաց։ 1967 թ. Երևանի տեսակարար կշիռը կապիտալ ներդրումների մեջ իջել է. այն կազմել է 30,8, իսկ արդյունաբերության համախառն արտադրանքում՝ 58,7 տոկոս (Ереван в цифрах, Статистический сборник, Е., 1968 г. стр. 76)։

Եթե հետպատերազմյան առաջին հնգամյակում (1946—1950 թթ.) Երևանի բնակչության թիվը մեխանիկական աճի հաշվին տարեկան, միջին հաշվով, ավելանում էր մոտ 13,1 հազարով, ապա վերջին 5 տարում (1963—

[1] 1969 թ. Մասիսի շրջանին անցան Արգավանդ, Ազատաշեն, Գետափ, Գեղանիստ, Ենգիջա, Ղուկասավան և 1965 թ. Արտաշատի շրջանի մեջ մտնող Թաղագյուղ գյուղերը։



1967 թթ.) այն 11 հազարից էլ պակաս է։ Մեխանիկական աճը հատկապես բարձր է Կիրովականում, Հրազդանում։ Առաջինում այդ ժամանակամիջոցում ավելացել է 8.396, իսկ երկրորդում՝ 1.903 հոգով։ Բնակչության մեխանիկական աճի հաշվեկշիռը դրական է Լենինական, Դիլիջան, Հոկտեմբերյան, Սևան, էջմիածին քաղաքներում։ Վիճակը դեռևս լավ չէ Ալավերդում, Ղափանում։

Այսպիսով, արդյունաբերության բուռն զարգացման շնորհիվ հանրապետության մի շարք քաղաքներ, քաղաքատիպ ավաններ աստիճանաբար դառնում են ձգողական կենտրոններ տվյալ շրջանի գյուղատնտեսության մեջ ավելացած աշխատող ձեռքերն արդյունաբերության մեջ լրիվ ներգրավելու համար։

Քաղաքային բնակավայրերը կարևոր դեր են կատարում նաև աշխատանքի տերիտորիալ բաժանման մեջ։ Այն փաստը, որ հանրապետության արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և կապի մեջ զբաղված բնակչության հիմնական մասը[1] քաղաքային բնակավայրերի աշխատողներ են, ինքնըստինքյան հաստատում է քաղաքների առաջատար դերը նյութական արտադրության այդ կարևոր բնագավառում։ Բայց քաղաքային բնակավայրերի դերը միայն դրանով չի սահմանափակվում։ Դրանք ո՛չ միայն նյութական արտադրության կարևոր կենտրոններ են, այլև այստեղ են գտնվում լուսավորության, գիտության, կուլտուրայի, առողջապահության հիմնարկություններ, պետական, տնտեսական, կուսակցական ղեկավար օրգաններ և բնակչությանն սպասարկող բազմաթիվ այլ ձեռնարկություններ։

Ոչ արտադրական հիշյալ ճյուղերում զբաղված բնակչության մեջ քաղաքային բնակավայրերի աշխատողների տեսակարար կշիռը 1959—1965 թթ. 71,7 տոկոսից բարձրացել է 85,1-ի։ Քաղաքային բնակավայրերում նյութական և ոչ արտադրական ճյուղերում զբաղված բնակչության բարձր տեսակարար կշիռը պայմանավորված է տնտեսության առաջատար և առավել որակյալ ճյուղերի բուռն զարգացմամբ։

Դժբախտաբար հրապարակում չկան հասարակական ամբողջական արդյունքում և ազգային եկամտում քաղաքային ու գյուղական բնակավայրերի մասնակցությունը բնութագրող վիճակագրական տվյալներ։ Առկա են հասարակական ամբողջական արդյունքը և ազգային եկամտի ճյուղային կառուցվածքը, քաղաքային ու գյուղական բնակավայրերում ըստ տնտեսական ճյուղերի զբաղված բնակչության թիվը, որոնց վերլուծումը, անշուշտ, հնարավորություն կընձեռի մոտավոր պատկերացում կազմելու աշխատանքի տերիտորիալ բաժանման մեջ քաղաքի և գյուղի ունեցած մասնակցության մասին։ Կատարված հաշվումները ցույց են տալիս, որ նյութական արտադրության ոլորտում զբաղված բնակչության մեջ, քաղաքայինի տեսակարար կշիռն աճի տենդենց է ունեցել։ 1959—1965 թթ. 41 տոկոսից այն հասել է 70,8-ի։

Այժմ պարզենք այն հարցը, թե ինչպիսի մասնակցություն ունեն քաղաքային և գյուղական բնակիչները հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի ստեղծման գործում։ Այստեղ մարդկանց թվից բացի, կարևոր դեր են խաղում նաև որակական ցուցանիշները, արտադրության պրոցեսների տեխնիկական զինվածությունը։ 1959 թ. նյութական արտադրության մեջ զբաղվածների 37,9, իսկ 1965 թ. 51,6 տոկոսը եղել են արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և կապի աշխատողները, բայց ստեղծել են հասարակական ամբողջական արդյունքի 73,8 և 80,7 տոկոսը։ Մինչդեռ

[1] 1959 թ. հիշյալ ճյուղերում զբաղված բնակչության 85,1 տոկոսը, իսկ 1965 թ. 95,6 տոկոսը կազմել են քաղաքային բնակավայրի աշխատողները։

գյուղատնտեսության մեջ զբաղվածների թիվը թե՛ բացարձակ և թե՛ տոկոսային հարաբերությամբ նվազել է. համապատասխանաբար նվազել է նրանց բաժինը հասարակական ամբողջական արդյունքում (20,1 տոկոսից իջել է 14 տոկոսի) և ազգային եկամտի մեջ (27,1-ից իջել է 20 տոկոսի)։

Այստեղ, իհարկե, որոշակի դեր է խաղում գյուղատնտեսական մի շարք մթերքների (խաղող, պտուղ, բանջարեղեն, կաթնամթերք, միս, հացահատիկ) վերամշակումը գործարանային եղանակով. դրանց արժեքը գյուղատնտեսությունից անցել է արդյունաբերության համախառն արտադրանքին ու նպաստել դրա տեսակարար կշռի մեծացմանը՝ ի վնաս գյուղատնտեսության։ Բայց դա հիմնական պատճառը չէ, այլ այն, որ տեխնիկայի հագեցվածությամբ, արտադրապրոցեսների մեքենայացման տեսակետից արդյունաբերությունը, շինարարությունը, տրանսպորտն ու կապն ավելի բարձր մակարդակի վրա են կանգնած, քան գյուղատնտեսությունը։ Հետևապես, բարձր է նշված ճյուղերում աշխատանքի արտադրողականությունը, որով և պայմանավորված է հասարակական ամբողջական արդյունքի մեջ քաղաքայինի բաժնի մեծացումը։ Իսկ հասարակական ամբողջական արդյունքի համեմատությամբ, ազգային եկամտի քաղաքային բնակավայրերի տեսակարար կշռի փոքրությունը պայմանավորված է նրանով, որ հասարակական ամբողջական արդյունքը կազմված է մեծ քանակությամբ ամենաբազմազան սպառարժեքներից, իսկ ազգային եկամուտը հաշվելիս նկատի է առնվում ամեն մի ճյուղի զուտ արտադրանքը, «նրա արժեքի այն մասը, որն իր մեջ մարմնացնում է սոցիալիստական արտադրության աշխատողների նոր ծախսված աշխատանքը»։ Հանրային արտադրության մեջ քաղաքային բնակավայրերի դերի այդպիսի արագ բարձրացումը հետևանք է մի շարք քաղաքային բնակավայրերում (ինչպես նշեցինք վերևում) արդյունաբերական նոր ձեռնարկությունների գործարկման, եղած արդյունաբերական ձեռնարկությունների սարքավորումների կատարելագործման։ Այսպես, հասարակական ամբողջական արդյունքի մեջ քաղաքային բնակչության բաժինը 1958 թ. կազմել է 69,4, 1965 թ.՝ 83,8 տոկոս, իսկ ազգային եկամտում, համապատասխանաբար՝ 63,9 և 78,6 տոկոս։

Հանրային արտադրության մեջ քաղաքային բնակչության դերն անընդհատ մեծանում է. դա նշանակում է, որ հանրապետության տնտեսության հիմնական ուղղությունն արդյունաբերության բազմակողմանի զարգացումն է ո՛չ միայն խոշոր, այլև փոքր և միջակ քաղաքներում։

Հարկավոր է ճիշտ տեղաբաշխել արդյունաբերական ձեռնարկությունները, տրանսպորտային, էներգետիկ, ինժեներական կառուցումները և հաղորդակցության ուղիները։ Միայն պատշաճ պլանավորմամբ կարելի է ճիշտ որոշել քաղաքների զարգացման մասշտաբները, ընտրել տերիտորիա և ստեղծել լավագույն պայմաններ բնակչության աշխատանքի, հանգստի ու կենցաղի համար, հասնել բնական և աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը։

Խ. Ա. ԱՎԵՏԻՍՅԱՆ





## ԼԵՆԻՆՅԱՆ ԿԵՆԱՐԱՐ ԱՐԵՎԻ ՆԵՐՔՈ

Շուտով մեր ժողովուրդը կնշի պատմական երկու կարևոր իրադարձություն՝ պրոլետարիատի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի ծննդյան 100 և Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյակները։ Հայ ժողովրդի կյանքում բացառիկ նշանակություն ունեցող այդ տոներն արժանավայել գործերով նշելու համար ստեղծարար պայքարի մեջ են մտել նաև Ապարանի շրջանի կոլտնտեսականն ու շինարարը, բանվորն ու ինժեները, ուսուցիչն ու բժիշկը— բոլորը։

Քանի մոտենում են այդ տոները, այնքան ավելի է ծավալվում համաժողովրդական սոցիալիստական մրցությունը մեր շրջանում։

Գեղեցիկ է եղել Նիգ գավառի բնությունը՝ վեհանիստ Արագածով. բայց այդ գեղեցկությունից շատ քիչ բան է շահել ռամիկը։ Օտարազգի բռնակալներից հալածված շատ ու շատ մշեցի ու ալաշկերտցի, վանեցի ու բայազետցի, բաղեշցի ու արդահանցի իրենց հանգրվանը գտան Ապարանում, որը դարձել է հայոց 15 գավառների հավաքավայրը։ Այստեղ 15 բարբառով հնչել են «Անտունի» ու «Ջանգյուլում», օրորոցային ու թաղման, հարսանիքի ու աշխատանքային երգեր։

Հողի մշակները, հասարակ մարդիկ նեցուկ են եղել իրար։ Բայց արյունքրտինքը ծով է եղել, վաստակը՝ քիչ։ Ու պանդխտել է ժողովուրդը՝ մի կտոր հացի համար, կյանք մաշել, արցունքով թրջել ամեն պատառը։ Մի բուռ սերմ է ճարել, պահ տվել հողին, հույսով ու վախով սպասել հասկին։ Հիվանդացել ու մեռել է «կամոքն աստծո», կավածեփ տունը տաքացրել է աթարով, լուսավորել ձեթի ճրագով։

Ահա թե ինչպես է նկարագրվել ապարանցու վիճակը «Մշակ» թերթի 1899 թվականի համարներից մեկում. «...Ապարանի գավառակը ողորմելի և մոռացված դրության մեջ է գտնվում։ Այդ պատճառով էլ նա արժանի է ուշադրության... Ապարանցու տունը ներկայացնում է խեղճության ծայրահեղ տիպար. տան կարասիքն են մի քանի խեցեղեն անպետք ամաններ և հարդե փսիաթներ...»։

Ապարանցին հիշում ու սիրում է իր վշտի երգիչ աշուղ Մահուբուն։ Որքա՜ն դիպուկ է գրել նա.

«Ղուշչվա շուրջը ճարափ ա,
Տասը տուն են, ինը խարաբ ա...»

*Անցել են տարիները, փոշի դրել իրար վրա, բայց չեն փոխել ապարանցու կյանքը: Վշտից, զայրույթից, անկարողությունից նա իր հույսը կանթեղել է, կախել Արագածի կատարին ու սպասել դրա լույսի զորությանը: Սակայն լուսավորչի կանթեղը պլպլացել է ու պաղել, չի ջերմացրել ապարանցու մարմինը, չի փոխել նրա անմխիթար վիճակը...*

*Ու մի օր էլ Հոկտեմբերի բոսոր լույսից շիկնեցին Արագածի գագաթները: Այդ կենարար լույսը եկավ ու լցվեց խավար, խուլ կիրճերը, մութ ու գետնափոր խրճիթները, կյանքի կոչեց իրենց մահտարաժամին սպասող մարդկանց: Ու մարդիկ շտկեցին կորացած մեջքները, համբուրվեցին Հոկտեմբերի լույսի հետ: Ապարանցին ձեռքն առավ մուրճն ու բահը, քանդեց հին տան մրոտ պատերը, սկսեց կառուցել նոր տուն, լուսավոր տուն, տաք ու շեն օջախ... Ժամանակը, որ կարծես կանգնել էր ապարանցու համար, շարժվեց...*

*Պապենական արորին փոխարինեց տրակտորը, այն հոնդաց դաշտերում, ճեղքեց հողի կուրծքը: Հանրային դարձան արտերը, շրշացին բերքից: Մեքենան օգնեց գյուղացուն, հեշտացրեց նրա աշխատանքն ու կյանքը: 1934 թ. շրջանում հիմնադրվեց առաջին մեքենատրակտորային կայանը, որը համալրված էր 11 մեքենաներով: Անցան ոչ երկար տարիներ, այժմ շրջանի ամենափոքր տնտեսությունն անգամ դրանից շատ մեքենաներ ունի:*

*Ուրախալի է նշել, որ շրջանի տնտեսություններում մեր մեխանիզատորներն այսօր բանեցնում են 202 տրակտոր, 65 կոմբայն, 68 շարքացան, 164 բեռնատար ավտոմեքենա, 405 այլ մեքենաներ ու գործիքներ:*

*Քարաշատ Հայաստանում առավել քարոտ է Ապարանը: Սակայն մարդու կամքը քարից ամուր է: Հաշվի առնելով քարոտ հողերի մշակման անհրաժեշտությունը, շրջանում 1967 թ. ստեղծվեց մելիորատիվ մեքենայացված ջոկատ, որի հիանալի աշխատանքի շնորհիվ միայն առաջին տարում քարերից մաքրվեց 120 հեկտար տարածություն: 1968 թ. այդ տարածությունն ավելացավ ևս 145 հեկտարով: Այս տարի Վարդենուտի, Արայի, Բուժականի, Ապարանի, Նիգավանի, Զորագլխի դաշտերում կրկին աղմկեցին մեքենաներն, ու տնտեսություններին հանձնվեց 200 հեկտար քարազերծ ու մեքենահարմար հողատարածություն: Մեքենայական ջոկատը վերջերս վերածվեց մելիորատիվ մեքենայացված կայանի, որն առաջիկա հինգ տարում կյուրացնի 1500—2000 հեկտար քարքարոտ հողեր և կապահովի ոռոգելի տարածությունների հարթեցման հիմնական աշխատանքները:*

*Մանր, մասնավոր հողակտորների փոխարեն այժմ հսկայական տարածությունների վրա (9855 հեկտար) ծփում են ոսկեդեղին արտեր, 3451 հեկտար տարածության վրա ցանվում խոտաբույսեր, 400 հեկտար կարտոֆիլ ու բանջարեղեն:*

*Շրջանում մեծ գործ է կատարված ինչպես բուսաբուծության, այնպես էլ անասնաբուծության աշխատատար պրոցեսները մեքենայացնելու ուղղությամբ: «Հայգյուղտեխնիկայի» Ապարանի շրջմիավորման մեխանիզատորների հիանալի աշխատանքի շնորհիվ վերջին երեք տարում 35 գոմերում տեղադրվել են գոմաղբ դուրս հանող քերիչ ժապավեններ, ավտոխմոցներ, կեր բաշխող ագրեգատներ և այլ սարքավորումներ. 12 կիլոմետրի վրա ջուր է տարվել անասնապահական օբյեկտները: Առաջիկա 2—3 տարում այդ աշխատանքն ավելի լայն ծավալ կընդունի:*



*Շրջանի էկոնոմիկայում գլխավորն անասնապահությունն է. տնտեսությունների եկամուտների 80 տոկոսն ստացվում է գյուղատնտեսության այդ ճյուղից: Դրա համար ամեն ինչ արվում է անասնապահության զարգացման համար: Շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները 1962 թվականի 11.237 գլուխ խոշոր (որից 3400-ը՝ կով) և 46.347 գլուխ մանր եղջերավոր անասունների դիմաց այսօր ունեն 13.207 գլուխ խոշոր (որից 3673-ը՝ կով) և 65.404 մանր եղջերավոր անասուն: Տարեցտարի ավելանում է արտադրվող ու վաճառվող անասնապահական մթերքների քանակը: 1965 թ. համեմատությամբ, այժմ շրջանն ավելի է արտադրում կաթ՝ 8200, միս՝ 1200, բուրդ՝ 70 ցենտներ և 195 հազար ձու: 1969 թ. հոկտեմբերի 1-ի տվյալներով, գերակատարվեցին մսի արտադրության և վաճառքի տարեկան առաջադրանքները: Հատուկ ուշադրություն է նվիրվում արտադրվող մթերքների ինքնարժեքի իջեցմանը:*

*Ապարանի շրջանի էկոնոմիկայում կարևոր տեղ ունի նաև դաշտավարությունը: Տարեցտարի ընդլայնվում է ոռոգման ցանցը, ավելանում են ոռոգելի տարածությունները: Ապարանցին այժմ փոխում է բնությունը: Գյուղերի գրեթե բոլոր առանձնատները շրջապատված են այգիներով. այգիներ են տընկում նաև կոլտնտեսությունները: Պոմիդորն ու վարունգը, ծաղկակաղամբն ու բոստանային բազմաթիվ կուլտուրաներ ապարանցին այժմ ստանում է սեփական բանջարանոցից:*

*Ջուրը կենսական անհրաժեշտություն է մեր շրջանի դաշտավարության համար: Լեռների գրկում ծվարած ապարանցին երազում էր ոռոգել դաշտերը: Միայն սովետական կարգերի, լենինյան գաղափարների հաղթանակի շնորհիվ բազմաթիվ այլ հարցերի հետ, լուծվեց և ոռոգման հարցը: Շրջանում լայնորեն ծավալվում են ջրաշինարարական աշխատանքները: Ջուրը ձորերի խոր հատակից բարձրացել, շրջանցել է բլուրներն ու կիրճերը, կյանք տվել ծարավ արտերին: Այժմ շրջանում ոռոգվում է 6200 հեկտար հողատարածություն, որից 4646-ը վարելահողեր են: Գործում են 3 ջրհան կայան, որոնք ոռոգում են 900 հեկտար տարածություն, 15 հազար հեկտար արոտավայրեր ջրարբիացնելու համար գցվել է 80 կմ երկարությամբ խողովակաշար:*

*Հանրապետության ամենախոշոր արհեստական ջրամբարը, ինչպես տեղացիներն են ասում, Ապարանի լիճը, իր 91 մլն խոր. մետր ջրով ոռոգում է Ապարանի և Աշտարակի շրջանների 7200 հեկտար հողատարածություն, որն զգալի չափով թեթևացնում է Սևանի բեռը: Ջրամբարի բազայի վրա կառուցվում է Երնջատափի ջրհան կայանը, որի միջոցով կոռոգվի 1800 հեկտար հողատարածություն: Այս տարի շահագործման կհանձնվի կայանի առաջին հերթը: Կկառուցվեն ուրիշ ջրհան կայաններ ևս: Ջրամբարն ստեղծվել է ապարանցի շինարարի բազկի ուժով. նրան սիրով օգնության են եկել հանրապետության ու Միության տարբեր վայրերի էնտուզիաստները:*

*Ջրամբարն ունի մի այլ, դարձյալ կարևոր նշանակություն: Դրա շնորհիվ շրջանը դառնում է հանգստյան գոտի: Նախագծային աշխատանքներն այս ուղղությամբ արդեն ավարտվել են. սկսվել է շինարարությունը: Ջրամբարի շրջակայքում կկառուցվեն պանսիոնատներ, կստեղծվեն պիոներական ճամբարներ, որտեղ իրենց ամառային հանգիստը կանցկացնեն հազարավոր պիոներներ: 200 հեկտար տարածության վրա տնկվել են անտառներ. անտառատնկումները շարունակվում են և կհասնեն 600 հեկտարի:*

*Մեծ լեռների գրկում ծփացող ջրամբար-լճի հմայքն արդեն վայելել են Միության շատ նշանավոր գործիչներ, արտասահմանյան տուրիստներ. այս-*

տեղ հանգստացել ու մարզվել են համաշխարհային մրցումներին մասնակցող սովետական մի շարք ընտրանիներ. ձմռանը հնչում են դահուկավորների կանչն ու ծիծաղը։ Մայրաքաղաքի բազմաթիվ ձեռնարկությունների կոլեկտիվներ, ընտանիքներ իրենց շաբաթ ու կիրակի օրերը թե՛ ամռանը, թե՛ ձմռանը անցկացնում են այստեղ, որոնց համար անհրաժեշտ պայմաններ են ստեղծված։

Շրջանի կյանքում չափազանց մեծ է նոր զարգացող արդյունաբերության նշանակությունը։ Մեր արդյունաբերության առաջնեկի՝ ռադիոտեխնիկական իրերի գործարանի երիտասարդ կոլեկտիվը միշտ կատարում ու գերակատարում է պետական առաջադրանքները։ Հսկայական տարբերություն կա յոթ տարի առաջ հիմնադրված գործարանի ու այժմյանի միջև։ Այժմ կառուցվում է գործարանի նոր, ընդլայնված մասնաճյուղը։ Միութենական նշանակություն ունեցող այս գործարանում կոփվում է ապարանցի բանվորը։ Նոր ձեռնարկություն կստեղծվի Քուչակում։

Շրջանի շինարարության, բեռների փոխադրման, բնակչության կենցաղային սպասարկման համար, բացի հիմնարկ-ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների մեքենաներից, կա նաև ավտոտրանսպորտային գրասենյակ։ Ամեն օր ավտոբուսային 30 ուղերթով շրջկենտրոն, հարևան գյուղերն ու հանրապետության այլ քաղաքներ են մեկնում մոտ 1000 ուղևոր (չհաշված Երևանից շրջան եկող ավտոբուսները)։ Շրջանի բնակչության սպասարկմանն են տրամադրված նաև վեց տաքսի։ Նախատեսված է առաջիկայում հզորացնել և կառուցել նոր ավտոպարկ։

Ապարանցի գորգագործուհու ձեռքի աշխատանքը դուրս է գալիս հանրապետությունից ու Միությունից։ Շրջկենտրոնի գորգագործարանում աշխատում են բազմաթիվ բանվորուհիներ։ Գորգֆիլիալն իր առաջադրանքներն ամեն տարի կատարում ու գերակատարում է։

Շրջանն ունի վեց պանրագործարան. հանրապետությունում աչքի է ընկնում Ապարանի կաթնամթերքը, հատկապես «Հայաստան» պանիրը։

Լենինյան պատգամների իրագործման, ժողովրդի նկատմամբ կուսակցության ու կառավարության ամենօրյա հոգատարության շնորհիվ օրեցօր բարգավաճում է Ապարանը, ավելի ու ավելի բարեկեցիկ է դառնում գյուղի աշխատավորի կյանքը, բարձրանում նրա կուլտուրական մակարդակը։

Ապարանցու աչքի առաջ փոխվում են նախկին հողաշեն հյուղակները. վեր են բարձրանում բնակելի ու վարչական բազմահարկ շենքեր, շինվում ու ասֆալտապատվում են փողոցները։ Միայն վերջին հինգ տարում պետական միջոցներով շրջանում կառուցվել են 8 բնակելի շենք՝ 170 ընտանիքի համար։ փոստի եռահարկ շենքը, Արագածի հիվանդանոցը, Քուչակի ճաշարանը, ջրամբարի բնակելի շենքը, 23 գյուղական խանութ, Քուչակի, Արագածի, Շենավանի, Հովիտի, Ջրբանմագի դպրոցները, Ապարանի սառնարանը, խնայդրամարկղի, կուսշրջկոմի շենքերը, Ալագյազի մանկապարտեզը, Ապարանի կենցաղսպասարկման տաղավարը, Քուչակի ուսուցչական տունը և այլ շենքեր։ Վեր է խոյացել Վարդենուտի կուլտուրայի երկհարկանի պալատը. ավարտվում են Ծաղկահովտի կուլտուրայի պալատի շինարարության աշխատանքները, շրջկենտրոնում օրերս շահագործման կհանձնվի կահույքի ու գրախանութի երկհարկանի շենքը։



Կենցաղային օբյեկտների շինարարությունն այսօր շրջանի կուսակցական ու սովետական օրգանների առաջնահերթ խնդիրներից մեկն է։ Այս տարի շահագործման հանձնվեցին Վարդենիսի բաղնիքը, ակումբն ու գրադարանը։ Բաղնիքներ են կառուցվում մի քանի այլ գյուղերում։ Տարեցտարի ընդլայնվում է կենցաղային օբյեկտների ցանցը։ Այժմ գրեթե բոլոր գյուղերում գործում են կենցաղսպասարկման օբյեկտներ։ Շուտով շահագործման կհանձնվի շրջկենտրոնի կենցաղսպասարկման նոր տաղավարը։

Այսօր ուրախ ու բախտավոր է ապարանցին։ Նա այլևս չի մտածում մի կտոր հացի մասին, կարիքը չի ծեծում նրա դուռը։ Շենավանցի կոլտնտեսության հովիվ Ա. Գևորգյանը տարեկան վաստակում է մոտ 1000 աշխոր, ունի նորակառույց, լավ կահավորված առանձնատուն, խոհանոցում բոցկլտում է գազօջախը։ Շուտով շենավանցիները կունենան իրենց լավաշի փուռը։ Գյուղի կառուցումը հատակագծվել է։

Ապարանցու ամսական միջին վաստակը 210 ռուբլի է։

Փոխվել են մեր գյուղերը, կուլտուրական տեսք ընդունել։ Կոլտնտեսականներն ու բանվոր-ծառայողներն իրենց խնայողությունների հաշվին, վերջին հինգ տարում, կառուցել են երկու հազարից ավելի հարմարավետ տներ։ Շրջանի 35 գյուղերում չկա մի ընտանիք, որը չունենա լուսավոր ու կահավորված իր բնակարանը. շատերն ունեն երկուհարկանի առանձնատներ։ Բոլոր գյուղերում, բնակարաններում ու կուլտուրական օջախներում վառվում են Իլյիչի լամպերը, դրված են ռադիոն ու հեռուստացույցը։ Շատ գյուղերում անասնապահների համար կան առանձին ակումբներ, ուր նրանք աշխատանքից հետո դիտում են հեռուստահաղորդումներ, շախմատ ու նարդի խաղում, կարդում օրվա թերթերը։ Թռչնաբուծական ֆերմաներում սպիտակ ու մաքուր խալաթներով ջահել աղջիկները քեզ հետ կզրուցեն աշխարհի նորությունների, լույս տեսած վերջին գրքերի մասին։

Սովետական կարգերը նոր, լուսավոր կյանքի պայմաններ ստեղծեցին քոչվոր քրդերի համար։ Հին է հայ և քուրդ ժողովուրդների բարեկամությունը։

Այդ եղբայրության շնորհիվ է, որ քրդերը գաղթելիս իրենց ապաստանը գտան հայերի մոտ. նրանք հաստատվեցին Երևանում, Թալինում, Ապարանում։ Այդ եղբայրությունն է հաստատում մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանը 1848 թ. «Կովկաս» թերթում տպագրած «Քրդերը» հոդվածում, որտեղ գրում է. «Իրենց հարևան ազգերից ոչ մեկի հետ նրանք այնպես սերտ չեն կապված, այնպես համատեղ չեն գործում, ինչպես հայերի, որոնց նրանք անվանում են եղբայրներ»։

Սակայն քրդերի ու հայերի բարեկամությունը նոր, վառ արտահայտություն ստացավ Հոկտեմբերյան դրոշի փողփողումից հետո։ Քոչվորներից նրանք դարձան նստակյաց, մասնակցեցին նոր կյանքի կառուցմանն ու կոլեկտիվ տնտեսությունների ստեղծմանը։ Եվ շրջանի քրդական գյուղերում կյանքն սկսեց առաջ գնալ նոր ձևով, նոր բովանդակությամբ։

Եղբայրական ժողովուրդների ընտանիքում, կյանքի բոլոր բնագավառներում շրջանի քրդերը տվել են արժանավոր շատ մարդիկ։

Մեծ Հայրենականի տարիներին շրջանից ճակատ մեկնած շատ ռազմիկների հետ իր անունը փառքով պսակեց Սամանդ Ալիի Սիաբանդովը. նա բանակից վերադարձավ որպես Սովետական Միության հերոս և այսօր էլ ջանք չի խնայում հանրապետության գյուղատնտեսության վերելքի համար։

Շրջանի առաջավոր տնտեսություններից է Ալագյազի սովխոզը, որը միշտ

կատարում ու գերակատարում է պետական առաջադրանքները։ Սովխոզի դիրեկտոր Ա. Խուդոյանը ունի բարձրագույն կրթություն. նա կուսշրջկոմի բյուրոյի անդամ է։

Բարձրագույն մասնագիտական կրթություն ունեն Ջամշլուի և Ջարջառիսի սովխոզների երիտասարդ դիրեկտորներ Ի. Աչամյանը և Փ. Խուդոյանը։ Քուրդ ինտելիգենցիայի մեծ մասը սովորել է Ապարանի շրջանի դպրոցներում։

Ալագյազի միջնակարգ դպրոցն են ավարտել ՀԿԿ Կենտկոմի անդամ, «Ռյա-Թազա» թերթի խմբագիր Մ. Մստոյանը, երիտասարդ բանաստեղծ Կ. Ջաշանին, պատմական գիտությունների թեկնածու Տաքրոե Մհոյին, երիտասարդ բժիշկներ Ժորա Մհոյանը, Վազիր Բրոյանը, ժուռնալիստներ Ագիտ Մհոյանն ու Ամարիկ Սարդարյանը և շատ ուրիշներ։ Շրջանի կուլտուրական ու տնտեսական վերելքին շատ բանով են նպաստում շրջսովետի գործկոմի նախագահի տեղակալ Ք. Շամոյանը, ՆԳՄ-ի շրջբաժնի պետ Ս. Ուսուբյանը, կուսշրջկոմի հրահանգիչ Ա. Ալոյանը, դպրոցի դիրեկտոր Ա. Խուդոյանը։

Կերազե՞ր քուրդ կինը մասնակցել երկրի ղեկավարմանը, երբ նրան ղաղանով էին միայն ամուսնացնում։ Եվ այսօր քուրդ կթվորուհի Մարի Ուսոյանը Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ է։

Մեր շրջանում այժմ գործում է ռադիոտեխնիկական իրերի գործարանի ֆիլիալը, որտեղ աշխատանքային մկրտությունն են ստանում շատ քուրդ աղջիկներ ու տղաներ։ Իրենց նոր կյանքն են կառուցում շրջանի 10 քրդական գյուղերի 4238 բնակիչներ։

Գնալով բարելավվում է աշխատավորների բուժսպասարկումը։ Եթե 56 տարի առաջ Հայաստանում կար ընդամենը 6 հիվանդանոց՝ 73 բժիշկներով, ապա այժմ միայն Ապարանի շրջանն ունի 6 հիվանդանոց՝ 30 բժիշկներով։ Գյուղերի 24 բուժկետերում կան միջնակարգ մասնագիտական կրթությամբ 100 միջին բուժաշխատող։ Հիվանդանոցներում գործում են ռենտգեն, ատամնաբուժական և այլ կաբինետներ ու բաժիններ։

Հսկայական քայլերով առաջ է ընթանում ժողովրդական կրթությունը։ Եթե 1903 թ. շրջանում կար ընդամենը երկդասյա մեկ դպրոց՝ երկու ուսուցչով և շատ քչերին էր բախտ վիճակվում սովորելու, ապա այժմ շրջանում գործում են 40 դպրոց, որոնցից 14-ը միջնակարգ, 18-ը ութամյա, ուր սովորում են մոտ 7785 աշակերտ։ Շրջանի մատաղ սերնդի դաստիարակությունն իրենց ձեռքն են վերցրել 500-ից ավելի որակյալ ուսուցիչներ։

Շրջանի դպրոցները տարեկան ավարտում են 250—300 հոգի։ Միայն այս տարի բուհ են ընդունվել 40-ը։ Եթե նախասովետական տարիներին գրագետ մարդուն մատով էին ցույց տալիս, ապա այժմ միայն Քուչակ գյուղում կան բարձրագույն կրթությամբ 40 ուսուցիչ, գյուղատնտես, բժիշկ։ Բժշկական ինստիտուտն ավարտած քուչակցիների թիվը հասնում է երկու տասնյակի։ Կարո՞ղ էր երազել չքավոր ու անգրագետ քուչակցի Մանուկյանը, որ իր երեք որդիները գիտության թեկնածուներ կդառնան։ Հեքիաթ չէ՞ր թվա արդյոք այն, որ քուրդ Խդո Մհոյանի վեց երեխաները կդառնան գիտնական, բժիշկ, ժուռնալիստ, մանկավարժ, գյուղատնտես և երաժիշտ։

Ամեն տարի ավելանում է ապարանցի ուսանողների թիվը։ Այս տարի Ապարանում հայրենի շրջանի բարգավաճման համար իրենց ուժերը նվիրելու ուխտ արեցին ապարանցի ուսանողները, որոնց թիվը հասնում է մոտ 300-ի։

Մեր շրջանի զարգացման ասպարեզում կոնկրետ գործերով սերունդներին իրենց անունն են թողնում բազմաթիվ բանվորներ ու կոլտնտեսականներ, կուլտուրայի գործիչներ։ Ռադիոտեխնիկական իրերի գործարանի երիտասարդ բանվորներ Աղաբեկ Վարդանյանը, Համիկ Համբարձումյանը, Սիրուն Բարսեղյանը, Ռոզա Գևորգյանը, Պատվական Վարդանյանը, Հայկ Ստեփանյանը 130—135 տոկոսով են կատարում իրենց առաջադրանքները։ Գործարանն ամեն տարի պատվով է կատարում պետական պլանները։

Ապարանն ունի նոր կյանքի կառուցման իր անվանի ու առաջավոր մարդիկ նաև գյուղատնտեսության տարբեր ճյուղերում, նրանք են՝ կոմբայնավարներ՝ Ս. Հակոբյանը (Հարթավան) և Վ. Գրիգորյանը (Քուչակ), մեխանիզատորներ՝ Պ. Մալխասյանը (Քուչակ) և Թ. Ալեքսանյանը (Հարթաբլուր), կթվորներ՝ Սամսոն Զաքարյանը (Ծաղկաշեն) և Ծաղիկ Տոնոյանը (Արագածի սովխոզ), հովիվներ՝ Հ. Գաբրիելյանը և Գ. Մարտիրոսյանը (Նիգավան), Շ. Իսրայելյանը (Վարդենուտ) և Հ. Կիրակոսյանը (Ծաղկահովիտ), խոզապահներ՝ Ս. Զաքարյանը և Ս. Սարգսյանը (Բուժական), թռչնապահներ՝ Ա. Սարգսյանը և Բ. Խաչատրյանը (Ծաղկաշեն), բանջարաբույծներ՝ Բ. Հակոբյանը (Արագած) և Վ. Պետրոսյանը (Շենավան) և շատ ուրիշներ։

Ապարանի շրջանի բանվորներն ու կոլտնտեսականները պատվով են կատարում իրենց առջև դրված խնդիրները և նոր նվաճումներով են դիմավորում մեծ Լենինի ծննդյան 100-ամյակը ու Հայաստանի խորհրդայնացման կեսդարյա տոնը։

Գ. Հ. ՄԱԿԱՐՅԱՆ
ՀԿԿ Ապարանի շրջկոմի առաջին քարտուղար



## ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

# ՀԱՅ ԵՐԳԻԾԱՆՔԻ ԱՐԱԳԱԾԸ

(ԵՐՎԱՆԴ ՕՏՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Երվանդ Օտյանի մահվան առթիվ իր գրչակից ընկերներից մեկն ասել է. «Օր մը պիտի գա անշուշտ, որ հայ մտքի մեծ կեդրոն մը պիտի կազմվի... հասկացողությունները պիտի ընդլայնվին, ու ճաշակը պիտի կազմավորվի՝ մտավորական պաշարի և հմտության վրա հիմնված ճաշակը: Այն ատեն է, որ Երվանդ Օտյան պիտի բռնե իր բուն տեղը մեր գրականության մեջ, իր անբաղդատելիորեն գերազանց տեղը: Այն ատեն է, որ պիտի գիտցվի, թե ինչ կարժեր իր արձակը, իր այնքան պարզ՝ և պարզ ըլլալուն համար իսկ այնքան արժեքավոր արձակը, իր գրելու դասական եղանակը» (Թեոդիկ, *Ամենուն տարեցույցը*, 1928, էջ 455—456):



Այդ օրը զուցե ավելի շուտ եկավ, քան կարծում էր Լ. Բաշալյանը: Եվ դա բնական էր: Օտյանը դեռևս իր կենդանության օրոք ձեռք էր բերել այնպիսի լայն ժողովրդականություն, որի նմանը հազվադեպ է առհասարակ հայ գրականության մեջ: Նա քառորդ դար բացարձակապես իշխել է արևմտահայ արձակի և հրապարակախոսության ոլորտում, իր վրա հրավիրելով մտավորական ամենալայն շրջանների ուշադրությունը:

Դժվար է մատնանշել մի այլ գրող, որն այնքան շատ գրած լինի, այդքան տարբեր բնագավառների մասին, որքան Օտյանը: Մասնավորապես 1908 թ. մինչև կյանքի վերջին ամիսները՝ բացառությամբ աքսորի չորս տարիների, նրա գրած երկերը դժվար է տեղադրել գիտակցական կյանքի սահմանի մեջ— քանից ավելի ստվարածավալ վեպ, հարյուրավոր վիպակներ ու պատմվածքներ, մի քանի կատակերգություն, անթիվ անհամար երգիծական քրոնիկներ և այլն, որոնք, եթե վերածվեն հատորների, կստացվի 40—50 հատորանոց մի ժառանգություն:

Սակայն Օտյանի ժողովրդականացման, հայ գրականության պատմության մեջ իր ուրույն տեղը նվաճելու իրավունքը քանակով չի որոշվում: Նրա հետ, նույն ժամանակ, թերթոնային վիպագրությանը զարկ էին տալիս Սըմբատ Բյուրատը, Միսաք Գոչունյանը, Արմեն Չիտանյանը: Նրանք նույնպես գրել են տասնյակ ծավալուն վեպեր, հազարավոր հոդվածներ, որոնք իրենց հակաբռնապետական ոգու շնորհիվ ընթերցվել, բայց չեն հասել մեր օրերը. նրանց պակասել է գիրքը դեպի ապագան մղելու անհրաժեշտ կենսանյութը՝ գեղարվեստական ուժը: Մինչդեռ Օտյանն ապրեց իր մահից հետո էլ, նրա երկերն արտատպվեցին տասնյակ անգամներ թե՛ սփյուռքում և թե՛ հայրենիքում, որտեղ մի քանի ստվար ժողովածուներից հետո «Հայաստան» հրատարակչությունը վերջին տարիներս լույս ընծայեց նրա ընտիր երկերը՝ վեց ծավալուն հատորներով, որոնք սպառվեցին ամենակարճ ժամանակամիջոցում:

Ո՞րն է այս ամենի գաղտնիքը, այն ուժը, որի շնորհիվ օրեցօր մեծանում է Օտյանի հմայքը, նրան հասցնում համընդհանուր ճանաչման:

Օտյանի ժողովրդականության հիմնական գաղտնիքը նրա գրական խոշոր տաղանդի, հասարակական կյանքը ռեալիստական վրձինով նկարելու, այդ կյանքի հոռի կողմերի դեմ համարձակ դատավճիռներ կայացնելու, ժամանակի առաջավոր գաղափարների հետ համընթաց քայլելու մեջ է: Օտյանի ստեղծագործությունները, մյուս կողմից՝ ամենալայն ընթերցանության նյութ են դարձել հեղինակի հստակ մտածողության, պարզ ու անսեթևեթ ոճի և խորապես գեղարվեստական առանձնահատկության շնորհիվ: Այս տեսակետից Օտյանին կարելի է համեմատել միայն Հ. Թումանյանի հետ:

Օտյանի մեծությունն այն բանի մեջ չէ միայն, որ նա 1880-ական թվականների գրական ռեալիստական շարժման ականավոր ներկայացուցիչներից էր, ամենաբեղմնավորն այդ խմբի, և ոչ էլ այն բանում, որ նա հայ առաջավոր դեմոկրատական հրապարակախոսության ամենակարկառուն դեմքերից մեկն է. այս երկու ուղղությամբ էլ, պահպանելով հանդերձ իր ուրույն տեղը, Օտյանն ուներ նախորդներ: Նրա մեծությունը հայ քաղաքական երգիծաբանությունը մի նոր աստիճանի բարձրացնելու և հայ գրականության շրջանակներից դուրս բերելու մեջ է:

Եղել են մարդիկ— Լ. Բալշալյանը, Ա. Արփիարյանը, Ա. Չոպանյանը և ուրիշներ, որ նրա երգիծանքն ավելի բարձր են դասել, քան Պարոնյանինը: Իհարկե, դա ճիշտ չէ, տարբեր ժամանակաշրջանների, տարբեր ոճերի ու նախասիրությունների տեր գրողներ են նրանք: Պարոնյանի բացարձակ մեծությունը վիճարկման ենթակա չէ, ինչպես և այն, որ Օտյանի երգիծանքի համամարդկային ուժի արգասիք է նրա երկերի թարգմանությունը ֆրանսերեն, հունարեն, թուրքերեն, ռուսերեն, բուլղարերեն և այլ լեզուներով: Օտյանի *Ընկեր Փանջունին* նմանը չունի հայ գրականության մեջ, և մարդիկ իրավամբ փորձել են զուգահեռներ գտնել համաշխարհային գրականության ասպարեզում:

Օտյանի ստեղծագործությունները ներկայացնում են արևմտահայ կյանքի կեսդարյա պատմությունը՝ վերարտադրված գեղարվեստական խոսքի ուժով, տիպական իրադարձությունների, դեմքերի գունագեղ մատուցմամբ: Նրա կերտած կերպարների ճոխ պատկերասրահում, ինչպես հայելու մեջ, ցուցադրված է այդ կես դարը իր հուսատու և ողբերգական դրվագներով, ազատագրական տենդոտ պայքարով, այդ պայքարի տխուր ու եղերական վախճանով:

Օտյանը գրական ասպարեզ է մտել 1880-ական թվականների վերջերին, այն տարիներին, երբ արևմտահայ ռեալիստական գրականությունն ապրում էր իր բուռն զարգացումը: Լույս էին տեսել Ա. Արփիարյանի, Գր. Զոհրապի և այլոց նորավեպերը, Տ. Կամսարականի *Վարժապետին աղջիկը*: Օտյանը գրականությունը հեղաշրջող այս շարժման մեջ էր՝ տոգորված նույն գաղափարներով, ինչ նրա գրչակից ընկերները, որոնք ամբողջ ճակատով պայքարի էին ելել կղերա-ավատական գաղափարախոսության, ռոմանտիկական ուղղության դեմ:

Օտյանն սկսեց տպագրվել ճիշտ այն տարիներին, երբ նոր էր փակվել Հ. Պարոնյանի վերջին թերթը՝ «Խիկարը»: Համիդյան բռնապետության խստագույն այդ շրջանում երգիծական գրականության զարգացման ասպարեզ չկար: Նա սկսեց բանասիրությունից. «Մասիս», «Արևելք» և այլ պարբերականներում տպագրեց ուսումնասիրություններ Նահապետ Ռուսինյանի, Ծերենցի, Գրիգոր Օտյանի, Ֆիկիքա Պողոսի և այլոց մասին: Նրա այդ առաջին երկերում ակնհայտ էին 80-ականների առաջավոր շարժման ազդեցությունը և շեշտակի սահմանազատումը կղերա-պահպանողական գաղափարախոսությունից:

Գրական նոր շարժման պարագլուխը՝ Ա. Արփիարյանը, նշմարելով նրա մոտ երգիծաբանի մեծ տվյալներ, քաջալերում է այդ հակումները, կապում նրան իր խմբագրած «Հայրենիք» օրաթերթի հետ, թելադրում շաբաթական քրոնիկներով խարազանել բուրժուական ապականված բարքերը: Այդ քրոնիկները տպագրվում են *Բերայի մեջ* ընդհանուր խորագրով և մեծ աղմուկ բարձրացնում «ականվաշուքների» հարուստ դասի շրջանում, ուժեղացնելով թերթի դեմ սկսված հալածանքը: Ո՛չ

թերթի հաճախակի խափանումը կառավարության կողմից, ոչ կրոնական իշխանությունների սպառնալիքները չեն վհատեցնում երիտասարդ գրողներին: Գր. Զոհրապը նույն «Հայրենիքի» էջերում տպագրում է *Նարդիկ* վեպը, Արփիարյանը՝ *Հոգու կավակը*, Օտյանը՝ *Գործ եփող մը* երգիծական վեպը, որը տարիներ անց մշակվել է հեղինակի կողմից և լույս տեսել *Միջնորդ տեր պապան* նոր խորագրով. սա հայ ռեալիստական գրականության ամենափայլուն նմուշներից մեկն է:

1895 թվականի դեպքերը խափանեցին ուղիղ տասը տարի առաջ սկսված գրական հուժկու շարժումը: Նոր կարգացում ապրող ռեալիստական գրականության բոլոր ներկայացուցիչներն անցան արտասահման, Պոլսում ընդհատված գործը շարունակեցին Փարիզում (Ա. Չոպանյան), Լոնդոնում (Ա. Արփիարյան, Լ. Բաշալյան), Կահիրեում (Ա. Արփիարյան, Ե. Օտյան, Տ. Կամսարական, Միք. Կյուրճյան և ուրիշներ), կրելով հասարակական նոր հարաբերությունների ազդեցությունը:

Նոր միջավայրի առանձնահատկություններից էին՝ ազատ պայմաններում հակաբռնապետական պայքարի շարունակումը, եվրոպական բանվորական շարժման ազդեցությունն արևմըտահայ մի քանի գրողների (Դ. Վարուժան, Ռ. Սևակ) ստեղծագործությունների վրա, վերջապես՝ հայ քաղաքական կուսակցությունների գործունեության վերագնահատումը:

Վերջինս կարճ ժամանակից դարձավ հայ իրականությունը հուզող ամենահրատապ հարցերից մեկը: Հայ գաղութները, մասնավորապես Եգիպտոսը, լցվել էր անկոչ հերոսներով: Ալեքսանդրիայի նավահանգիստը ոտք դնողը ներկայանում էր իբրև տարիներ շարունակ համիդյան բռնապետության դեմ սարերում պայքարած, տուժած, բանտարկված, կախաղաններից հրաշքով ազատված հերոս կամ Կովկասից եկած հեղափոխական գործիչ: Հրապարակը ողողվել էր «քաղաքական» գործիչներով, որոնց մեծագույն մասը սովորական բախտախնդիրներ էին, ապրուստի այլ ճանապարհ չգտած՝ հեղափոխականի կաղապարի մեջ մտած մարդիկ:

Կար և հասարակական մի այլ խավ՝ հայ քաղաքական կուսակցությունների վավերական ներկայացուցիչներինը, որը միշտ երկրից փող էր ստացել և գործել արտասահմանում, ղեկավարել Թուրքիայում կազմակերպված քաղաքական ընդվզումները: Այդ նրանք էին, որ Կովկասում կամ Եվրոպայում նստած՝ ծրագրել էին Կում Կաբուի 1890 թվականի, Բաբը Ալիի 1895 թվականի հնչակյան ցույցերը և Բանկ Օթոմանի գրավման դաշնակցական ցույցը: Պոլսահայ գրողներն այժմ այդ մարդկանց հանդիպում էին Փարիզի, Լոնդոնի, Կահիրեի սրճարաններում, մի բաժակ գարեջրի առաջ ժամերով ճառ արտասանելիս և, առանց Թուրքիայի քաղաքական պայմանները հաշվի առնելու, արկածախնդրական նոր ծրագրեր կազմելիս, ի հայտ բերելով իրենց մտավոր աղքատությունը, հոգեկան դատարկությունը, շահամոլությունը: Այդ գործիչների կգալի մասն ապրում էր պորտաբույծ կյանքով, ժողովրդի հաշվին: Դա դեռ չարիքի փոքրագույնն էր. աղետալին այն էր, որ չխրատվելով արդեն կազմակերպված ցույցերի տխուր հետևանքներից, նրանք նոր ծրագրեր էին կազմում:

Այս չարիքի դեմ է, որ անխնա պայքար սկսեցին Ա. Արփիարյանն ու Ե. Օտյանը իրենց աշխատակցած և խըմբագրած թերթերի միջոցով: Արփիարյանն ինքն էլ, խճճված լինելով ներկուսակցական հարցերում, չհասավ այն հաջողությանը, որ ունեցավ Օտյանը՝ միշտ հեռու հայ քաղաքական կուսակցություններից որևէ մեկին պատկանելու մտադրությունից:

Օտյանն այդ տարիներին գրել է այլ բնագավառներ շոշափող երկեր, որոնցից հիշարժան են *Արյունոտ հիշատակները*, *Ազգային բարերարը*, *Ոսկեմոլը*. առաջինն ուղղված է համիդյան բռնապետության, իսկ վերջին երկուսը՝ պոլսահայ քաղքենիական խավի և հոգևորականության դեմ. այդ շրջանի նրա լավագույն պատմվածքներից է *Համբարձում աղան*՝ պահպանողական տարրերի կեղծ հեղինակությունը մերկացնող ամենահաջողված նմուշներից մեկը հայ գրականության մեջ: Սակայն սրանք չէին Օտյանի համար բնութագրականը, այլ հայ քաղաքական արկածախնդիր կուսակցությունների անողոք քննադատությունը, որ նա կատարեց *Հեղափոխության մակաբույծները*, *Պրոպագանդիստը* և այլ գործերում: Գրական մեծ տաղանդը, արծարծվող հարցերի այժմեականությունը Օտյանին հնարավորություն տվին թանձր գույներով կերտելու կերպարների մի շարան, որը նորություն էր հայ գրականության համար: Օտյանը դեմ չէր հեղափոխական պայքարին. նա դեմ էր ժողովրդից կտրված, բայց նրա ճակատագրի հետ խաղացող մարդկանց արկածախնդրական գործունեությանը: Այդպիսի հերոսներ էին՝ Օտյանի Վարդիոզյանը, Կուլտամյանցը, Ինձելտուրյանը և ուրիշներ— բոլորն էլ իրական կյանքից վերցված կերպարներ, որոնց նախատիպերը հայտնի դեմքեր էին հայ քաղաքական կուսակցությունների շարքերում: Օտյանը չէր ժխտում անձնազոհ հեղափոխականներին, այլ ժխտում էր «հեղափոխության մակաբույծներին»:

«Հեղափոխական շարժումը,— գրում էր նա,— քսան տարվա մեջ ամբողջ հայ ժողովրդին նկարագիրը փոխեց, նոր ու առույգ ցեղ մը ըրավ կայն, մարդու կարգ անցուց վերջապես: Հեղափոխությունը ջնջեց, մաքրեց մեր վրայեն դարավոր ստրկության մը ապականիչ արատները: Հեղափոխությունը մոգական հրաշագործ ջուրին պես, մեր ցավագար կառամությունը կայտառ երիտասարդության փոխեց» («Կրակ», 1906, թիվ 3):

Նույն միտքը նույն տարիներին բազմիցս արտահայտել է Արփիարյանը: Այս բոլորն անորոշ հավաստիացումներ կարող էին թվալ, եթե մենք չունենայինք փաստ, թե որն էր նրանց պատկերացրած իսկական հեղափոխությունը: Այդ հստակ երևաց Արփիարյանի և Օտյանի՝ ռուսական առաջին հեղափոխության հանդեպ ունեցած անվերապահ վերաբերմունքից: Օտյանն իր հրատարակած «Ազատ բեմ», «Օրենք», «Կրակ», Արփիարյանը՝ «Լուսաբեր», «Շիրակ» թերթերում ջերմորեն ողջունեցին 1905 թվականի հեղափոխությունը՝ հայ ժողովրդի ճակատագիրը կապելով դրա հետ: Գտնելով, որ «Նոր կյանքի մը արշալույսն է, որ կը ծագի Ռուսիո համար», Օտյանը հայ ժողովրդի ճակատագիրը կապում էր այդ հեղափոխության հետ. «Այն օրն որ ռուս ժողովուրդը կխորտակե իր շղթաները,— գրում էր նա,— հայությունն ալ նոր վերածնությամբ մը պիտի ոգևորի» (Ե. Օտյան, Երկերի ժող., հ. 1, էջ XVI):

Նույնիսկ հեղափոխության ժամանակավոր պարտությունից հետո թե՛ Արփիարյանը և թե՛ Օտյանը չէին կորցրել իրենց հավատը վերջնական հաղթանակի նկատմամբ: Օտյանը 1906 թ. իր ընթերցողներին ուրախությամբ հայտնում էր, թե հեղափոխությունը դեռևս տեղի չի տվել, թե «Բանակին մեջ դըժգոհությունները հետզհետե կավելնան... զորախումբերը կը մերժեն ամբոխին վրա կրակ ընելու», թե «Ռուսական զորագունդ մը, որ Օրենպուրկ ղրկված էր ապստամբ գորքերը զսպելու համար, չէ ուզեր ապստամբներուն վրա հրացան պարպել» («Թերթիկ», 1906, թիվ 1) և այլն:

Օտյանի գրական գործունեության ամենաբեղմնավոր շրջանը օսմանյան սահմանադրության տարիներն են: Նա չխափվեց երիտասարդ թուրքերի խոստումներից, բայց անկեղծ խանդավառվեց օրվա դեմոկրատական իրադարձություններով: Սահմանադրության մեղրալուսնային ամիսները քաղաքական այնպիսի խրախճալի մթնոլորտ էին ստեղծել, որ դժվար էր անտարբեր մնալ: Տրվել էր մամուլի, խոսքի ազատություն, կատարվում էին հայ և թուրք եղբայրակցության ցույցեր, արտասահման փախած մտավորականները վերադարձել էին Պոլիս, սկսել գրական կորեղ մի շարժում: Պոլսում լույս էին տեսնում հայերեն վեց օրաթերթ, քանից ավելի շաբաթաթերթ, ամսագիր, տարեգիրք, որոնց էջերը ողողվում էին գրական հրապարակախոսական ստեղծագործություններով: Ճիշտ է, մոլախոտը շատ էր, բայց և արևմտահայ գրականությունն ապրում էր բուռն կարգացում: Եթե 1850—1870 թթ. գրական մշակութային կյանքում տիրապետողը ռոմանտիզմն էր, հետագա տասնամյակում հաղթանակեց ռեալիզմը՝ արդյունք քաղաքական և տնտեսական նոր տեղաշարժերի, իսկ 1890-ական թվականների կեսերից՝ ռեակցիայի սաստկացման հետևանքով աշխուժացան անկումային տրամադրությունները, ապա սահմանադրության առաջին տարիներին միմյանց բախվում էին գրական բոլոր ուղղությունները. նույն հանդեսի կամ թերթի էջերում տպագրվում էին Բալզակի ռեալիստական վեպերը և Վեռլենի սիմվոլիստական գործերը, Ե. Օտյանի կողքին երևում էին ֆուտուրիզմի հիմնադիր Մարինետիի ստեղծագործությունները:

Արևմտահայ չափածոն մշակում էին Վարուժանի, Սիամանթոյի նման տա-

ղանդավոր բանաստեղծներ, արձակը՝ Գր. Զոհրապը, Զ. Եսայանը և ուրիշներ. սակայն սխալված չենք լինի, եթե ասենք, որ սահմանադրության այդ տարիներին նկատելի էր Օտյանի բացարձակ տիրակալությունն արձակի ասպարեզում:

Օտյանը Պոլիս էր վերադարձել 1909 թ. սկզբներին և միանգամից դարձել մի քանի թերթերի ու ամսագրերի աշխատակիցը, խմբագիրը: Նա հիմնականում գրել է «Բյուզանդիոն», «Արևելք», «Հայրենիք» և «Ժամանակ» օրաթերթերում, որտեղ 1909—1914 թթ. լույս են տեսել նրա ամենածավալուն վեպերը՝ *Աբդուլ Համիդ և Շերլոք Հոլմս*, *Սալիհա հանըմ* (յուրաքանչյուրը բաղկացած երեք հատորից), *Ընտանիք, պատիվ, բարոյական*, *Տասներկու տարի Պոլսեն դուրս* (հուշագրություն), *Ես դուրսեցի չեմ առներ* և այլն:

«Բյուզանդիոնում» 1909 թ. Օտյանը հրապարակել է իր հռչակավոր *Ընկեր Փանջունին*, «Կառափնատում»՝ *Ճողոպրիստ և ընկ.*, «Շանթում»՝ *Պատերազմ և խաղաղություն*, «Մանանայում»՝ *Վաճառականի նամակները* երգիծավեպերը, *Մեր երեսփոխանները* երգիծական դիմանկարները: Նույն այդ տարիներին գրել է *Ընկեր Փանջունու* երկրորդ մասը, *Սահմանադրության 69-րդ հոդվածը* և *Զավալլըն* կատակերգությունները: Մի քանի հազարի կարող է հասնել տարբեր թերթերում ու հանդեսներում նրա գրած երգիծական քրոնիկների, հրապարակախոսական հոդվածների թիվը: Եթե սրանց ավելացնենք իր խմբագրած «Կառափնատ», «Մանանա» և այլ երգիծաթերթերը, տարեցույցները, որոնք լցրել է գրեթե մեն-մենակ, նաև այն, որ այդ տարիներին ֆրանսերենից թարգմանել է Լ. Տոլստոյի *Հարությունը*, *Աննա Կարենինան*, Դոստոևսկու *Մեռյալներու տունը*, Զոլայի *Արգասավորությունը*, Ալ. Դյումայի *Անժ Բիթուն*, Պոլ Պուրժեի *Դավիթը* և այլն, ակներև կդառնա Ե. Օտյանի վերոհիշյալ հինգ տարիների զարմանածավալ գործունեությունը:

Այժմ ընդհանուր գծերով ծանոթանանք այդ ժառանգությանը:

*Աբդյուլ Համիդ և Շերլոք Հոլմս* և *Սալիհա հանըմ* պատմաարկածային մեծ վեպերի նյութը համիդյան բռնապետության տարիների կյանքն է, սուլթանական կարգերի դեմ մղված պայքարը Օսմանյան սահմանադրության նախօրեին:

Օժտված արկածային վեպերի հանգույցները բանականությամբ ու հնարամտությամբ լուծելու կոնանդոյլյան խոշոր տաղանդով, նկարագրված դեպքերը, բարդ իրադարձությունների լուծումները համոզիչ դարձնելու կարողությամբ, Օտյանն ստեղծել է այնպիսի հետաքրքրական մի վեպ, որը հափշտակությամբ կարող է ընթերցվել բոլոր լեզուներով: Դրանով պետք է բացատրել *Սալիհա հանըմի* այնքան արագ թարգմանվելը թուրքերեն, հունարեն, ֆրանսերեն:

Առաջին ակնարկից կարող է թվալ, թե 1905 թ. ռուսական առաջին հեղափոխությունն անվերապահորեն ողջունող գրողը վրիպել է քաղաքական իր կողմնորոշման մեջ, 1500 էջանոց վեպի նյութ դարձնելով մի հեղաշրջում, որի շարժիչ ուժը ոչ թե աշխատավորությունն էր, այլ բարձրաստիճան զինվորականությունը, որին սատարում էր երիտասարդ թուրքերի կուսակցությունը, այլ խոսքով՝ սուլթանի հարկադիր համաձայնությամբ կատարված մի հեղափոխություն, որն արմատական որևէ հարց չէր կարող լուծել և չլուծեց, ինչպես Վ. Ի. Լենինն էր նշում, «հին իշխանության այդպիսի հարկադրական հապճեպ զիջումները ամենահաստատ գրավականն են քաղաքացիական պատերազմի նոր, անհամեմատ ավելի վճռական, ավելի սուր, ժողովրդական ավելի լայն մասսաներ գրավող իրադարձությունների» (Երկեր, հ. 15, էջ 217):

Երիտասարդ թուրքերի հեղափոխությունը կանգ էր առել հենց այն աստիճանում, որտեղից սկսվելու էր բուն սոցիալիստական հեղափոխությունը, որը պետք է լուծեր և ազգային հարցը:

Օտյանը չէր կարող խանդավառվել նման հեղափոխությամբ և չի խանդավառվել: Այդ երևում է վեպի վերջաբանից, որտեղ գլխավոր հերոսուհին՝ Սալիհա հանըմը, պատասխանելով իրեն Պոլիս հրավիրող մի նամակի, գրում է. «Չարաչար կսխալիս, երբ կըսես թե հեղափոխության շրջանը ալ վերջացած է: Ընդհակառակը, բուն հեղափոխությունը պետք է որ այսօրվընե սկսի և սահմանադրությունը հաստատվի առանց բռնավորության օժանդակության և անոր ավերակներուն վրա» (Ե. Օտյան, *Սալիհա հանըմ*, հատ. 9, էջ 200, Կ. Պոլիս, 1912):



Օտյանի դիրքորոշումը երևում է ամբողջ վեպում, ուր նա առանցքային հարց է դարձրել ժողովրդական զանգվածային ընդվզումը: Ի տարբերություն հակաբռնապետական այլ վեպերի, որտեղ առկա էին երկու բևեռ՝ թուրքն ու հայը, Օտյանի՝ իրական փաստերն արտացոլող վեպում հեղափոխական պայքարի են ելել Թուրքիայում ապրող բոլոր ժողովուրդները՝ թուրքերը, հայերը, բուլղարները... համընդհանուր ընդվզումը նա համարում է ժողովուրդների համերաշխության յուրօրինակ արտահայտություն:

Այս բոլորով հանդերձ՝ պատմա-արկածային վերոհիշյալ երկու վեպերը չեն, որ որոշում են Օտյանի տեղը հայ վիպագրության մեջ, այլ տասի հասնող այն վեպերն ու վիպակները, որոնք նա լույս է ընծայել նույն տարիներին:

Պոլսահայ քաղքենիական կյանքը, կենցաղը, օտարամոլությունը հայ գրողներին զբաղեցրել էր դեռևս 1850-ական թվականներից, առանցքային հարց դարձել 80-ական թվականների ռեալիստական գրականության ներկայացուցիչների մոտ: Սակայն անվարան կարելի է ասել, որ այդ կյանքն իր համապարփակ ընդգրկմամբ երևաց Երվանդ Օտյանի *Ընտանիք, պատիվ, բարոյական*, *Թաղականին կնիկը*, *Միջնորդ տեր պապան*, *Միքեի սիրարկածը*, *Ես դուրսեցի չեմ առներ* և այլ վեպերում ու վիպակներում, որոնցում զարմանալի հարազատությամբ ցուցադրված է արևմտահայ կյանքի մի ամբողջ հիսնամյակի պատմությունը՝ իր ամենաբնորոշ առանձնահատկություններով: Եթե նրա գրչակից ընկերների երկերում նշմարելի է այդ կյանքի այս կամ այն կողմը, ապա Օտյանն ամենահստակ հայելու մեջ ներկայացնում է բոլոր անկյունները: Զուգահեռ զարգացրած սյուժետային պատմություններում նա ընդգրկել է հասարակական բոլոր խավերի ներկայացուցիչներին, յուրաքանչյուրին գծելով իր միջավայրի մեջ՝ համոզմունքներով, սովորություններով, բնավորության ու մտածողության գծերով: Նրա մոտ հազվադեպ են անկենդան կաղապարները: Օտյանը չունի բալզակյան ոճի հոգեբանական նկարագրությունները. բնավորություններ կերտելիս թվում է թե ընթանում է մակերեսից, մի բան, որ թելադրված էր թերթոնային գրականության առանձնահատկություններով, այսինքն՝ օր-օրին ընթերցվելու, ընթերցողի հետաքրքրասիրությունը վառ պահելու նկատառումով: Բայց հերոսների գործողությունների, մասնավորապես նրանց խոսակցությունների սրամիտ կառուցվածքով ուրվագծվում են մեծ տաղանդով վրձնված գունագեղ այնպիսի կերպարներ, որոնք հայ գրականության պատկերասրահում միշտ էլ պիտի ունենան իրենց արժանի տեղը:

Պարոնյանից հետո Օտյանն ամենամեծ վարպետն է երկախոսությունների: Գիտե արտաքուստ շատ բնական թվացող մի զրույցի միջոցով բացահայտել մարդկանց նկարագրի տարբերությունը, հոգեբանությունը:

Նրա վեպերի մի այլ առանձնահատկությունն էլ հայկական շրջանակներից դուրս գալն է: Օտյանն իր պատմաարկածային վեպերում, երբեմն նաև այլ երկերում, տեսել է օտարների, ո՛չ միայն տեսել է, այլև՝ հավատարիմ պատմական փաստերին, իր դրական հերոսներին (Սալիհա հանըմ, Հագգը բեյ և այլն) վերցրել թուրքական միջավայրից:

Պատմա-արկածային վեպերում Օտյան-երգիծաբանն աննշմարելի է: Այնտեղ հերոսները բացառապես զարգանում են գործողության մեջ. նրանց անհատական կյանքը, կենցաղային առօրյան գրեթե չեն երևում: Այդպես չէ քաղքենիական կյանքը ցուցադրող վեպերում. ո՛չ միայն *Միջնորդ տեր պապայում*, որը հեղինակը համարել է երգիծական վեպ և իր հերոսներին գծելիս շարունակ ստեղծել զավեշտական տեսարաններ, զվարճալի երկախոսություններ, այլև *Ընտանիք, պատիվ, բարոյական*, *Թաղականին կնիկը* և այլ երկերում, որտեղ յուրաքանչյուր քայլափոխում երևում է երգիծաբանը: Օտյանը հյութեղ ոճով նկարագրում է զավեշտական այնպիսի տեսարաններ, որոնք կարծեք ոչ թե ընթերցում, այլ տեսնում եք բեմի վրա: Դա նկատվում է, հատկապես, հարուստ ընտանիքների առօրյան արտացոլելիս:

Օտյանի գլուխ-գործոցը նշանավոր *Ընկեր Փանջունին* է, որը կարող է լինել զարգացած ամեն մի ժողովրդի գրականության զարդը: *Փանջունին* արտացոլումն էր հասարակական-քաղաքական նոր տեղաշարժերի, որոնք առաջացել էին հայ իրականության մեջ,

հավաքական կերպարը պորտաբույծ այն տարրերի, որոնք, չկարողանալով ապրուստի այլ միջոց գտնել, ներկայանալով իբրև հեղափոխության գործիչներ, ապրում էին ժողովրդի հաշվին: Վախկոտ, մորթապաշտ, եսամոլ այդ մարդիկ, չարաշահելով ժողովրդի ազգային զգացումները, սոցիալական դժգոհությունը, դոնքիշոտական արկածախնդրություններով չարիք էին պատճառում նրան:

Հայ ժողովրդի ճակատագրի հետ սերտորեն կապված այս խնդիրը Օտյանին զբաղեցրել է ուղիղ քառորդ դար՝ 1890-ական թվականների վերջերից մինչև մահվան օրերը: Հեղափոխության մակաբույծներին նա տեսավ հասարակական քաղաքական տարբեր պայմաններում, տեսավ 90-ական և 900-ական թվականներին՝ եվրոպական մայրաքաղաքների սրճարաններում նստած հայ ժողովրդի բախտի հետ խաղալիս, օսմանյան սահմանադրության տարիներին երկրի ներսում ազատ գործելիս, տեսավ, վերջապես, մեծ եղեռնից հետո՝ տարագրության մեջ. տեսավ ու համոզվեց, որ ինքնակոչ այդ գործիչները նույնն էին բոլոր պայմաններում:

*Հեղափոխության մակաբույծները*, *Պրոպագանդիստը*, *Ճողուպրիստ* և *ընկ.*-ը, գրված օսմանյան սահմանադրությունից առաջ և *Ընկեր Փանջունի* եռագրությունը՝ գրված հետագա տարիներին, մի ամբողջություն են, նույն երևույթի զարգացման տարբեր արտահայտությունները: Փանջունին իր մեջ խտացնում է *Հեղափոխության մակաբույծների* հերոսներ Վարդիոզյանների, Զաքեոսների, Կակայանների, *Պրոպագանդիստի* հերոսներ Կուլտամյանցների, Ինձելտուրյանների, *Ճողուպրիստի* հերոս Կերավյանների բոլոր հատկանշական գծերը:

Հիշատակված գործիչների համար ընդհանուրն այն է, որ բոլորն էլ ապրում են անաշխատ մարդու՝ մակաբույծի կյանքով. հեղափոխությունը նրանց համար ոչ թե դավանանք է, այլ ապրուստի միջոց: Ունենալով հանդերձ այս ընդհանուր գծերը՝ նրանք տիպականացված են բնավորության ուրույն հատկանիշներով: Օրինակ, ընդգծված է Վարդիոզյանի պոռոտախոսությունը, իր ուժի, կարողության գիտակցության պակասը, Զաքեոսի՝ մորթապաշտությունը, պատեհապաշտությունը, իսկ «արտասահմանյան գործիչ» Կակայանցը պարզապես դրամաշորթ է:

Փանջունին սրանց նման սովորական մակաբույծ չէ և ոչ էլ միայն անխոհեմ ծրագրեր կազմող բախտախնդիր: Այդ ծրագրերի «կենսագործողն» է նա, դրանով իսկ՝ ավելի մեծ չարիք ու պատուհաս ժողովրդի գլխին: Նրա համար բնորոշ է բացարձակ անիրազեկությունն այն կյանքի, պայմանների, որտեղ ուզում է գործել, նա գերագնահատում է սեփական կարողությունը, անգիր արված բանաձևումները, դրույթները բռնի պարտադրում միամիտ ժողովրդին, ամեն ձախողանք ընկալում որպես մեծ հաղթանակ: Այս տեսակետից չափազանց բնորոշ է Ծապլվար գյուղի կործանման նկարագրությունը, որ Փանջունին ներկայացնում է իբրև իրենց կուսակցության գաղափարական հաղթանակը: Նա ոչնչացնում է, քանդում ամենամոլեգին կրքով և իրեն թվում է, թե շինում է. քանդում ժողովրդի թե՛ տնտեսական կյանքը և թե բարոյական ըմբռնումները:

Իհարկե, Օտյանի հերոսը դաշնակցական գործիչ է. հեղինակը նրա միջոցով ծաղրում է այդ կուսակցության գործունեությունը: Իր հերոսի կենսագրությունը նա տալիս է այնպիսի մանրամասներով, որոնք ոչ մի կասկած չեն թողնում դրանում, իսկ Փանջունու հայտնի դասախոսությունների մեջ հերոսն արդեն հանդես է գալիս ուղղակի որպես դաշնակցության ներկայացուցիչ. սակայն սխալ կլիներ Փանջունու կերպարը տեղադրել միայն այդ կուսակցության նեղ կաղապարի մեջ. դրանով շատ փոքրացրած կլինեինք նրա հասարակական արժեքը: Օտյանը կերտել է համամարդկային մի հերոս, որը բնութագրական է սոցիալիզմի անունից խոսող, ժողովրդի շահերի մասին ճամարտակող, բայց այդ ժողովրդի գլխին փորձանք դարձած քաղաքական ամեն կարգի արկածախնդիր գործիչների ու խմբակցությունների համար, ի՛նչ կուսակցության, ի՛նչ երկրի էլ պատկանեն նրանք: Փանջունին բացառիկ երևույթ է ո՛չ միայն հայ, այլև համաշխարհային գրականության համար:

Հայ ականավոր որոշ գրողներ Փանջունուն համեմատել են Տարասկոնցի Տարտարենի, Դոն-Քիշոտի և համաշխարհային այլ կերպարների հետ: Որ Օտյանի հերոսը արժանի է այդպիսի համեմատությունների, կասկածից վեր



է, բայց գլխովին հակառակ կերպարներ են Դոն-Քիշոտն ու Փանջունին: Նրանք նման են միմյանց արտաքին աշխարհի ընկալման պատրանքով, իրենց պայքարի արդյունքի գնահատման անկարողությամբ, վնասը օգուտ տեսնելու մոլորությամբ, բայց խորքում շատ տարբեր են: Առաջինի ազնիվ անհատականության, անձնազոհության դիմաց Փանջունին ներկայանում է որպես մարդկային հասարակարգի տականքի խտացում՝ երկչոտ, մորթապաշտ մի արարած, որի արկածախնդրությունը հասարակական մեծ չարիք է: Մյուս կողմից՝ աննկարագրելի պոռոտախոս է Տարտարենը, բայց նրա պատմածներն ի վերջո մեծ մասամբ պտտվում են իր անձի շուրջը, նա չունի հասարակական այն կշիռը, ինչ ունի Փանջունին:

Երգիծական այն միջոցները, որ օգտագործել է Օտյանն իր այդ հերոսին կերտելու համար, նույնպես նորություն է մեր գրականության մեջ: Մինչ Պարոնյանի թե՛ կատակերգություններում և թե՛ վիպակներում գավեշտականն առաջանում է խոսքի և դրության կոմիզմի մոլիերյան միջոցների օգտագործումից, այսինքն՝ մեծ մասամբ թյուրիմացությունների, թյուր հասկացողությունների արդյունք հոգեվիճակների բախումից, *Փանջունու* մեջ կատակերգական դեպքերը հյուսվում են այլ հենքի՝ իրականության ու պատրանքի դոնքիշոտյան բախման վրա:

Օտյանի հետպատերազմյան տարիների ստեղծագործությունը կրում է ժամանակաշրջանի ծանր կնիքը: Այն շատ է տարբեր նախընթաց տարիների երկերից, որոնցում նկատելի էր յուրահատուկ մի լավատեսություն: Գործվել էր պատմության մեջ աննախադեպ ոճիրը, որին զոհ էր գնացել հայ ժողովրդի մի մեծ հատվածը: «Երիտասարդ թուրքերի» ղեկավարները մի գիշերում ձերբակալել, աքսորել ու ճանապարհներին խոշտանգել էին այն բոլոր մարդկանց, որոնք սահմանադրության տարիներին այնպիսի եռանդով զարկ էին տվել հայ մշակույթին, մասնավորապես գրականության ու հրապարակախոսությանը:

Պատերազմից հետո, երբ մասնակի հնարավորություն ստեղծվեց նորից վերսկսելու ընդհատված գործը, արդեն չկային հայ գրականության ամենաականավոր դեմքերը՝ Վարուժանը, Սիամանթոն, Զոհրապը, Սևակը և տասնյակ ուրիշներ: Այժմ նրանց լուսանկարները տպագրվում էին թերթերում, կողքին՝ *նահատակ*:

Ծանր ոդիսական էր ապրել և Օտյանը, ունեցել արկածալից ու տառապալից կյանք: Շատերը նրան ևս գցել էին սպանվածների ցուցակը, նրան ևս համարում էին Անատոլուի խորքերում խոշտանգված գրողներից մեկը: Բայց ահա թերթերում երևաց խունացած, դեղնած մի նկար, անճանաչելի մի մարդ՝ թուրքական զինվորի կեղտոտված շինելի մեջ կուչ եկած, գլխին՝ մաշված գլխարկ: Այլափոխված այդ մարդուն ոչ ոք չէր ճանաչի, եթե նկարի տակ գրված չլիներ՝ Երվանդ Օտյան, *վերապրող*: Մամուլում հնչեց նաև դիակների միջից հառնած այդ գրողի անդրշիրիմյան սարսռազդեցիկ ձայնը:

«Ողջո՜ւյն քեզ, հայ ժողովուրդ,— մեռա՜, ողջո՜ւյն ձեզ, հայության մնացորդներ, հեռուեն, շա՜տ հեռուներեն կուգամ»:

Ու թվարկվում էին արաբական անապատներում ձգված դժոխային այն վայրերը, որտեղով անցել էր մեծ գրողը, անցել ու տեսել իր ժողովրդի ողջակիզումը:

Դա 1918 թ. նոյեմբեր ամսին էր: Ջարդից ազատվել էին քիչ թվով գրողներ, որոնց մեջ ամենից ականավորը Օտյանն էր. ահա թե ինչու ամենից շատ նրանով էր զբաղվում մամուլը: Նորից միմյանց ձեռքից խլում են նրա վեպերը, նորից Օտյանի հուսատու, զվարթ գրականության շունչը թարմացնում էր ողբերգական դրվագների սարսուռով հագեցած մթնոլորտը: Նույնիսկ եղեռնի մասին նա գրում է ոչ այն լալկան ոճով, որով գրում էին ուրիշները:

«Ժամանակ» օրաթերթում տպագրում է *Անիծյալ տարիներ* հուշագրությունը աքսորի տարիների իր տառապալից կյանքի մասին, որը նա մի առիթով համեմատել է Ժիլ Պլասի արկածալից կյանքի հետ: 1919 թվականից դառնում է «Վերջին լուր» անկուսակցական թերթի խմբագրության անդամներից և հիմնական աշխատակիցներից մեկը. այստեղ տարիներ շարունակ տպագրվում են նրա արկածային նոր վեպերը— *Թիվ 17 խաֆիեն*, որը հետագա-

ցում սփյուռքում լույս է տեսել առանձին գրքով՝ չորս հատորներով, *Կանաչ հովանոցով կինը*— առաջինի յուրօրինակ շարունակությունը, *Տաքիթա կամ նոր աղջիկներ* և այլն:

Բացի երկարաշունչ այս վեպերից, երգիծական քրոնիկներով, պատմվածքներով, ակնարկներով նա աշխատակցում է բազմաթիվ թերթերի: Հիշատակության արժանի են միաժամանակ երկու տարբեր թերթերում ամեն օր նրա գրած *Առավան տոմսերն* ու *Իրիկվան տոմսերը*, որոնցում երգիծական հատու վենքով գնահատել է օրվա քաղաքական, հասարակական, մշակութային իրադարձությունները: Հայ գրականության ու արվեստի հարցերին անդրադառնալիս, ինչպես, Պոլսո հայ դրամատիկ թատերախմբի աշխատանքները գնահատելիս, Օվի Սևումյանի մահը ողբալիս և այլն նրա գրածները վերծ են երգիծանքից:

Բնութագրական է անվերապահ այն համակրանքը, որ նա ցուցաբերել է վերածնված Սովետական Հայաստանի ու նրա մշակույթի գործիչների հանդեպ: Օտյանը մեծապես խանդավառվել է Հովհաննես Թումանյանի ջանքերով Պոլսում ստեղծվելիք Հայարտան հեռանկարով, միջոցառում, որը, դժբախտաբար, վերահաս քաղաքական դեպքերի պատճառով չիրականացավ:

Այդ տարիներին Օտյանը հրատարակել է «Իգնատ աղա», «Շավիղ-Իգնատ աղա» երգիծաթերթերը, «Երգիծական տարեցույցները» ուր հրատարակված նյութերի մեծ մասը պատկանում է նրա գրչին:

Այդ մի քանի տարիների ընթացքում, հատկապես 1920—1922 թթ. առանձին գրքերով նա հրատարակել է նախորդ տարիներին մամուլում տպագրված իր կարևոր երկերից մի քանիսը, նաև նոր ստեղծագործություններ՝ *Մատնիչը* (1920), *Չագըր Ավրամ* (1920), *Միքեն սիրարկածը* (1920), *Միջնորդ տեր պապան* (1920), *Հեղափոխության մակաբույծները* (1920), *Դատապատանական խորհրդին առջև* (1921), *Թաղականին կնիկը* (1921), *Տասներկու տարի Պոլսեն դուրս* (1922) և այլն:

Այս թվարկումն իսկ ցույց է տալիս, թե ինչպիսի բեղմնավոր գործունեություն է ունեցել նա 1919—1922 թվականներին: Վերահրատարակվածներից մի քանիսը ենթարկվել են որոշ խմբագրման, դարձել ավելի կուռ (ինչպես *Միջնորդ տեր պապան*): Սակայն նրա նոր գրվածները շատ են տարբեր սահմանադրական տարիների պատմա-արկածային կամ ռեալիստական վեպերից: *Թիվ 17 խաֆիեն* և *Կանաչ հովանոցով կինը* վեպերի նյութը վերցված է սահմանադրական շրջանից, այսինքն՝ այն տարիներից, որոնք հաջորդել էին *Աբդյուլ Համիդ ու Շերլոկ Հոլմս* և *Սալիհա հանըմ* վեպերում ընդգրկված պատմաշրջանին: Ի տարբերություն նախորդների, որտեղ ներկայացված է թուրքական իրականությունը (որոշ հայերի մասնակցությամբ), երկու նոր վեպերում պատկերված է հայկական կյանքը, գործող հերոսներից ոմանք էլ իրական անձնավորություններ էին, հանդես էին գալիս բուն անուն-ազգանունով: Իրենց արկածային կառուցվածքի, լարված իրադրությունների, տագնապալի վիճակների ցուցադրման և հանգույցների հնարամիտ լուծման շնորհիվ հետաքրքրությամբ կարդացվում են *Թիվ 17 խաֆիեն* և *Կանաչ հովանոցով կինը*, որոնք, սակայն, անհամեմատ թույլ գործեր են: Եվ, եթե, այնուամենայնիվ, այժմ էլ դրանք կարող են ընթերցվել հետաքրքրությամբ, պատճառն այն է, որ արտացոլում են հայ ժողովրդի համար ճակատագրական նշանակություն ունեցած մի ժամանակաշրջանի տենդոտ կյանքը և ունեն ճանաչողական արժեք:

Խաբուսիկ այս ապատության շրջանն էլ երկար չի տևում: Քեմալական շարժման հաղթանակից հետո սկսվում է կանգվածային արտագաղթը դեպի օտար երկրներ: Հայ մտավորականությունը հիմնականում գաղթում է Բալկանյան երկրները, Ֆրանսիա, Ամերիկա և այլուր: Օտյանն էլ հեռանում է երկրից, նախ՝ անցնում է Ռումինիա, այնտեղից՝ Միջագետք, ապա՝ Եգիպտոս, որտեղ անց է կացնում կյանքի վերջին տարին, աշխատելով «Արև» օրաթերթի խմբագրությունում: Այդ տարիներին նա ճանաչում է սփյուռքը՝ իր ողջ ողբերգականությամբ: Ամեն կողմ գաղթականներ, որբեր, աղքատներ, աշխատանք որոնողներ, անդադար տեղաշարժ մի վայրից մյուսը: Այս նոր տպավորությունները նա դարձնում է նյութ *Հայ տիտաքորան* վեպի, որը լույս է տեսել «Արև» օրաթերթում, 1925 թ.: Այն աչքի չի ընկնում իր գեղարվեստական կուռ մշակմամբ, սակայն նըկատվում է հեղինակի որոշակի դիրքորոշումը դեպի սովետական մայր հայրենիքը. հերոսների ձգտումն է մեկնել Հայաստան:

Սփյուռքում կարգանում էր ջղաձգական, հուսահատ մի գրականություն, որի շոշափած հիմնական հարցն էր եղեռնը: Լույս էին տեսնում տասնյակ գրքեր, հարյուրավոր հոդվածներ, որոնք պարունակում էին սարսռազդեցիկ դրվագներ Եփրատի ափերից, Տեր Զորի անապատներից: Այդ գրականությունը բարոյապես թուլացնում, անկամ էր դարձնում առանց այն էլ հուսահատ վիճակի մատնված հայ ժողովրդին: Անհրաժեշտ էր հուժկու, սթափեցնող մի ձայն՝ հեռու պահելու մարդկանց մեռելաթաղային արարողություն հիշեցնող նման գրականությունից:

Այդպիսին եղավ Օտյանի ձայնը:

«Նվաստացուցիչ, ամոթալի բան մըն է խորհիլը, թե այսօր մեռելներով ու միմիայն մեռելներով կապրինք ու կը սնանինք մենք... Մեր ամբողջ ինքնությունը, գործունեությունը, կյանքը դիակներով շաղված, մումիացած, բրածոյի վերածված է: Դիակներու այս ճընշող, անբանացնող տիրապետության դեմ պետք է ընդվզիլ... Մաքրագործող ու լափլիզող կրակի մը շեկ բոցերուն մեջ պետք է աճյունացնել, մոխիրի վերածել այդ խափանիչ, ջլատիչ անցյալը և կայն ցիրուցան տարտղնել անմատչելի բարձրություններու մեջ գոռացող ամպրոպի մրրկահար հորձանքին չորս հովերուն» (*Հունահայ տարեգիրք*, 1930, էջ 200—201):

Օտյանը կոչ է անում չկլանվել եղեռնով, այլ մտածել նոր կյանքի, վերակենդանացման մասին, զարկ տալ լավատես, կենսուրախ գրականությանը: Այդ նպատակն էին հետապնդում 1925—1926 թթ. «Արև» թերթում ամեն օր նրա տպագրած երգիծական քրոնիկները, որոնք լույս էին տեսնում *Վերնատունեն* ընդհանուր խորագրով, ինչպես և «Հայկական սինեմա» երգիծաթերթը, որ նա հրատարակում էր հայտնի ծաղրանկարիչ Ալ. Սարուխանի հետ միասին, վերջինիս սրամիտ պատկերազարդումով:

Բայց Օտյանը մարդկանց լոկ ծիծաղեցնող, զվարճացնող չէր, նրա գրականությունը խորապես գաղափարական էր, նրա ծիծաղում էլ երևում էր նույն մեծ ողբերգությունը. նա դարձյալ անխնա էր ընկեր Փանջունիների նկատմամբ, որոնց գործունեությունն այժմ տեղափոխված էր գաղթօջախները, անխնա էր եվրոպական խարդախ դիվանագիտության նկատմամբ, որը նվազ դեր չէր կատարել հայ ժողովրդի դժբախտ ճակատագրում:

Այժմ արդեն նա ծիծաղեցնում էր, բայց չէր ծիծաղում, շրջապատը, իր իսկ կյանքն այնքան էր ողբերգական, որ անհնար էր այդպես արագ հոգով կերպարանափոխվել:

Այդ տարիներին մենք եղել ենք նրա գրաշարը և իբրև ականատես կարող ենք ասել, թե որքան ծանր ու տառապալից եղան նրա կյանքի վերջին ամիսները, երբ նա գարեջրատան մի անկյունում, մի փոքրիկ սեղանի առաջ նստած, գրում էր *Վերնատունենը*, «Հայկական սինեմայի» նյութերը, թարգմանում *Հակոբա ջրհորը*, Մարկ Տվենի *Իշխանն ու աղքատը* վեպերը:

Ու մի օր էլ, 1926 թվականի հոկտեմբերի 6-ին, նրան թաղեցին Մարմինայի գերեզմանատանը, իր գրչակից ու գաղափարակից ընկերոջ՝ Ա. Արփիարյանի կողքին: Բայց թաղեցին մարմինը. Օտյանի ստեղծագործությունը հարություն առավ, նորից սնեց սփյուռքահայ մամուլը, տպվեց ու արտատպվեց տասնյակ անգամներ, հասավ մինչև մեր օրերը, ցուցադրեց սերունդների հետ դեպի ապագան ընթանալու բացառիկ ուժ:

Գ. Խ. ՍՏԵՓԱՆՅԱՆ
Արվեստի վաստակավոր գործիչ



## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

# ՀՌԵՏՈՐԱԿԱՆ ԱՐՎԵՍՏԻ ՍՈՑԻԱԼ-ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԲՆՈՒՅԹԸ

Ս. Բ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

Հռետորական արվեստն իր զարգացման ընթացքում տարբեր ձևերով է հանդես եկել, տարբեր են եղել նրա ստանձնած սոցիալական ֆունկցիաները։ Յուրաքանչյուր դասակարգ հատուկ մոտեցում է ունեցել հռետորության նկատմամբ, այն մեկնաբանել յուրովի։

Դեռևս հին աշխարհում հռետորությունը սոցիալ-քաղաքական կյանքի ատրիբուտներից էր, քաղաքական պայքարի զենքը։ Պատահական չէ, որ անտիկ աշխարհի հանճարեղ մտածող Արիստոտելն այդ հարցին է նվիրել իր «Հռետորություն» խորագիրը կրող աշխատությունը։

Ժամանակակից բուրժուական փիլիսոփայական միտքը մեծ հետաքրքրություն է ցուցաբերում հռետորության նկատմամբ։ Նման ուշադրությունը վերջինիս հանդեպ ունի իր սոցիալական ու իմացաբանական պատճառները։

Բուրժուական գաղափարախոսները իր դարն ապրած հասարակարգը պաշտպանելու և գունազարդելու համար ճգնում են մշակել հասարակական կարծիքի վրա ներազդելու զանազան միջոցներ։

Այժմ, ժամանակակից կոմունիկացիայի պայմաններում, երբ յուրաքանչյուր գաղափար, յուրաքանչյուր քաղաքական իրադեպ ժողովուրդն ընկալում է ինֆորմացիայի բազմազան միջոցներով, հաղորդակցվում է քաղաքականությանը, դառնալով վերջինիս կարևոր գործոնը։ Պառլամենտական, պրեզիդենտական ընտրություններն արդի իմպերիալիզմի հակասությունների սրման պայմաններում կարող են քիչ թե շատ հաջողություն ունենալ, եթե ընտրողների մոտ ստեղծվում է որոշակի համոզմունք։ Ահա թե ինչու իմպերիալիզմի ջատագովներն ամեն կերպ աշխատում են իրենց գաղափարները տարածել մասսաների շրջանում, նրանց համոզել իրականացվող քաղաքականության ճշմարտացիության մեջ։ Այս գործում նրանք լայնորեն օգտագործում են հռետորական արվեստը, վերջինիս հարուստ հնարքները։

Պատմականորեն և ըստ էության հռետորությունն առնչություն ունի ճըշ-



մարտության և կեղծիքի պրոբլեմի հետ։ Հռետորը ձգտում է կենդանի խոսքի
միջոցով հասարակությանը համոզել որոշակի գաղափարի ճշմարտացիության
մեջ։
Չնայած հռետորությունն ունի ընդգծված դասակարգային բնույթ, այն
բոլոր դեպքերում այս կամ այն ձևով առնչվում է ճշմարտության պրոբլեմի
հետ։ Հռետորական արվեստը կրում է ժամանակի կնիքը, սոցիալ-դասակար-
գային հարաբերությունների ազդեցությունը։ Վերջինիս կիրառումը և զար-
գացումը ենթադրում է խոսքի հարաբերական ազատություն, առաջ քաշված
հարցերի դեմոկրատական քննարկում։ Հռետորական խոսքը ուղղված է լսա-
րանին, հասարակությանը, որն իր ունկնդրումով, գնահատումով ու վերաբեր-
մունքով այն նպատակային է դարձնում։ Պատահական չէ, որ հռետորությու-
նը պատմականորեն այն դարաշրջանի ու պայմանների արգասիք է, երբ սո-
ցիալ-քաղաքական կարևոր խնդիրների լուծումը իրականացվում է դեմոկրա-
տական սկզբունքներով։
Հռետորական արվեստի պատմությունը վկայում է, որ պերճախոսությու-
նը զարգանում է այնտեղ, որտեղ քաղաքացիների համար ստեղծված են քա-
ղաքական կյանքին գործուն մասնակցելու հնարավորություններ և պայման-
ներ։
Հին Հունաստանում մ.թ.ա. V դարում, ստրկատիրական դեմոկրատիայի
ծաղկման շրջանում, երբ երկրի ներքին ու արտաքին կյանքի բոլոր կարևոր
հարցերը լուծվում էին էկլեսիայում՝ ժողովրդական ժողովում, հռետորական
արվեստի զարգացման համար առկա էին անհրաժեշտ նախադրյալները։ Ար-
տաքին ու ներքին քաղաքականության շուրջը ծագած բանավեճերի ժամանակ
անցնում էր համոզեցուցիչ առաջարկը։ Տվյալ դեպքում չպետք է անտեսել հին
հունական դեմոկրատիայի սահմանափակությունը, քանի որ Աթենքում քա-
ղաքացիների շարքն էին դասվում միայն ազատները։ Սակայն դա մեծ առա-
ջադիմություն էր հարցերի դեմոկրատական լուծման տեսանկյունից և հակա-
դրվում էր իրեն նախորդած արիստոկրատական իշխանությանը։
Ինչպես քաղաքական, այնպես էլ դատական հռետորությունը Հին Հու-
նաստանում ծաղկում ապրեց միայն Աթենքում. մյուս քաղաք-պետություննե-
րը չեն ունեցել նշանավոր հռետորներ։ Դա բացատրվում է հենց գոյություն
ունեցող քաղաքական կարգով և կառավարման վարչաձևով։ Սպարտայում,
օրինակ, իշխող արիստոկրատական կարգը չէր կարող նպաստել քաղաքացի-
ների մասնակցությանը հասարակական-պետական կառավարմանը։ Իզուր չէ
ասված, որ դեմոկրատիան հռետորության մայրն է։ Վ. Գ. Բելինսկին նկատել
է, որ կառավարման հանրապետական ձևը պերճախոսությունը դարձրեց ամե-
նակարևոր և անհրաժեշտ արվեստը։
Պատահական չէ նաև, որ հռետորությունը զարգացում ապրեց նաև հին
Հռոմում։ Հռետորության առաջընթացին մեծապես նպաստում էր այն հանգա-
մանքը, որ այստեղ դատական պաշտպանությունը կատարվում էր ձրի, իսկ
հատուցումը՝ հասարակական ճանաչումն էր կամ պաշտոնի բարձրացումը։
Գրավելով բարձր պոստեր, ոչ ոք չէր հրաժարվում դատապաշտպանի
պրակտիկայից, որովհետև այն միջոց էր հանդես գալու ժողովրդի առջև, վա-
յելելու վերջինիս համակրանքը։
Պատմության տարբեր ժամանակաշրջաններում հռետորության անկումն
ու զարգացումը պայմանավորված են եղել հասարակական ու քաղաքական
կյանքի կառավարման դեմոկրատական կամ ոչ դեմոկրատական ձևերով։

Հանրապետական կարգի անկումից հետո, հռոմեական կայսրերի ժամանակ, քաղաքական հռետորությունը այլևս հարգի չէր, և այն իր տեղը մասնավորապես զիջում է ներբողական՝ գովաբանական խոսքի արվեստին։

Միապետության գերիշխանության պայմաններում հռետորական խոսքն անբովանդակ էր։ Այդ պատճառով ժամանակին նման աղքատացման դեմ պայքարի դրոշ են պարզել ազատ, անկաշկանդ պերճախոսության կողմնակիցները։ Հռոմեական պատմագետ Տակիտոսին վերագրվող Խոսք ճռետորների մասին աշխատությունում խոսվում է մի բանավեճի մասին, երբ ձևական պերճախոսության հակառակորդը հեգնում է ուռճացած, փքուն ճառը, որի «տակ կարելի է միայն ապրել»։ Դրան հակառակ, ձևական պերճախոսության ներկայացուցիչը գտնում է, որ փոխվել են հանգամանքները, նոր ժամանակներում դատում է միայն մեկ իմաստունը։ Այստեղ պետք չեն ապացույցներ, կարևորը ճառի արտաքին փայլն է։

Միջնադարյան սխոլաստիկայի, խավարամոլության երկարատև ժամանակաշրջանում հռետորական արվեստը ֆեոդալական միապետական կարգերի հալածանքների հետևանքով մոռացության տրվեց։ Քրիստոնեության տարածման, հոգևորականության արտոնյալ վիճակի շնորհիվ լայնորեն շրջանառության մեջ դրվեցին կրոնա-բարոյական բնույթի հոգևոր ճառերը։

Գիտության մեջ, սխոլաստիկայի գերիշխանության պայմաններում, զարգացավ խոսքի արվեստի այն ձևը, երբ անգիր էին արվում տեքստային մեծ հատվածներ՝ գիտական բանավեճը, որպես կանոն, վերածվում էր ցիտատների իմացության մրցույթների։ Հենց այդ ժամանակաշրջանում է, որ ծաղկում է այնպիսի բացասական երևույթ, ինչպիսին դոգմատիզմն է։

Քաղաքական ճարտասանության վերակենդանացումը կապված է սոցիալ-քաղաքական զարգացման, ֆեոդալիզմի քայքայման և նոր, կապիտալիստական կացութաձևի առաջացման հետ։

Հռետորությունը վերածնվեց Ֆրանսիայում XVIII դարի վերջին, երբ ազգային ժողովի 1791 թ. սեպտեմբերի 16-ի ակտով հիմնվեց երդվյալների դատարանը և քրեական գործերի քննության մրցակցական ձևը դատական (հետևաբար և քաղաքական) խոսքի ֆրանսիական վարպետներին հնարավորություն տվեց զարգացնել դատական ճարտասանությունը։

Ֆրանսիական դատական հռետորական արվեստի առաջընթացին զգալի չափով նպաստել է նաև փաստաբանների կորպորացիայի կազմակերպումը որպես դատական և պետական հիմնարկներից համեմատաբար անկախ հասարակական մի կազմակերպություն, որը ֆրանսիական փաստաբաններին հնարավորություն էր տալիս ավելի բացարձակ և համարձակորեն հանդես գալ և քննադատել վարչական ու ոստիկանական մարմինների սխալ գործողությունները։

Ճարտասանությունն անխզելիորեն կապված է նաև պառլամենտի առաջացման և զարգացման հետ։ Չնայած բուրժուական հասարակարգի արատներին, այն կապիտալիզմի մինչմոնոպոլիստական շրջանում ընդհանուր առմամբ առաջադիմական դեր է խաղացել։ Պառլամենտարիզմի հետ զարգացավ քաղաքական պառլամենտական հռետորությունը։

Ռուսաստանում 1864 թ. դատական ռեֆորմից հետո նպաստավոր պայմաններ ստեղծվեցին դատական ճարտասանության զարգացման համար, որին լայն չափով նպաստեց երդվյալ ատենակալների ինստիտուտի ստեղծումը և դատավարության մրցակցության սկզբունքի կիրառումը։ Թեև երդվյալների



դատարանի կազմակերպումը միայն աննշան խոչընդոտ էր ցարական կամայականությունների դեմ, սակայն նրա առաջադիմական բնույթը և դատավարության նոր սկզբունքները բարեբեր հող նախապատրաստեցին դատական հռետորական արվեստի զարգացման համար։

Ռուսական հասարակության մեջ հռետորական արվեստի համար ավելի քիչ նպաստավոր պայմաններ կային, քան Արևմուտքում։ Դա պատճառաբանվում է ժամանակի սոցիալ-քաղաքական պայմաններով։ Ռուսաստանում չկար պառլամենտ, գործում էր խստագույն գրաքննությունը։

Հայտնի է, որ պատմական երկար ժամանակահատվածում հռետորությունը ցարական իշխանության պայմաններում չէր զարգանում, լավագույն դեպքում նրա զարգացումը ընթանում էր միակողմանի՝ քաղաքական հռետորությունը համարյա թե տեղ չէր գտնում տիրող հասարակարգում։ Դա պետք է բացատրել ցարական իշխանության պայմաններում դեմոկրատական իրավունքների խիստ սահմանափակությամբ, կամ, ավելի ստույգ, բացակայությամբ։

Այդ լավ են հասկացել ռուսական հասարակական մտքի նշանավոր ներկայացուցիչները։ Ռուս գրող Ֆոնվիզինը ցավով է նշել, որ այն ժամանակ, երբ իր ժողովուրդն ունի տաղանդավոր մարդիկ և հարուստ ճոխ լեզու, նրա ծոցից հռետորներ դուրս չեն գալիս։ Ֆոնվիզինի կարծիքով, Ռուսաստանում հռետորների սակավության պատճառը ասպարեզի բացակայությունն է, որտեղ հնարավոր է ցույց տալ սեփական պերճախոսությունը։ Չկան ժողովրդական ժողովներ, որոնք դուռ են բացում հռետորության փառքի համար, որտեղ պերճախոսության հաղթանակը կարող է հատուցվել։

Խոսելով ռուսական իրականության մեջ թաքնված տաղանդների մասին, նա մեծ վստահությամբ ասել է. Նրանք, ովքեր կասկածում են, որ համապատասխան պայմաններում ռուսները կունենային խոշոր հռետորներ, կարող են ուսումնասիրել եկեղեցական պերճախոսությունը, որտեղ հազիվ թե մրցակիցներ լինեն։ Նրա կարծիքով, նույնը տեղի կունենար քաղաքական պերճախոսության ասպարեզում, եթե հնարավորություն լիներ այն իրականացնել։ Նման մտքեր արտահայտել է նաև Գոգոլը, ակադեմիական պերճախոսությանը նվիրված հոդվածում։

Հռետորության սոցիալական բնույթը շատ լավ է բացահայտել Բելինսկին։ Ուսումնասիրելով հին աշխարհի հռետորների և ռուսական հռետորության փորձը, նա քննական վերլուծման է ենթարկել հռետորության սոցիալ-դասակարգային էությունը։ Կառավարման հանրապետական ձևը, նշել է նա, հին աշխարհի ներկայացուցիչներին հնարավորություն տվեցին պերճախոսությունը, գեղեցիկ խոսքը դարձնել կարևոր և անհրաժեշտ արվեստ, քանի որ այդ պերճախոսությունը դուռ էր բացում դեպի իշխանություն, դեպի կառավարություն։ Նրա կարծիքով, լավ խոսելը, պերճախոսության արվեստը ոչ թե տրված է բնությունից, աստծուց, ոչ թե աստվածային կրակ է, այլ զարգացել է շնորհիվ այն բանի, որ կան լավ խոսելու պրակտիկայի հնարավորություններ, որ կա ամբիոն։

Հռետորության և դեմոկրատիայի սերտ առնչությունը, այն, որ հռետորության առաջացումը և ծաղկումը պայմանավորված է դեմոկրատիայով, շատ լավ էր հասկացել նաև Ա. Ի. Գերցենը։

Կարելի է, իհարկե, թվարկել հռետորության սոցիալական բնույթը բնորոշող գծերը, սակայն էականը խոսքի ազատությունն է, դեմոկրատիան։ Պա-

տահական չէ, որ հռետորական արվեստի տեխնիկայի տեսակետից քաղաքական հռետորությունը տարբերվում է ակադեմիականից, դատական հռետորությունից և այլն։ Դրանցից յուրաքանչյուրը զարգացել է այն երկրում և այն ժամանակաշրջանում, երբ դրա համար եղել են համապատասխան պայմաններ։

Հռետորության հիմնական տեսակը քաղաքական հռետորությունն է, որի ներգործման ոլորտի շրջագիծը ընդգրկում է հասարակական ավելի մեծ լսարան, քան մյուս տեսակները։ Չի կարելի իսկական համարել եկեղեցական հռետորությունը, որովհետև այն հիմնված է դոգմաների, քան համոզման ուժի վրա։

Արդեն հիշատակվեց, որ դեմոկրատիան քաղաքական հռետորության առաջացման և կենսունակության անհրաժեշտ նախադրյալն է։ Հենց այն պատճառով, որ դեմոկրատիան տարբեր երկրներում, պատմական տարբեր ժամանակաշրջաններում տարբեր ձևով է արտահայտվում, ուստի պայմանավորում է տարբեր կարգի հռետորության դրսևորումները։ Այսպիսով կարելի է ասել, որ ինչպես կա բուրժուական, պրոլետարական դեմոկրատիա, այնպես էլ կա բուրժուական, պրոլետարական հռետորություն։ Հռետորության արվեստի տեխնիկայի տեսակետից ճիշտ է քաղաքական, դատական, եկեղեցական, ակադեմիական պերճախոսություն դասակարգումը։ Սակայն նման հիմքը չի կարող բացահայտել հռետորության դասակարգային էությունը։ Ելնելով հասարակության սոցիալ--դասակարգային հարաբերություններից, ավելի ճիշտ կլինի այն բաժանել բուրժուական, պրոլետարական հռետորության։ Դեմոկրատիան յուրաքանչյուր դասակարգ օգտագործում է հանուն իր շահերի, իր սոցիալական նպատակներն իրագործելու համար։ Այստեղից էլ բխում է տարբեր դասակարգերի միանգամայն տարբեր մոտեցումը դեպի հռետորությունը։ Առաջադեմ դասակարգն իր զարգացման շրջանում հանդես է գալիս որպես առաջադեմ գաղափարների կրող և առաջադեմ սոցիալական հարաբերությունների իրագործող, դեմոկրատիան օգտագործում է իր առջև դրված խնդիրները լուծելու նպատակով, որը նպաստում է հռետորության ծաղկմանը։ Դրությունը փոխվում է, երբ դասակարգը դառնում է հետադիմական։ Նման պայմաններում փոխվում է հռետորական արվեստի բովանդակությունը։ Իսկական առաջադիմական դեմոկրատիայի դեպքում հռետորի նպատակն է ճշմարտությունը պարզաբանել ունկնդիրներին։ Բուրժուական կեղծ դեմոկրատիայի պայմաններում հռետորությունը ծառայում է կեղեքիչների նպատակներին, պահպանելով նրա միայն արտաքին կողմերը։ Տվյալ դեպքում հռետորությունը դառնում է ճշմարտությունը կեղծելու օբյեկտիվ իրականությունն աղարտելու ռեակցիոն արվեստ։ Մինչդեռ առաջադեմ դասակարգերը հռետորությունն օգտագործում են ճշմարտությունը մեկնաբանելու, ճշմարտությունը կյանքում հաստատելու համար։

Քննելով հռետորության դասակարգային էությունը, Բելինսկին տարբերություն է դնում հռետորի և ռիտորի միջև, գտնում, որ հռետորն ու ռիտորը պերճախոսությանն այնպես են վերաբերում, ինչպես փիլիսոփայությանը՝ դիալեկտիկ մտածողը և սոփեստը։ Հռետորի և ռիտորի միջև նա նշմարում է այն նույն տարբերությունները, որ կան փիլիսոփայության և սոփեստության միջև։ Բելինսկու կարծիքով դիալեկտիկան փիլիսոփայի համար ճշմարտության հասնելու միջոց է, մինչդեռ սոփեստն այն օգտագործում է, որպեսզի վեճի մեջ դառնա հաղթող։ Փիլիսոփայի մոտ ճշմարտությունը նպատակ է, իսկ դիա-



լեկտիկան՝ միջոց։ Սոփեստի համար և՛ ճշմարտությունը, և՛ կեղծիքը միջոց են, իսկ կեղծ դիալեկտիկան՝ նպատակ։ Այս մեթոդը կիրառվում է նաև մեր ժամանակաշրջանում, երբ տարբեր սոցիալական խավեր, դասակարգեր միանգամայն տարբեր մոտեցում են ցուցաբերում ճշմարտության նկատմամբ։

Բնութագրելով Դուման, Լենինը բացահայտում է կապը դեմոկրատիայի և հռետորության միջև, ցույց տալիս դեմոկրատիայի պատմականությունը։ Նա ընդգծում է, որ բուրժուական դեմոկրատիան դիմում է բառախաղի, որը և համարվում է չափազանց կարևոր ծառայություն։ Կադետները, Լենինի կարծիքով, անընդհատ դիմում են կեղծ ֆրազների, որպեսզի դեմոկրատիզմ խաղան և թյուրիմացության մեջ գցեն մասսաներին։ Տավրիդյան պալատի հռետորների համար ամենաբնորոշը կամ բնորոշ գծերից մեկն է բառի և խոսքի միջև եղած հակասությունը։ Նման հռետորությունը բնորոշվում է որպես կեղծ կամ դատարկ։

Ի դեպ, արտադպրոցական կրթության աշխատողների համառուսաստանյան առաջին համագումարում արտասանած իր ճառում, Վ. Ի. Լենինը շոշափելով ժողովրդին «ազատության և հավասարության» լոզունգներով խաբելու հարցը, ասում էր, որ լինում է և այնպես, երբ մեկը «...բացարձակապես ոչինչ չի հասկանում քաղաքատնտեսությունից և կառչում է գրքերի ցիտատներից, ինչպես այն գիտնականը, որի գլուխը կարծես ցիտատների արկղ լինի և նա դուրս է հանում այդ ցիտատները, բայց եթե նոր կոմբինացիա պատահի, որը գրքույկում չի նկարագրված, նա շփոթվում և արկղից դուրս է քաշում այն ցիտատը, որը հարկավոր չէ»[1]։

Այդպես են վարվում մարդիկ, երբ չեն ըմբռնում գիտության ոգին, իրականության շարժման բուն օրենքները և մնում են կառչած գիտության տառից։ Իսկ երբ նման վիճակում է լինում հռետորը, նրա խոսքը լինում է անորոշ և անհամոզիչ։ Մինչդեռ, առաջավոր հռետորի խոսքի բնորոշ արժանիքներից են՝ հստակությունը և տրամաբանականությունը։ Մարքսը, Էնգելսը և Լենինն իրենց վիճաբանական և բազմաթիվ այլ երկերում մտքի հուժկու տրամաբանականության և հստակության բազմաթիվ վառ օրինակներ են տվել։ Այսպես, օրինակ, մարդկությանը մատուցած գիտական իր ծառայությունը Կ. Մարքսը ձևակերպել է հետևյալ կերպ. «Իմ արած նորն այն է, որ ես ապացուցել եմ (ընդգծումը մերն է. Ս. Բ.), որ դասակարգերի գոյությունը կապված է արտադրության զարգացման որոշ պատմական ֆազերի հետ միայն, երկրորդ, որ դասակարգային պայքարն անհրաժեշտաբար տանում է դեպի պրոլետարիատի դիկտատուրա, երրորդ, որ այդ դիկտատուրան ինքը սոսկ մի անցում է դեպի ամեն տեսակի դասակարգերի ոչնչացում ու դեպի անդասակարգ հասարակությունը...»[2]։

Մերկացնելով բուրժուական կեղծ հռետորությունը, Մարքսը նկատել է, որ այդպիսի հռետորի համար խիստ բնորոշ է ճառերի առաձգական, էլաստիկ ձևը, երբ հնարավոր չէ ճառի որևէ դրույթը բռնել կամ հենվել նրա վրա։ Նման ճառախոսությունը Մարքսը համարում է այնպիսի քամի, որ հռետորի կողմից ներկայացվում է որպես երաժշտություն։ Այդպիսի ճառերի բնորոշ կողմերից է այն, որ տվյալ հռետորը կարողանում է բթացնել հարցի ամենասուր կողմը և շատ դանդաղ ու հավասար դարձվածքների ու ֆրազների մի-

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 443։

2 Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, Երևան, Հայպետհրատ, 1950, էջ 554։

ջոցով իր ունկնդիրների հիշողությունից հանել, ջնջել խնդրի ամենաէական մասերը։

Մարքսիզմի կլասիկները հատկապես ընդգծել են հռետորության և մասսաների միջև եղած կապը։ Հռետորության ուժը, գիտական նշանակությունը, դասակարգային էությունը շատ լավ երևում է նրանում, թե ինչ կապ կա մասսաների և հռետորի միջև, թե ինչպես է վերջինս իր խոսքը կատարում, ինչ նշանակություն է տալիս այն լայն զանգվածների սեփականությունը դարձնելու համար։

Լենինը բուրժուական կեղծ հռետորությանը հակադրում է բանվոր դասակարգի հռետորներին, որոնք մեծ մասամբ հանդես են գալիս ագիտատորների և պրոպագանդիստների դերում։ Բարձր գնահատելով ագիտատորի դերը, ագիտացիայի գործնական նշանակությունը, նա նշում է, որ ագիտատորը պետք է այնպես խոսի, որ ունկնդիրները հասկանան։ Լենինը գտնում է, որ ագիտատորը կառապանի հետ պետք է խոսի մի լեզվով և այլ լեզվով՝ ծովայինների հետ, ծովայիններին պետք է դիմել այլ կերպ, բանվորներին՝ մի ուրիշ կերպ։ Ագիտացիան պետք է անհատականացված դառնա, նրա քաղաքական գործունեությունը պետք է լինի միասնական, տակտիկան՝ անհատական։

Իհարկե, չի կարելի ասել, որ երբ դեմոկրատիան ըստ էության սահմանափակ է, հռետորությունը մեռնում է։ Իմպերիալիզմի դարաշրջանում, երբ բուրժուազիան շարունակում է դեմոկրատիա խաղալ, հռետորությունն իշխող դասակարգերի ձեռքին մնում է որպես կովի զենք։ Իմպերիալիզմի գաղափարախոսությունը հռետորական արվեստն օգտագործում է նվաճողական քաղաքականությունն արդարացնելու, ունկնդիրներին համոզելու համար։

Այժմ էլ բուրժուական պառլամենտարիզմը, ընտրությունները և այլ կարգի քաղաքական ու սոցիալական գործողությունները հռետորության կարիք ունեն։ Պատահական չէ, որ ԱՄՆ-ում պրեզիդենտական ընտրությանը նախորդում են բազմաթիվ հանդիպումներ, որոնց ժամանակ ծրագրերով հանդես են գալիս պրեզիդենտության թեկնածուները, կոչ անելով ձայն տալ իրենց օգտին։

Հռետորությունը բուրժուական գաղափարախոսության փորձված ու ներգործուն միջոցներից է։ Ագրեսիան Վիետնամում արդարացնելու համար ամերիկյան իմպերիալիզմի վարձկան ջատագովները հանդես գալով հռետորների դերում, սենատում թե՛ նախընտրական ճառերում, դիմում են ամեն մի սոփեստական հնարի, որպեսզի արդարացնեն այդ հանցավոր պատերազմը և մեղադրեն հյուսիսային և հարավային Վիետնամի դեմոկրատական լայն խավերին։ Իզո՛ւր ջանքեր։ Բուրժուական ճարտասանները գերագնահատում են բառարվեստի ուժը, մոռանալով, որ մեր օրերում ժողովուրդները լավ են տարբերում խոսքը գործից, խոստումն իրականությունից։

Բոլորովին այլ իմաստ է ստանում հռետորական արվեստը բանվոր դասակարգի գաղափարական զինանոցում։ Մարդկության պատմության մեջ բանվոր դասակարգը միակ դասակարգն է, որի շահերն համընկնում են հասարակության զարգացման օբյեկտիվ ընթացքին։ Ահա թե ինչու նրա գաղափարախոսները հանդես են գալիս ոչ թե այնպիսի ձգտումով, որն հակասում է օբյեկտիվ ճշմարտությանը, այլ բացարձակապես հակառակը՝ բանվոր դասակարգը խիստ շահագրգռված է օբյեկտիվ ճշմարտության բացահայտման գործում։ Բանվոր դասակարգի հռետորները ժողովրդական մասսաների լայն շրջաններում տարածում են մարքս-լենինյան գաղափարները, նրանց համոզում են հեղափոխական ուսմունքի ճշմարտացիության մեջ։ Բանվոր դասա-



կարգի ծոցից դուրս են եկել առաջնակարգ հռետորներ, որոնց չթուլացող ուշադրությամբ լսել են աշխատավոր մասսաները։ Նրանց խոսքը եղել է պարզ ու դիպուկ, առանց ավելորդաբանությունների։

Սովետական իշխանության հաղթանակից հետո ավելի մեծացավ հռետորության նշանակությունը։ Մ. Ի. Կալինինը, որը բոլշևիկյան լավագույն հռետորներից էր, իր ճառերից մեկում նշում է, որ հռետորական արվեստն ամենադժվարն է, և մասսայական կազմակերպություններում աշխատող բոլշևիկներն անպայման պետք է տիրապետեն այդ արվեստին։

Պրոպագանդիստը, ագիտատորը պետք է լինի լավ հռետոր։ Նշելով պրոպագանդիստի և ագիտատորի դերը, Լենինը բազմիցս ընդգծել է, որ բոլշևիկյան հռետորի խոսքը պետք է ճշմարիտ լինի։ Հանրահայտ է լենինյան ասույթը՝ մարքսիզմն ամենազոր է, որովհետև այն ճշմարիտ է։

Միայն ճշմարտությամբ զինված հռետորը, նրա համար մարտնչողը կարող է լինել անկեղծ, իսկ անկեղծությունը հռետորի կարևոր հատկանիշներից է։ 1942 թ. ապրիլի 21-ին իր ճառում խոսելով կուսակցական աշխատողի մասին, Կալինինը նշում է, որ նա պետք է այնպես ելույթ ունենա, որ շրջապատողներն զգան նրա անկեղծությունը և ազնվությունը, երկերեսանիությունը չի կարելի մասսաներից քողարկել։ Մասսաներին չի կարելի խաբել, և եթե նրանք գիտեն, որ զրույց ունեցողը կեղծում է, կեղծավոր է, երկերեսանի է, ապա երբեք նրան չեն հավատա։ Նա ընդգծում էր, որ ագիտատորը պետք է լինի ճշմարիտ, չպետք է մարտիկների, բանակայինների առջև կեղծել, պետք է իրականությունը ցույց տալ այնպես, ինչպես այն կա, չպետք է խուսափել բարդություններից, դժվարություններից։

Միայն այն դեպքում, երբ հռետորն ինքն համոզված է ճշմարտության մեջ, կարող է ոչ միայն համոզել, այլև ապացուցել։ Այս կարևորագույն գործոնը՝ ճառի ապացուցողական ուժը, ընդգծվում է մարքսիստ հռետորների կողմից։ Մաքսիմ Գորկին նշելով Լենինի ճառերի հստակության մասին, ընդգծում է, որ Լենինը կարողանում էր ցրել հակառակորդի թողած տպավորությունը, նրա կեղծ ճառաբանությունը և հավաստել իր դրույթների ճշմարտությունը։ Լենինը կարողանում էր հիանալի ապացուցել իր առաջադրած դրույթները և որքան համոզիչ էր նա ապացուցում, այնքան կատաղություն էր հարուցում իր հակառակորդի մոտ։

Լենինը կարողանում էր հմտորեն զուգակցել տեսությունը կենդանի իրականության հետ, որի շնորհիվ տեսությունն ավելի հասկանալի էր դառնում, իսկ շրջապատող իրականությունը՝ իմաստավորված։



# ՆՐԱՆՔ ՄԱՐՏՆՉԵԼ ԵՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Վ. Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆ



*Հոկտեմբերյան հեղափոխությունն իր հաղթարշավը շարունակում էր նաև Միջին Ասիայում, որի աշխատավորները բոլշևիկների ղեկավարությամբ համախմբվեցին կոմունիստների դրոշի ներքո և զինված մարտի ելան հեղափոխության թշնամիների դեմ։ Միջինասիական ժողովուրդների՝ սովետական կարգերի հաստատման համար մղվող հերոսական կռվին մասնակցում էին նաև տեղի հայ աշխատավորները։*

*1918 թվականի գարնանը, Բաքվի հեղափոխական ուժերին օգնելու նպատակով, Միջին Ասիայի հայաշատ քաղաքներում, աշխատավորների շրջանում, կոմունիստների ղեկավարությամբ ծավալվեց կամավորական լայն շարժում՝ մարտական դրուժինաներ ստեղծելու և Բաքու ուղարկելու համար։ Այդպիսի մարտական միավորում ստեղծվեց նաև Սամարղանդ քաղաքում, որտեղ 1918 թվականին ապրում էին ավելի քան երկու հազար հայ[1]։*

*Բոլշևիկ Գրիգոր Պալյանցի ղեկավարությամբ Սամարղանդում սկսվում է հայկական վաշտի կազմավորումը։ Իբրև կանոն, վաշտի մեջ կամավոր հիմունքներով մտնում էին այն հայերը, որոնք տիրապետում էին ռազմական գործին։ Գրիգոր Պալյանցի հետ միասին հայկական վաշտի կազմակերպման աշխատանքներին մասնակցեց այն ժամանակ Սամարղանդում գտնվող Հայկ Բժշկյանցը, որը դարձավ վաշտի ոգին, գաղափարական դաստիարակը։*

*Բաքվին օգնելու նպատակով Սամարղանդի հայկական վաշտից Հայկ Բժշկյանցի հրամանատարությամբ մի ջոկատ է առանձնացվում. այն եռանդով նախապատրաստվում էր Բաքու մեկնելու։ Սակայն Բուխարայի էմիրի հարուցած սպառնալիքի պատճառով, որը մեծ վտանգ էր Միջին Ասիայում սովետական իշխանության համար, ջոկատը մնաց Սամարղանդում։*

*Սամարղանդի հայկական վաշտի մարտիկները, Գրիգոր Պալյանցի և Հայկ Բժշկյանցի ղեկավարությամբ, համառ պայքար էին մղում տեղի դաշնակցական գործիչների դեմ, մերկացնում նրանց հակասովետական ճիգերը։ Սամարղանդի հայ աշխատավորության ժողովներում Հայկ Բժշկյանցը, Գրիգոր Պալյանցը, տեղի հայկական դպրոցի ուսուցչուհի, կոմունիստ Սաթենիկ Պալյանցը[1], Գարեգին Ծատուրովը և ուրիշներ իրենց ելույթներով աշխատավորությանը բացատրում էին սովետական իշխանության էությունը, նպատակները։*

*Բուխարայի դեպքերից ոչ-շատ առաջ Գրիգոր Պալյանցին և Հայկ Բժշկյանցին հաջողվեց վերջնական հաղթանակ տանել ու ցրել դաշնակցականներից կազմված Սամարղանդի հայկական կոմիտեն։*

*Բոլշևիկներից և նրանց համակրողներից նոր կոմիտե ստեղծելուց հետո 1918 թվականի մարտի 2-ին Հայկ Բժշկյանցի նախագահությամբ հրավիրված հայկական վաշտի ընդհանուր ժողովը Գրիգոր Պալյանցին միաձայն ընտրում է Սամարղանդի զինվորների, բանվորների և մուսուլմանների սովետի դեպուտատ։ Իսկ մարտի 6-ին վաշտի ընդհանուր ժողովում Գր. Պալյանցն ու Հայկ Բժշկյանցը քննարկման են դնում հետևյալ բանաձևը.*

> «Ի նկատի առնելով, որ հայկական դրուժինաները... համաձայն Պետրոգրադի ժողովրդական կոմիսարների [սովետի] որոշման[2] կոչված են փրկելու իրենց հայրենիքը և այնտեղ կատարել հեղափոխություն, ուշադրության առնելով, որ Տաշքենդի Ժողովրդական Կոմիսարների Սովետն ընդառաջելով հայերին... թույլ է տալիս նրանց կազմակերպել առանձին զորամասեր Կովկաս ուղարկելու համար. մենք Սամարղանդի հայկական վաշտի զինվորներս որոշում ենք մինչև մեր Կովկաս մեկնելը, քանի դեռ գտնվում ենք Սամարղանդում, ամեն կերպ պաշտպանել հեղափոխությունը և սովետական իշխանությունը՝ հակահեղափոխականների բոլոր հարձակումներից:
>
> ...Մենք Սամարղանդի հայ զինվորներս քաղաքում ծագած ամեն մի անկարգության դեպքում մեզ դնում ենք Սովետի իրավասության տակ:
>
> Սույն որոշման մասին սովետին տեղյակ պահելով, վաշտը խնդրում է հնարավորության սահմաններում անհապաղ նրան զինել, նկատի ունենալով ներկա լուրջ իրավիճակը»[3]:

*Սամարղանդի զինկոմիսար Վ. Ս. Գուշչայի կարգադրությամբ վաշտին տրվում է անհրաժեշտ սպառազեն[4]։*

*1918 թվականի հունվար—փետրվար ամիսներին սովետական իշխանությունը Միջին Ասիայում կարևոր հաղթանակ տարավ Կոկանդի բուրժուազգայնական հակահեղափոխական ավտոնոմիստների դեմ։ Վերջինս սովետների դեմ պայքարելիս սերտ կապի մեջ էր անգլո-ամերիկյան իմպերիալիստների, ինչպես նաև թուրքական պանիսլամիստների հետ։*

*Կոկանդի ավտոնոմիստների դեմ մղվող պայքարին ակտիվ մասնակցել են նաև հայ ժողովրդի արժանավոր զավակներ՝ Կոկանդի սովետի նախագահ Հ. Ա. Սահակյանը, Նամանգան քաղաքի բոլշևիկյան կազմակերպության ղեկավար Ս. Դադասյանցը, Անդիջան քաղաքի կարմիր գվարդիայի ջոկատի հրամանատար Սերգեյ Խուդայանցը, Զուստ քաղաքի պարտիզանական ջոկատի հրամանատար Մովսես Մելքումովը, Նամանգանի սովետական զորքերի խմբի հակահետախուզության պետ Արմենակ Հարությունյանը և ուրիշներ։*

---

1 *Տե՛ս* Статистический ежегодник 1917—1923 гг., Ташкент, 1924.

*1 Սաթենիկ Սահակի Պալյանցը (ծնվել է 1890 թ.) Թուրքեստանի առաջին կին կոմունիստներից մեկն է։ 1920 թ. Թուրքեստանի կոմկուսի կողմից մասնակցել է Արևելքի երկրների ժողովուրդների I համագումարին։ Երկար տարիներ զբաղվել է մանկավարժական աշխատանքով։ Ուզբեկական ՍՍՀ վաստակավոր ուսուցչուհին պարգևատրվել է Լենինի շքանշանով։ Այժմ անհատական թոշակառու է։*

*2 Նկատի ունի «Թուրքահայաստանի մասին» դեկրետը։*

*3 Գր. Պալյանի անձնական արխիվ, գ. № 1, թ. 39։*

*4 Տե՛ս նույն տեղը։*

Դեռ չէր ավարտվել Կոկանդի ավտոնոմիստների լրիվ ջախջախումը, երբ Բուխարայի էմիրը դիմեց ակտիվ գործողությունների՝ ընդդեմ սովետական իշխանության։

Այդ վտանգի դեմն առնելու նպատակով Թուրքեստանի ժողկոմսովետի նախագահ Ֆ. Կոլեսովը 1918 թվականի փետրվարի վերջերին կարմիր գվարդիական ջոկատով, որի կազմում կային շատ հայեր, Տաշքենդից եկավ Սամարղանդ։ Այստեղ Ֆ. Կոլեսովին միացան մի շարք ջոկատներ, այդ թվում և Գրիգոր Պալյանցի ու Հայկ Բժշկյանցի ջանքերով կազմակերպված, 60 մարդուց բաղկացած հայկական ջոկատը, որի հրամանատար նշանակվեց վաշտի անդամ Արտեմ Դավթի Բաղդասարյանը[1]։

Ֆ. Կոլեսովի ղեկավարած կարմիրգվարդիական ջոկատները էմիրի զորքերի դեմ կռիվներ մղելիս ընկան ծանր վիճակի մեջ։

Ֆ. Կոլեսովին օգնության հասած 5 ջոկատներից (տե՛ս «Наша газета», № 77, 18 апреля 1918 г.) մեկը հայկական էր, որի հրամանատարն էր Հայկ Բժշկյանցը։ Սովետական զորքերը Սամարղանդից շարժվեցին դեպի Քերմինե (այժմ՝ Նավոյի քաղաք), որտեղ կուտակված էր էմիրի լավ զինված 5000-անոց բանակը։ Մարտի 11-ին, առավոտյան ժամը 9-ին, սովետական զորքերը սկսեցին Քերմինեի ամրոցի գրոհը։ Ամրոցը շրջապատելու և գրոհելու ժամանակ իր ռազմական հնարամտությամբ աչքի ընկավ Հայկ Բժշկյանցը, որի հրամանատարությամբ կռվող հայ մարտիկները ցուցաբերեցին արիություն և տոկունություն։ Այս մարտում առանձնապես անձնուրաց էր կռվում դասակի հրամանատար Ալեքսանդր Իվանի Տոնիյանը, որին հետագայում Մ. Ֆրունզեն պարգևատրեց ոսկե ժամացույցով՝ հեղափոխության գործին մատուցած կարևոր ծառայությունների համար։

Մի քանի ժամ տևած ճակատամարտը ավարտվում է սովետական զորքերի հաղթանակով։ Քերմինեի բեկը գերի է ընկնում։ Էմիրի զորքերը, ջարդվելով, փախուստի են դիմում։ Սովետական զորքերը հաղթականորեն շարժվում են դեպի Բուխարա՝ Ֆ. Կոլեսովին ընդառաջ (տե՛ս «Щит народа» № 54, 26 марта, 1918 г.)։

Էմիրի զորքերի դեմ մղած մարտերում զոհվեցին նաև մի շարք հայ մարտիկներ՝ Արսեն Ծատուրյանը, Վարդան Ալավերդյանը, Վարդան Բաբայանը և ուրիշներ։ Հերոսաբար զոհվեց նաև կարմիրգվարդիական ջոկատի հրամանատար Արտեմ Թելիյանցը, որին բարձր է գնահատել Գայը[2]։ Բուխարայի էմիրի դեմ մղված կռիվներում աչքի ընկան նաև Ա. Բաղդասարյանը, Մ. Միսկարյանը, Ա. Աղաբաբյանը, Հ. Թորոսյանը (Տարասով), Բ. Բալասանյանը, Թ. Ցաթալյանը և ուրիշներ։

Հաղթանակ տանելով էմիրի զորքերի դեմ, սովետական ջոկատների մի մասը, այդ թվում նաև Բժշկյանցի ջոկատը վերադառնում է Սամարղանդ։

* * *

Ձևաված Սամարղանդի հայկական վաշտը կազմակերպվել էր Կովկաս մեկնելու համար, բայց մնաց Թուրքեստանում և քիչ գործ չարեց հեղափոխության թշնամիների դեմ մղվող պայքարում։ Եվ քանի որ վաշտի զինվորների մեծ մասը մեկնել էր Հայկ Բժշկյանցի հետ Արևելյան ռազմաճակատ, մնացած մասը ձուլվեց Սամարղանդի կարմիր գվարդիայի հետ և փաստորեն այն դադարեց լինել ինքնուրույն ռազմական միավոր։

Հայկական վաշտի կոմիսար կոմունիստ Գրիգոր Պալյանցը, որ Սամարղանդի սովետի անդամ էր, ակտիվ աշխատանք է ծավալում սովետական կարգերի ամրապնդման համար։ Կուսակցության նահանգային կոմիտեն 1918 թ. մայիսին նրան նշանակում է Սամարղանդի սովետի հեղափոխական տրիբունալի անդամ[1]։ Գրիգոր Պալյանցը չթուլացող ուշադրությամբ հետևում էր Բաքվի դեպքերին և աշխատում ամեն կերպ օգնել կոմունային։ 1918 թվականի մայիսի 15-ին Սամարղանդի սովետը նրան մեկ ամսով ուղարկում է Բաքու՝ Բաքվի սովետական իշխանության հետ կապը ամրապնդելու խնդրով[2]։ Ցավոք, մեզ դեռ չի հաջողվել Բաքվում Գր. Պալյանցի գործունեությանը վերաբերող տեղեկություններ գտնել։

Մեկնելով Սամարղանդից, Հայկ Բժշկյանցը կապ էր պահպանում տեղի բոլշևիկների հետ։ Սամարղանդցիները նույնպես չէին մոռանում երիտասարդ, խիզախ Հայկ Բժշկյանցին։ Սամարղանդի մարզային արխիվում պրպտումներ կատարելիս, մեզ հաջողվեց ի հայտ բերել Գայի հոր՝ Դմիտրի Բժշկյանցի եռանդուն գործունեությանը վերաբերող մի շարք փաստաթղթեր։

1919 թ. սեպտեմբերի 25-ին Հանրապետության հեղափոխական ռազմական խորհուրդը արձակում է իր № 1547/309 հրամանը, ուր ասված է.

> «Հանձնարարվում է ընկ. Գայ Բժշկյանցին, որքան հնարավոր է կարճ ժամկետում կազմակերպել առաջին կովկասյան կարմիր դիվիզիա՝ նրա կազմում ունենալով 4 հեծյալ գունդ, հեծյալ-հրետանային դիվիզիոն՝ համաձայն նախատեսված հաստիքների։ Դիվիզիայի հրամանատար է նշանակվում ընկ. Գայ Բժշկյանցը...»[3]։

Հանրապետության հեղափոխական ռազմական խորհուրդը Հայկ Բժշկյանցին հանձնել էր նաև № 3139 մանդատը հետևյալ բովանդակությամբ.

> «Սույնը տրվում է կովկասյան առաջին կարմիր դիվիզիայի պետ ընկ. Գային, առ այն, որ նրան իրավունք է վերապահվում կուսակցական կազմակերպությունների, արհմիությունների և հիմնարկությունների միջոցով կազմակերպել կամավորների հավաք, բոլոր գործող և պահեստային գնդերից, ՌՍՖՍՀ-ի հիմնարկներից ու քաղաքներից։
>
> Բոլոր երկաթուղային կազմակերպություններին հանձնարարվում է ցույց տալ լրիվ աջակցություն նրա հաջող իրագործման համար։ Բոլոր ղեկավար անձանց, հիմնարկություններին, քաղաքացիական և ռազմական վարչություններին, կուսակցական կազմակերպություններին, ինչպես նաև Ռուսաստանյան Սովետական Հանրապետության բոլոր բնակիչներին հանձնարարվում է ցույց տալ ընկ. Գային լրիվ աջակցություն սույն մանդատի հիման վրա իր պարտականությունների կատարմանը»[4]։

Գայն իր հորը՝ Դմիտրի Բժշկյանցին տալիս է վերոհիշյալ փաստաթղթերի պատճենները և հանձնարարում նրան, իբրև Կովկասյան կարմիր դիվիզիայի ներկայացուցիչ, Սամարղանդում կազմակերպել կամավորների հավաքագրում։

1919 թվականի դեկտեմբերի սկզբներին Դմիտրի Բժշկյանցը Գարեգին Ծատուրովի և Գրիգոր Պալյանցի աջակցությամբ ձեռնամուխ է լինում որդուց ստացած հանձնարարության իրագործմանը։ Սկզբից ևեթ կամավոր են գրվում շատ հայեր, որոնք դեռևս 1918 թ. մարտին Հայկ Բժշկյանցի հրամանատարությամբ գրոհել էին Քերմինեի ամրոցի վրա։

Վկայակոչված արխիվային աղբյուրից պարզվում է, որ Սամարղանդի և առհասարակ Միջին Ասիայի հայ աշխատավորները, կոմունիստների անդուլ պայքարին ակտիվ մասնակցելով, տեղի այլազգի բնակիչների հետ միասին, մինչև արյան վերջին կաթիլը կռվել են հանուն սովետական կարգերի պաշտպանության։ Այդ կարգերի հաղթության համար մղվող մարտերին ակտիվ նպաստել է նաև Գայի հայրը՝ Դմիտրի Բժշկյանցը։

Footnotes (left page):

[1] Самаркандский облгосархив, ф. 286, оп. 1, д. 190, л. 3—4.

[2] Там же, д. 1314, л. 4։

Footnotes (right page):

[1] Տե՛ս Самаркандский облгосархив, ф. 1685, оп. 10, д. 7, л. 107.

[2] Տե՛ս Самаркандский облгосархив, ф. 1012, оп. 1, д. 8, л. 101.

[3] Там же, оп. 7, д. 5, л. 110.

[4] Там же, л. 109.

# ՄԻ ԿԱՐԵՎՈՐ ՃՇՏՈՒՄ

Տվյալ երևույթը, իրադարձությունը ճիշտ գնահատելու, ժամանակին իր այլևայլ կողմերով բացահայտելու և այն օբյեկտիվորեն ներկայացնելու համար անհրաժեշտ է փաստի ճշմարտացի արձանագրումը։ Այդ տեսակետից կարևոր է որևէ տպագիր օրգանի լույսընծայման տարեթվի և օրվա ստույգ հրապարակումը։

Դժբախտաբար մեր գրականության մեջ և պարբերական մամուլի էջերում երբեմն հրապարակվում են աղավաղված փաստեր՝ սխալ մեկնաբանություններով։

Ժամանակին սխալ տեղեկություններ են հրապարակվել, օրինակ, 1917 թ. օգոստոսի 18-ից Շուշիում լույս տեսնող «Նեցուկ» թերթի մասին (տե՛ս «Բանբեր Հայաստանի արխիվների», 1966 թ. № 3 և այլն)։ Մինչև հիմա պարզ չէր նաև Սովետական Ղարաբաղի առաջին հայերեն թերթի՝ «Ղարաբաղի գեղջուկ»-ի լույս ընծայման օրն ու ամիսը։ Հենվելով մարզային թերթի՝ «Սովետական Ղարաբաղ»-ի հոբելյանական համարներում տպագրված ոչ ճիշտ հաղորդումների, առանձին մարդկանց հիշողությունների ու պատմածների վրա, հայ, ռուս և ադրբեջանական լեզուներով տարածվել է այն սխալը, թե իբր «Ղարաբաղի գեղջուկ»-ն սկսել է լույս տեսնել 1923 թ. ապրիլի 4-ից։ Այդ սխալը «յուրացվել» է նաև իմ կողմից՝ 1963 թ. Ադրբեջանի պետական հրատարակչությամբ («Ազերնեշր») լույս տեսած «Սովետական Ղարաբաղի մամուլը» գրքույկի մեջ։

Ավելին, առանձին հետազոտողներ մոռացության են մատնել «Ղարաբաղի գեղջուկ» թերթի գոյությունը։ Հովհաննես Պետրոսյանը նույնիսկ իր «Հայ պարբերական մամուլի բիբլիոգրաֆիա»-ում (1954 թ. Հայկական ՍՍՀ պետական գրապալատի հրատարակությամբ) բոլորովին չի հիշատակել «Ղարաբաղի գեղջուկ»-ի անունը։

Վերջապես մեր պրպտումների շնորհիվ հայտնաբերվեցին «Ղարաբաղի գեղջուկ»-ի Շուշիում լույս տեսած երեք համարներ։ Պարզվեց, որ թերթի առաջին համարը լույս է տեսել 1923 թ. հունիսի 16-ին, երկրորդը՝ հուլիսի 2-ին, երրորդ համարը՝ հուլիսի 30-ին։ Եվ, եթե առաջին համարը ստորագրված է «խմբագրական կոլեգիա», ապա երկրորդ և երրորդ համարների տակ իբրև պատասխանատու խմբագիր տրված է Սերո Մանուցյանի ստորագրությունը. այն ժամանակ նա կուսակցության Ղարաբաղի գավառային կոմիտեի քարտուղարն էր։

Ճշտվում է նաև թերթի տպաքանակը։ Կարծիք կար, թե «Ղարաբաղի գեղջուկ»-ը տպագրվել է 400 օրինակով, պարզված է, որ նրա առաջին և երկրորդ համարները լույս են տեսել 500-ական, իսկ երրորդ համարը՝ 700 տպաքանակով։

Ճշտված է նաև, որ ԼՂԻՄ մարզային «Խորհրդային Ղարաբաղ» թերթի առաջին համարը (որն ըստ էության, «Ղարաբաղի գեղջուկ»-ի շարունակությունն էր) լույս է տեսել ոչ թե հուլիսից, այլ օգոստոսի 5-ից։ 1967 թ. ապրիլի 1-ից այն լույս է տեսնում ամեն օր, հանրապետական թերթերի ծավալով։

Ս. Գ. ԱՎԱԳՅԱՆ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ 1969 ԹՎԱԿԱՆԻ ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ







## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

Адрес редакции. — Ереван-33
Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

ՎՖ 03281 Պատվեր 206 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 10.800: Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 17/XII 1969 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյանի փող. № 28:








## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ընտիր երկեր: Երեք հատորով: Հատոր 2: Մ., Քաղհրատ, 1969, 826 էջ:

*Այս հատորում զետեղված են Վ. Ի. Լենինի 1917 թ. մարտից մինչև 1918 թ. նոյեմբերն ընկած ժամանակաշրջանում գրած աշխատությունները:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Փիլիսոփայական տետրակներ: Մ., Քաղհրատ, 1969, 752 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ: Ե., «Հայաստան» հրատ., 1969, 185 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ի՞նչ են ժողովրդի «բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ: Ե., «Հայաստան» հրատ., 1969, 318 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին: Մ., Քաղհրատ, 1969, 240 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Սովետական իշխանության ներքին խնդիրները: Մ., Քաղհրատ, 1969, 143 էջ:

Հիշողություններ Վլադիմիր Իլյիչ Լենինի մասին: Հինգ հատորով: Հատոր առաջին: Հարազատների հուշերը: Մ., Քաղհրատ, 1969, 616 էջ:

*ՍՄԿԿ ԿԿ կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի և Պետքաղհրատի՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ հրատարակելիք հինգ հատորյակի առաջին հատորն է այս, ուր զետեղված են՝ Ա. Ի. Ուլյանովա-Ելիզարովայի, Դ. Ի. Ուլյանովի, Մ. Ի. Ուլյանովայի և Ն. Կ. Կրուպսկայայի հուշերը Վ. Ի. Լենինի մասին:*

Ինչպես ուսումնասիրել Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի և Վ. Ի. Լենինի փիլիսոփայական աշխատությունները: Մեթոդական ձեռնարկ: Մ., «Мысль» հրատ., 1969, 192 էջ:

Կոմինտերնը և արևելքը:— Պայքար լենինյան ստրատեգիայի և տակտիկայի համար ազգային-ազատագրական շարժման մեջ: Կոմինտերնի 50-ամյակի առթիվ: Մ., «Արևելյան գրականության գլխ. խմբագր. հրատ.», 1969, 513 էջ:

Ժամանակակիցների օրագրերից: (Կազմեց՝ Յու. Կոլեշչուկը), Մ., «Молодая гвардия» հրատ., 1969, 575 էջ:

*Այստեղ զետեղված են Հոկտեմբերյան մեծ հեղափոխության, քաղաքացիական և հայրենական մեծ պատերազմների հերոսների՝ Լուսիկ Լիսինյանի, Սերգեյ Լազոյի, Դմիտրի Ֆուրմանովի, Վերա Խորուժայի, Սոֆյա Պանկովայի, Ալեքսեյ Լեոնովի և այլոց՝ օրագրերը, հարազատներին գրած նամակները և այլ նյութեր:*

ՍՄԿԿ ծրագրերն ու կանոնադրությունները: Մ., Քաղհրատ, 1969, 423 էջ:

*ՍՄԿԿ գոյության 70 տարիների ընթացքում կուսակցության կողմից ընդունված երեք ծրագրերը և 12 անգամ փոփոխված կանոնադրություններն են: Գիրքը շատ օգտակար է պրոպագանդիստների, կուսակցական ու խորհրդային ակտիվի և այլ աշխատողների համար:*

ՅՈՒԼՅԱՆ Ի. Ռ.— Կոմիտաս: Եր., ԳԱ հրատ., 1969, 249 էջ:

*Ներկա մենագրության մեջ հեղինակն արտացոլել է հայ երաժշտական մշակույթի խոշորագույն գործիչ Կոմիտասի կյանքն ու գործունեությունը:*

Կոմունիստական ինտերնացիոնալ: Պատմական համառոտ ուրվագիծ: Մ., Քաղհրատ, 1969, 600 էջ:

*ՍՄԿԿ ԿԿ կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի գիտաշխատողների հետ միասին գրքի ստեղծմանը մասնակցել են կոմունիստական շարժման այնպիսի ականավոր գործիչներ, ինչպիսիք են՝ Վալտեր Ուլբրիխտը, Դոլորես Իբարուրին, Ժակ Դյուկլոն, Հալեդ Բաղդաշը և ուրիշներ:*

ՍԱՀԱԿՅԱՆ Ժ. Մ. (Կազմող).— Դեղամիջոցներ: (Թողարկում 2): Եր., 1969, 82 էջ:

*Ինչպիսի դեղորայք գործածել առանձին հիվանդությունների դեպքում— խորհուրդ է տրվում գրքում:*

ԳԻՆԸ 25 Կ. ԻՆԴԵՔՍ 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԿՅԱՆՔ ԱՌԱՆՑ ՋՐԻ

*Երկու տարի առաջ ամերիկյան մի խումբ գիտնականներ ուսումնասիրել են ջրի քիմիական և ֆիզիկական հատկությունները՝ կապված բիոլոգիական ֆունկցիաների հետ։ Գիտնականները եկել են այն եզրակացության, որ բիոլոգիայի բոլոր գրքերում կենսագործունեության համար ջրին վերագրվող բացառիկ դերը չափազանցված է։ Այդ են վկայում Ս. Մ. Զասելինի և Կարեն-Ռոբերտսինի փորձերի արդյունքները։ Ստուգվել է, թե կենսագործունեության համար անհրաժեշտ ֆերմենտներն ինչպես են գործում ջրազրկված հեղուկներում։ Փորձի համար վերցվել են թթվածնի փոխանակության պրոցեսին մասնակցող պերօքսիդազ և կատալազ ֆերմենտները։ Չնայած այդ հեղուկները (մրջնաթթուն, քացախաթթուն, էթիլային սպիրտը, գլիցերինը, բենզոլը, նիտրոմեթանը դառը և խիստ թունավոր նյութեր են, պերօքսիդազը դրանց միջավայրում լիովին կատարում է իր դերը։ Կատալազն ավելի «խորաբարո» է։ Այն ակտիվ է միայն սպիրտային միջավայրում։ Բիոլոգիական էվոլյուցիայի ընթացքում ֆերմենտները հայտնվում են ջրառատ միջավայրում և ակտիվ դառնում նաև այլ հեղուկներում։*

*Այդ հիմք է տալիս ենթադրելու, որ ջրազուրկ մոլորակներում, ուր կան այլ հեղուկներ, կարող է կյանք լինել։*

## ԻԶՈՖԵՐՄԵՆՏՆ ԱԽՏՈՐՈՇՈՒՄ Է

*Չնայած քիչ են ֆերմենտները բջիջներում և հյուսվածքներում, բայց դրանք հսկում են օրգանիզմում տեղի ունեցող քիմիական բոլոր ռեակցիաները։ Երբ հիվանդագին պրոցես է սկսվում որևէ օրգանում, դրա հյուսվածքների ֆերմենտներն անցնում են արտահյուսվածքային հեղուկի մեջ։ Այսպես՝ լյարդի վնասվածքի ժամանակ ֆերմենտներն անցնում են արյան և լեղու, երիկամը հիվանդանալիս՝ արյան և մեզի, ուղեղի վնասվածքի դեպքում՝ ողնուղեղային հեղուկի և արյան մեջ։ Ֆերմենտների «էվակուացման» այս հատկությունը նկատի ունենալով բիոքիմիկոսներն առաջարկեցին մի շարք հիվանդությունների վաղ շրջանում դրանց միջոցով ախտորոշելու մեթոդը։ Իմանալով յուրաքանչյուր օրգանի իզոֆերմենտների սպեկտրը, դժվար չէ ախտորոշել վնասվածքը։*

*Ախտորոշման այդ մեթոդը լայնորեն կիրառվել է Լենինգրադի ռազմա-բժշկական ակադեմիայի կլինիկաներում. փորձը ցույց է տվել, որ այդ մեթոդը ախտորոշման լավագույն միջոցներից մեկն է։ Այժմ մեր երկրի և արտասահմանի բուժող և գիտահետազոտական հաստատություններում ուսումնասիրում են իզոֆերմենտների օգտագործման այս մեթոդը կլինիկական և տեսական բժշկության մեջ։*

## ԱՇԽԱՐՀԻ ԱՌԱՋԻՆ ԼРИՎ ԱՎՏՈՄԱՏԱՑՎԱԾ ԱԾԽԱՀԱՆՔԸ

*Լեհաստանում շահագործման հանձնվեց «ЯН» ածխահանքը, ուր տեղակայված են լեհական մեքենաներ ու սարքեր։ Հանքի տեխնոլոգիական պրոցեսները կառավարում է «БЕСТА» ավտոմատ սիստեմը՝ էլեկտրոնային հաշվիչ մեքենաների հսկողությամբ, իսկ հանքախորշում սարքավորման աշխատանքը հսկում է «АСИ» ավտոմատացված կոմպլեքսը, որը միացնում է իզոտոպային սարքերը։ «ЯН» հանքի նախագծային հզորությունը մեկ օրում կազմում է 2500 տոննա քարածուխ։ Որպես կանոն այդպիսի հզորության հանքերում աշխատում են 1500 մարդ։ Մինչդեռ «ЯН» հանքի աշխատանքային կոլեկտիվը բաղկացած է 230 հոգուց, որոնց 80 տոկոսն ունի միջնակարգ տեխնիկական կրթություն, իսկ 69 հոգին՝ ինժեների դիպլոմ։*

## ԱՐԵԳԱԿՆԱՅԻՆ ՍԱՌՆԱՐԱՆ

*Այն կառուցվել է Աշխաբադի մոտակայքում, հելիոտեխնիկական բազայի վրա։ Փորձարկումները ցույց են տալիս, որ արեգակնային այդ սարքը շատ արդյունավետ է։ Թուրքմենիայի ԳԱ գիտնականները տանիքի վրա տեղադրել են բաց գոլորշիացմամբ ռեգեներատոր։ Տանիքի յուրաքանչյուր քառակուսի մետրը կարող է տալ 300 կիլոկալորիա սառնություն, որը 8—10 անգամ էժան է այլ միջոցներով ստացվող սառնությունից։ Երեքից չորսհարկանի շենքերի տանիքները լիովին բավական են տարվա շոգ եղանակին բոլոր բնակարաններում զովություն ստեղծելու համար։*